ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

12

ԴԵԿՏԵՄԲԵՐ

ԵՐԵՎԱՆ 1963

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵՔ

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏՆՏԵՍԱԿԱՆ—ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

№ 12
ԴԵԿՏԵՄԲԵՐ
1963 Թ.

★

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
42-ՐԴ
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

ԱՌԱՋՆՈՐԴՈՂ — *Դեպի համագումար, դեպի նոր նվաճումներ* . . 3

ՀՈԴՎԱԾՆԵՐ

Ծ. ԲԱԴԱԼՅԱՆ — *Պետության տնտեսական դերը կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում* . . . . . . . . 10
Ա. ԱՅՐՈՒՄՅԱՆ — *Գյուղատնտեսական արտադրության համակենտրոնացման և շրջանային հատակագծումների մի քանի հարցեր* . . 18
Ն. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ — *Հակակոմունիզմը գաղութարարների զենքն է* . . 25
Վ. ԳԵՎՈՐԳՅԱՆ — *Գյուղական ինտելիգենցիան* . . . . . 36
*Օգտակար բանավեճ* . . . . . . . . . . 45

ՊԱՏՄՈՒՄ ԵՆ ՄԵՐ ԲԱՐԵԿԱՄՆԵՐԸ

Ա. ԲՈՏՎԻՆ — *Համագործակցության կենարար ուժը* . . . . 53
Ա. ԿՈԲԼԱՏԱՋԵ — *Քաղաք-եղբայրներ* . . . . . . 61

ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

ՍՏ. ՎԱՐԴԱՆՅԱՆ — *Հաղթահարելով դժվարությունները։* Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ — *Գաղափարական հանձնաժողովի աշխատանքի փորձից։* Ս. ՎԱՐԴԱՆՅԱՆ — *Պողաբեր դարձնենք աղուտային հողերը* . 65

ՊԱՏԱՍԽԱՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ

Կ. ՂԱԶԱՐՅԱՆ — *Մարդը և աշխատանքը* . . . . . . 79

ՄԵՐ ՕՐԵՐԻ ՄԱՐԴԻԿ

Հ. ՄԿՐՏՉՅԱՆ — *Նոր մարդկանց մոտ* . . . . . . 82

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԵՎ ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ ԼԻԴԵՐՆԵՐԸ

*Վլադիսլավ Գոմուլկա* . . . . . . . . . 96

ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

Ա. ԹԵՎՈՍՅԱՆ — *Հուրշ հետազոտություն* . . . . . . 100

ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ

*Առաջին քայլերը* . . . . . . . . . . 104
*«Լենինյան ուղիով» ամսագրում 1963 թ. զետեղված հոդվածների ու նյութերի ցանկ* . . . . . . . . . . 107

## СОДЕРЖАНИЕ

**Передовая** — На встречу съезду, к новым достижениям . . . . . . . . . 3

**Статьи**

**С. Бадалян** — Экономическая роль государства в период построения коммунизма . . . . 10
**А. Айрумян** — Некоторые вопросы концентрации и районного планирования сельскохозяйственного производства . . . . . . . . 18
**Н. Оганесян** — Антикоммунизм оружие колонизаторов 25
**В. Геворкян** — Сельская интеллигенция . . . 36
Полезная полемика . . . . . . . 45

**Рассказывают наши друзья**

**А. Ботвин** — Живительная сила сотрудничества . 53
**А. Коблатадзе** — Города — братья . . . . 61

**Партийная жизнь**

**Ст. Варданян** — Преодолевая трудности. **А. Карапетян** — Из опыта работы идеологической комиссии. **С. Варданян** — Солончаки превратим в сады 65

**Отвечаем на вопросы читателей**

**К. Казарян** — Человек и труд . . . . . 79

**Люди наших дней**

**А. Мкртчян** — У новых людей . . . . . 82

**Лидеры коммунистического и рабочего движения**

Владислав Гомулка . . . . . . . 96

**Критика и библиография**

**А. Тевосян** — Серьезное исследование . . . 100

**Обзор печати**

Удачные шаги . . . . . . . . . 104
Указатель статей и материалов, помещенных в журнале «Ленинян угиов» за 1963 год . . . 107



# ԴԵՊԻ ՀԱՄԱԳՈՒՄԱՐ, ԴԵՊԻ ՆՈՐ ՆՎԱՃՈՒՄՆԵՐ

Ռեսպուբլիկայում ավարտվեցին քաղաքային, շրջանային, կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչությունների և արդյունաբերական գոտիների պարտիական կազմակերպությունների կոնֆերանսները:

Պարտիական կոնֆերանսները, ինչպես նաև սկզբնական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներն անցան ՍՄԿՊ Ծրագրի և Կանոնադրության, XXII համագումարի և պարտիայի Կենտկոմի պլենումների որոշումների կենսագործման համար աշխատավորների ուժերը մոբիլիզացնելու նշանաբանով: Կոմունիստները ակտիվորեն քննարկեցին սկզբնական կազմակերպությունների ու բյուրոների, պարտիական կոմիտեների գործունեությունը, բացահայտեցին այն լավն ու վատը, որ կա նրանց աշխատանքում, որոշեցին պարտիական կազմակերպությունների հերթական խնդիրները:

1964 թ. հունվարին հրավիրվում է Հայաստանի կոմունիստական պարտիայի հերթական XXIII համագումարը, որը լսելու է Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի, վերստուգիչ հանձնաժողովի հաշվետվությունները, ընտրելու է ռեսպուբլիկայի Կոմպարտիայի Կենտկոմ և վերստուգիչ հանձնաժողով:

Հայաստանի Կոմունիստական պարտիան Սովետական Միության Կոմունիստական պարտիայի մի անբաժան մասն է, նրա հավատարիմ և մարտական ջոկատներից մեկը: Իր ձևավորման առաջին իսկ օրից նա շարունակել և զարգացրել է պարտիական շարքերի միասնության համար նախասովետական ժամանակաշրջանում բոլշևիկյան կազմակերպությունների մղած պայքարի փայլուն տրադիցիաները:

«Մեր պարտիայի ստեղծման պահից,—ասել է Ն. Ս. Խրուշչովը,—Անդրկովկասի, այդ թվում Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունները պարտիայի հավատարիմ ռևոլյուցիոն ջոկատներն էին»:

Հայաստանի կոմպարտիան աճել, ընդլայնել և ամրապնդել է կապերը մասսաների հետ: Եթե 1922 թ., առաջին համագումարի ժամանակ Հայաստանի Կոմպարտիան իր շարքերում ուներ ընդամենը 6 հազար կոմունիստ, ապա ներկայումս, իր XXIII համագումարի պահին նա իր շարքերում միավորում է ավելի քան 97 հազար կոմունիստ:

Հայաստանի Կոմունիստական պարտիան միավորում է ռեսպուբլիկայի բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և աշխատավոր ինտելիգենցիայի շարքերում եղած առավել ակտիվ ու գիտակից քաղաքացիներին, կոմունիզմի համար պայքարող անձնվեր մարտիկներին, որոնք ավանգարդային դեր են կատարում նոր, կոմունիստական կյանքի կառուցման համար մղվող պայքարում: Ներկայումս նրանք գլխավորում են մասսաների պայքարը յոթնամյա-

կը ժամկետից շուտ կատարելու համար, մեր հայրենիքի հզորության ամրապնդման, մեր երկրում նյութական բարիքների առատություն ստեղծելու համար: Ռեսպուբլիկայի ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, սովխոզներում, հիմնարկներում կոմունիստները հանդես են գալիս որպես առաջավոր մեթոդների, աշխատանքի կուլտուրայի և կազմակերպվածության նախաձեռնող ու կրող, տալիս են նորարարության, տեխնիկային տիրապետելու օրինակ: Կոմունիստները մասսաների կազմակերպիչն ու քաղաքական ղեկավարն են, նրանք աշխատավորներին պարզաբանում են պարտիայի և կառավարության քաղաքականությունը, նրանց ոգևորում են հանուն սովետական հայրենիքի ամրապնդման և ծաղկման:

Հայաստանի Կոմպարտիայի XXII համագումարից մինչև XXIII համագումարն ընկած ժամանակաշրջանը նշանավորվեց պատմական խոշոր իրադարձություններով մեր պարտիայի կյանքում, երկրի կյանքում: Ամենախոշոր իրադարձությունը Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարն էր: Համագումարն անցավ լենինյան պարտիայի կուռ միասնության ու համախմբվածության պայմաններում, կրկին ու կրկին հաստատեց միջազգային կոմունիստական շարժման համախմբվածությունը, մարքսիզմ-լենինիզմին նրա նվիրվածությունն ու հավատարմությունը: ՍՄԿՊ-ն միշտ էլ հանդես է եկել և վճռականորեն հանդես է գալիս հանուն համաշխարհային կոմունիստական շարժման միասնության, ընդդեմ օպորտունիզմի, նացիոնալիզմի և ավանտյուրիզմի:

Պարտիայի XXII համագումարն ընդունեց ՍՄԿՊ նոր Ծրագիրը՝ ստեղծագործական մարքսիզմի նշանավոր փաստաթուղթը, արդի դարաշրջանի կոմունիստական մանիֆեստը, որի գաղափարները լուսավորում են մարդկության ուղին դեպի պայծառ ապագա:

Պարտիայի XXII համագումարից և ՍՄԿՊ Ծրագրի ընդունումից հետո անցած երկու տարիները հագեցած են խոր բովանդակությամբ և տասնամյակների ծանրության կշիռ ունեն: Այդ տարիները մեր հայրենիքի պատմության մեջ մտան որպես սովետական ժողովրդի աշխատանքային խանդավառության, նրա ստեղծագործական ուժերի չտեսնված վերելքի տարիներ:

Հայաստանի կոմունիստները, բոլոր աշխատավորները հսկայական ոգևորությամբ ու խանդավառությամբ ընդունեցին համագումարի պատմական որոշումներն որպես գործողության մարտական ծրագիր և ոտքի են ելել դրանք կյանքում անշեղորեն կենսագործելու, կոմունիստական շինարարության բոլոր բնագավառներում նորանոր հաջողություններ ձեռք բերելու համար:

Պայքարը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման համար դարձել է համաժողովրդական գործ: Գլխավորը էկոնոմիկայի զարգացումն է: Եվ կոմունիստական պարտիան ամեն ինչ անում է աշխատանքի արտադրողականության բարձրացման, տեխնիկական առաջադիմության ըստ ամենայնի արագացման համար:

Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները, մոբիլիզացնելով աշխատավորների ուժերը, անժխտելի նվաճումներ են ձեռք բերել էկոնոմիկայի և կուլտուրայի բոլոր ասպարեզներում: Արդյունաբերությունը տարեցտարի կատարում և գերակատարում է պետական առաջադրանքները: Յոթնամյակի հինգ տարում Հայկական ՍՍՌ արդյունաբերության համախառն արտադրանքը կաճի 65,8 տոկոսով, 1,2 տոկոսով ավելի, քան այդ տարիների համար նախատեսված է յոթնամյակի կոնտրոլ թվերով: Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը



հաջողությամբ է ավարտում նաև ընթացիկ տարին: Անցած տասն ամսվա պլանը կատարված է 103,3 տոկոսով: Ռեսպուբլիկայի բանվորները, կոլտնտեսականները, ինտելիգենցիան քաղաքական և աշխատանքային վերելքի պայմաններում են դիմավորում Հայաստանի կոմունիստական պարտիայի հերթական համագումարը՝ ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպության բարձրագույն օրգանը:

Արդյունաբերական ձեռնարկություններում սոցիալիստական լայն մրցություն է ծավալվել Հայաստանի կոմպարտիայի XXIII համագումարը աշխատանքային նոր հաջողություններով դիմավորելու, ընթացիկ տարվա արտադրական պլանները ժամկետից շուտ կատարելու համար:

Հայաստանը զարգացած քիմիական արդյունաբերության ռեսպուբլիկա է: Մեծ քիմիայի՝ ռեսպուբլիկայում եղած ձեռնարկությունները միութենական համբավ են վայելում: Հիացմունք է պատճառում Երևանի Ս. Մ. Կիրովի անվան փառաբանված գործարանը, որին առաջինը ռեսպուբլիկայում շնորհվեց կոմունիստական աշխատանքի ձեռնարկության պատվավոր կոչում: Մեկ տարի էլ չկա, ինչ շարք մտավ Միության քիմիական արդյունաբերության խոշոր ձեռնարկություններից մեկը՝ Կիրովականի արհեստական մետաքսաթելի գործարանը:

Այսուհետև ևս ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունը առավել ուշադրություն կդարձնի քիմիայի բուռն զարգացմանը, որը կոմունիզմի հարվածային ճակատն է և զարգացման մեծ հեռանկարներ ունի:

Սոցիալիստական գյուղատնտեսության հետագա վերելքը, պայքարը գյուղատնտեսական մթերքների ավելացման համար դարձել է պարտիայի, սովետական ամբողջ ժողովրդի գործը:

Պարտիայի ու կառավարության ձեռք առած միջոցների շնորհիվ վերջին տասը տարիների ընթացքում նոր, նշանակալից հաջողություններ ձեռք բերեց սոցիալիստական գյուղատնտեսությունը: Այդ տարիներին գյուղատնտեսական արտադրությունն զգալիորեն աճեց նաև մեր ռեսպուբլիկայում: Այսպես, 1962 թ. 1953 թ. համեմատությամբ, գյուղատնտեսական հիմնական մթերքների արտադրությունն ավելացել է՝ մսինը 42 տոկոսով, կաթինը՝ 70,4, բրդինը՝ 52,4, ձվինը՝ 125 տոկոսով: Բարձրացել է հացահատիկի, խաղողի և տեխնիկական կուլտուրաների բերքատվությունը: Չնայած կլիմայական անբարենպաստ պայմաններին, ընթացիկ տարին նույնպես ռեսպուբլիկայի գյուղի աշխատավորներն ավարտում են ոչ քիչ նվաճումներով: Նրանք պատվով կատարեցին իրենց պարտքը հարազատ պետության հանդեպ, երկրին տվեցին ավելի քան 3 միլիոն փութ հացահատիկ, որքան չէին տվել անցած ոչ մի տարում:

Էկոնոմիկայի բնագավառում ձեռք բերած հաջողություններն արդյունք են քաղաքական-դաստիարակչական այն հսկայական աշխատանքի, որ կատարում են ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպություններն աշխատավորների շրջանում:

Նոր մարդու՝ կոմունիզմ կառուցող մարդու դաստիարակության խնդիրը նոր ուժով առաջ քաշվեց պարտիայի Ծրագրում: Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական կոմիտեն հսկայական ուշադրություն է նվիրում գաղափարական աշխատանքին, անդուլ հոգատարություն է ցուցաբերում աշխատավորների քաղաքական դաստիարակության, նրա ձևերի ու մեթոդների կատարելագործման նկատմամբ: Դրա վառ արտահայտությունն են վերջին երկու տարիների ընթացքում գաղափարական աշխատանքին նվիրված համամիութենական մի շարք խորհրդակցությունները, պարտիայի և կառավարության

ղեկավարների ջերմ ու սրտաբաց հանդիպումները երկրի գրականության ու արվեստի գործիչների հետ, այն հետևողական ու վճռական պայքարը, որ պարտիան մղում է ընդդեմ բուրժուական գաղափարախոսության, ընդդեմ ֆորմալիզմի և աբստրակցիոնիզմի, որոնք ընդհանուր ոչինչ չունեն մեր ճշմարիտ, ժողովրդական արվեստի ու գրականության հետ:

Հայաստանի պարտիական կազմակերպությունները, ղեկավարվելով պարտիայի XXII համագումարի և ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումներով, գաղափարական լայն աշխատանք են ծավալել: Այդ աշխատանքի հիմքում դրված է ՍՄԿՊ Ծրագրի, XXII համագումարի նյութերի բազմակողմանի ուսումնասիրությունը և յուրացումը, որոնք ռեսպուբլիկայի աշխատավորներին՝ կոմունիստներին ու անկուսակցականներին օգնում են ավելի պարզորոշ ըմբռնելու կոմունիստական շինարարության խնդիրներն ու օրինաչափությունները, նպաստում են նրանց գիտակցականության բարձրացմանը, աշխատանքային և քաղաքական ակտիվության աճմանը:

Ռեսպուբլիկայում ստեղծվել է պարտիական լուսավորության ճկուն ու բազմակողմանի սիստեմ, ուր ընդգրկված են ավելի քան 200 հազար բանվորներ, կոլտնտեսականներ և ծառայողներ: Արդյունաբերական ձեռնարկություններում, կառուցներում, կոլտնտեսություններում, սովխոզներում, հիմնարկներում ավելի քան 40 հազար ագիտատորներ ամենօրյա մասսայական-բացատրական աշխատանք են կատարում աշխատավորների շրջանում:

Հայաստանի կոմպարտիայի XXIII համագումարն արժեքավոր շատ գործերով են դիմավորում ռեսպուբլիկայի կուլտուրայի, գրականության ու արվեստի գործիչները: Մեր գրողները, նկարիչները, կոմպոզիտորները, արձագանքելով պարտիայի կոչին, ստեղծեցին մեր ժամանակին արժանավայել այնպիսի գործեր, որոնք ճշմարտացիորեն են արտացոլում սովետական ժողովրդի կյանքն ու հերոսական առօրյան, նրա անդուլ պայքարը մեր մեծ նպատակի իրականացման համար:

Վերջին երկու տարիների ընթացքում ուշադրության արժանի իրադարձություններ տեղի ունեցան ռեսպուբլիկայի կուլտուրական կյանքում: Մեկ տարի առաջ տոնվեց հայ գրի ու դպրության հիմնադիր Մեսրոպ Մաշտոցի ծննդյան 1600-ամյակը: Բոլորովին վերջերս մեծ շուքով նշվեց բարեկամության ու եղբայրության մեծ երգիչ Սայաթ-Նովայի ծննդյան 250-ամյակը: Այդ հոբելյանները նշվեցին բովանդակ Սովետական Միությունում, նրա սահմաններից դուրս և վերածվեցին ժողովուրդների իսկական բարեկամության տոնահանդեսների:

Սայաթ-Նովայի ծննդյան 250-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում այդ բանը լավ արտահայտեց կիրգիզ բանաստեղծ Ղամչի Ջունուսովը:

— Մեծ Սայաթ-Նովայի ծննդյան 250-ամյակը,— ասաց նա,— ո՛չ միայն ձեր ժողովրդի տոնն է: Դա նմանապես տոն է բոլորիս համար, դա ժողովուրդների եղբայրական բարեկամության, բանականության տոնն է, մարդկության տոնը:

Համագումարը դիմավորելով մեծ նվաճումներով, ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները միաժամանակ պարզ պատկերացնում են այն հոյակապ խնդիրները, որոնք իրենց լուծմանն են սպասում հենց այսօր, վաղը, ապագայում: Համագումարը, հանրագումարի բերելով կատարվածը, ուշադրությունը կբևեռի դեռևս չլուծված հարցերի վրա, կբացահայտի մեր աշխատանքում, մեր գործերում եղած բացերն ու թերությունները, կնշի դրանք արագ վերացնելու, նոր հաջողությունների հասնելու միջոցառումներ:



Վ. Ի. Լենինը մեզ պատգամել է՝ չբավարարվել ձեռք բերածով, պայքարել ընդդեմ բարեհոգության և հաջողություններով տարվելու, միշտ առաջ նայել, հաղթահարել դժվարությունները, գրավել նոր բարձունքներ:

Մենք համառոտակի նշեցինք էկոնոմիկայի բնագավառում մեր ձեռք բերած նվաճումները: Բայց դեռ ինչքան չօգտագործված ռեզերվներ ունենք և՛ արդյունաբերության, և՛ գյուղատնտեսության բնագավառներում:

Արդյունաբերության մեջ գլխավորը աշխատանքի արտադրողականության բարձրացումն է: Իսկ այս գործում շատ թերություններ կան: Ռեսպուբլիկայի տասնյակ ձեռնարկություններ սիստեմատիկաբար թերակատարում են արտադրական պլանները: Դա հանդուրժել չի կարելի, մեզ մոտ ետ մնացող ձեռնարկություն չպետք է լինի, պետական պլանը օրենք է և այն անպայման պետք է կատարվի:

Արդյունաբերական ձեռնարկությունների պարտիական կազմակերպություններն անբավարար պայքար են մղում աշխատանքային կարգապահության ամրապնդման համար: Ռեսպուբլիկայի ժողտնտխորհին ենթակա ձեռնարկություններում օրական մի քանի հարյուր մարդ անհարգելի պատճառով աշխատանքի դուրս չի գալիս: Դա պետական կարգապահության կոպիտ խախտում է, որի վնասն ակնհայտ է:

Ուրիշ էլի շատ թերություններ կան արդյունաբերության մեջ: Լուրջ անհանգստություն է պատճառում թողարկվող արտադրանքի որակը արդյունաբերության առանձին ճյուղերում ու առանձին ձեռնարկություններում: Արտադրանքի որակին պատշաճ ուշադրություն չեն դարձնում, մասնավորապես, կարի և փայտամշակման ձեռնարկություններում:

Արդարացի վրդովմունք է պատճառում, օրինակ, պատրաստի հագուստեղենի և տնային կահ-կարասիների որակը: Ժողտնտխորհի ու նրա համապատասխան վարչությունների ղեկավարները վճռական միջոցների չեն դիմում դրությունը շտկելու համար, նրանք աններելի թողտվություն են հանդես բերում այն աշխատողների նկատմամբ, որոնց մեղքով անորակ արտադրանք է վաճառքի հանվում:

Պարտիական կոմիտեները, արդյունաբերական ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունները պետք է արտադրանքի որակի հարցով զբաղվեն ամեն օր, անորակ արտադրանքի ամեն մի փաստ լուրջ քննության առարկա դարձնեն: Այս գործում կոչված են հսկայական դեր խաղալու պարտիական ու պետական վերահսկողության տեղական օրգանները:

Պարտիական կազմակերպությունները պետք է լուրջ ուշադրություն նվիրեն նաև արտադրանքի ինքնարժեքի իջեցմանը, որի համար անբավարար աշխատանք է կատարվում մեր շատ ձեռնարկություններում:

Վերջին տարիների ընթացքում ռեսպուբլիկայում մեծ թափ է ստացել կապիտալ շինարարությունը: Դեռ երբեք արդյունաբերական ու բնակարանային այնպիսի շինարարություն չի կատարվել ինչպես վերջին տարիներս: Կառուցվել և շարք են մտել տասնյակ արդյունաբերական ձեռնարկություններ, խոշոր ցեխեր: Նշանակալի երևույթ էր Երևանի ջերմա-էլեկտրակայանի առաջին և երկրորդ հերթերի գործարկումը: Միայն Երևանում 1961 և 1962 թթ. ընթացքում մոտ 12 հազար ընտանիք նոր բնակարաններ են ստացել: Սովետական մարդկանց կյանքի և կենցաղի նկատմամբ պարտիայի ու կառավարության հոգատարության վառ արտահայտությունն է այդ:

Ըստ ամենայնի գնահատելով ռեսպուբլիկայի շինարարների աշխատանքը, միաժամանակ չի կարելի չնշել շինարարության բնագավառում եղած լուրջ թերությունները: Մի շարք արդյունաբերական օբյեկտների կառուցումն անհանդուրժելիորեն ձգձգվում է, հատկացված պետական միջոցները ժամանակին չեն իրացվում. բնակելի շատ շենքեր առաջվա նման շահագործման են հանձնվում լուրջ թերություններով:

Կառույցների և տրեստների պարտիական կազմակերպությունները, պարտիական կոմիտեները պետք է լրջորեն զբաղվեն շինարարության հարցերով, հասնեն կապիտալ շինարարության պլանների անթերի կատարմանն ու որակի բարձրացմանը:

ՍՄԿՊ Ծրագրում նշված են գյուղատնտեսության կարգացման ուղիները: Գլխավորը հացահատիկային և մյուս կուլտուրաների բերքատվության խիստ բարձրացումն է, արտադրության ինտենսիվացումը: Պարտիան խնդիր է դրել մոտակա տարիներին շեշտակիորեն ավելացնել հացահատիկի արտադրությունը: Այդ նպատակին հասնելու համար պարտիան խոշոր միջոցառումներ է իրականացնում հանքային պարարտանյութերի և ջրովի հողատարածությունն ընդլայնելու, դրանով իսկ երաշխավորված բարձր բերք ստանալու հաստատուն բազա ստեղծելու համար:

Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների մարտական խնդիրն է կոլտնտեսային և սովխոզային դաշտերի աշխատավորներին ոտքի հանել գյուղատնտեսության վերելքի համաժողովրդական խնդիրը հաջողությամբ լուծելու համար: Ռեսպուբլիկայում ցանքատարածությունների ընդարձակման և հացահատիկային ու մյուս կուլտուրաների բերքատվության բարձրացման շատ ռեզերվներ կան: Դրանք պետք է գործի դնել և ինչքան շուտ այնքան լավ:

Ռեսպուբլիկայում ունենք ավելի քան 257 հազար հեկտար ոռոգելի հողատարածություն: Ջրովի տարածությունների մեկ հեկտարի միջին բերքը 12 ցենտներից չի անցնում: Դա չափազանց քիչ է: Առաջավոր շատ կոլտնտեսություններ ու սովխոզներ առանձին հեկտարներից ստանում են 25—30 ցենտներ հացահատիկի բերք: Բարձր բերք կարող են և պետք է ստանան մեր բոլոր կոլտնտեսություններն ու սովխոզները: Հարկավոր է արմատապես բարելավել պարարտացման և դաշտերի ոռոգման գործը, խելացիորեն և տնտեսաբար օգտագործել ջրովի հողի ամեն մի հեկտարը:

Ռեսպուբլիկայում լայն մրցություն է ծավալվել «Հարուստ հեկտարի համար»: Այդ հիանալի մրցության նախաձեռնողը մեր երիտասարդությունն է: Պարտիական և կոմերիտական կազմակերպությունները պետք է գլխավորեն և առաջ մղեն այդ մրցությունը, ապահովեն բարձր բերքի ստացումը:

Մեկ մոտ առաջավոր շատ ու շատ կոլտնտեսությունների և սովխոզների կողքին կան ոչ քիչ ետ մնացող տնտեսություններ: Պայքարը ետ մնացող տնտեսությունների էկոնոմիկան բարձրացնելու համար՝ պարտիական ու պետական մեծ գործ է, համաժողովրդական գործ:

Կոլտնտեսային և սովխոզային պարտիական կազմակերպությունները վերջերս հանգամանորեն քննարկեցին ընկ. Ն. Ս. Խրուշչովի նամակը ետ մնացող կոլտնտեսությունների և սովխոզների էկոնոմիկան բարձրացնելու միջոցառումների մասին: Այդ հարցը լուրջ քննության առարկա դարձավ գյուղական արտադրական վարչությունների պարտիական կազմակերպությունների կոնֆերանսներում: Ռեսպուբլիկայի ետ մնացող կոլտնտեսությունների և սովխոզների էկոնոմիկան բարձրացնելու միջոցառումների հարցը քննության առավ Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմի օրերս տեղի ունեցած պլենումը: Գլխավորն է՝ հանդես բերել հետևողականություն, հասնել ընդունված որոշումների կատարմանը, ոչ թե խոսքով, որոշումներով ու բանաձևերով, այլ իրական գործով պայքար մղել գյուղատնտեսության վերելքի համար, հասնել այն բանին, որ առաջիկա տարիներին ռեսպուբլիկայում չլինի ոչ մի ետ մնացող կոլտնտեսություն և սովխոզ:



Կատարելով ՍՄԿՊ Կենտկոմի Նոյեմբերյան պլենումի որոշումները, պարտիան վերակառուցեց տեղական պարտիական օրգաններն արտադրական սկզբունքով: Դա էլ ավելի բարձրացրեց նրանց դերը և պատասխանատվությունը մեր առջև դրված մեծ խնդիրների իրականացման գործում: Ռեսպուբլիկայի շատ պարտիական կոմիտեներ վերջին մեկ տարվա ընթացքում տնտեսության ղեկավարման լավ փորձ են ձեռք բերել: Գործի շահը, սակայն, պահանջում է է՛լ ավելի բարձրացնել տնտեսության պարտիական ղեկավարման մակարդակը, անշեղորեն կատարելագործել աշխատանքի ձևերն ու մեթոդները:

Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպություններն այսուհետև ևս անդուլ հոգատարություն պետք է հանդես բերեն աշխատավորների կոմունիստական դաստիարակության նկատմամբ, գաղափարական ամբողջ աշխատանքը ի սպաս դնեն կոմունիզմի նյութատեխնիկական բազայի, երկրում նյութական բարիքների առատության ստեղծմանը:

Աշխատավորների կոմունիստական դաստիարակության բոլոր միջոցները՝ մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը, կինոն, թատրոնը, կուլտուր-լուսավորական հիմնարկները, գրականությունը, արվեստը պետք է լայնորեն օգտագործել նոր մարդու դաստիարակության ամենօրյա աշխատանքում: Աշխատավորների, առաջին հերթին երիտասարդության, դաստիարակությունը եղել է և պետք է մնա մեր պարտիական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում: Այդ գործում հսկայական դեր է պատկանում միջնակարգ և բարձրագույն դպրոցին, որը սովորողներին կայուն գիտելիքներ տալու հետ մասին, պետք է դաստիարակի աշխատասիրության, սովետական հայրենասիրության, ժողովուրդների բարեկամության և ինտերնացիոնալիզմի ոգով:

Հայաստանի Կոմպարտիայի XXIII համագումարը խոշոր իրադարձություն է ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների, բոլոր աշխատավորների կյանքում:

Հայաստանի Կոմունիստական պարտիան իր հերթական համագումարն է գնում կուռ և միասնական շարքերով, էլ ավելի սերտորեն համախմբված Սովետական Միության Կոմունիստական պարտիայի, նրա Կենտրոնական կոմիտեի շուրջը, որին գլխավորում է հավատարիմ լենինյան ընկեր Ն. Ս. Խրուշչովը:

Համագումարը կրկին ցույց կտա Հայաստանի կոմունիստների, բոլոր աշխատավորների սերն ու նվիրվածությունը կոմունիստական պարտիային, նրանց վճռական կամքն ու պատրաստակամությունը՝ պարտիայի և նրա մարտական շտաբի՝ լենինյան Կենտկոմի ղեկավարությամբ այսուհետև ևս անշեղորեն առաջ ընթանալ դեպի մեր մեծ ու նվիրական նպատակը՝ դեպի կոմունիզմ:

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՊԵՏՈՒԹՅԱՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԴԵՐԸ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ

Ս. ԲԱԴԱԼՅԱՆ

Տնտեսագիտական գիտությունների դոկտոր

Սոցիալիզմի և կոմունիզմի շինարարության վիթխարի ու բարդ խնդիրների լուծման պրոցեսում սոցիալիստական պետության տնտեսական դերի որոշումը միշտ էլ հանդիսացել է հասարակության ռևոլյուցիոն վերափոխման մասին մարքս-լենինյան ուսմունքի կարևորագույն հարցերից մեկը։ Եվ պատահական չէ, որ ՍՄԿՊ Ծրագրում իրենց արժանի տեղն են գրավում պետական շինարարության ու սոցիալիստական դեմոկրատիայի հետագա համակողմանի զարգացման հարցերը։ Մարքսիզմ-լենինիզմի այդ նշանավոր փաստաթղթում գիտականորեն հիմնավորված է պրոլետարիատի դիկտատուրայի պետության վերաճումը համաժողովրդական պետության, մշակված են համաժողովրդական պետության խնդիրներն ու ֆունկցիաները կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում։

***

Ավելի քան կես դար առաջ մեր պարտիան միակ պարտիան էր, որը Վ. Ի. Լենինի առաջարկությամբ, միջազգային կոմունիստական շարժման պատմության մեջ առաջին անգամ իր ծրագրում մտցրեց պրոլետարիատի դիկտատուրայի նվաճման խնդիրը։ Մեր երկրի ռևոլյուցիոն բանվոր դասակարգը, լենինյան պարտիայի գլխավորությամբ, հաստատորեն գնաց այդ ուղիով և հաղթանակեց։ 1917 թվականի հոկտեմբերին ոչնչացվեց աշխատավորների համար ատելի շահագործողական կապիտալիստական կարգը, հաստատվեց պրոլետարիատի դիկտատուրա, ստեղծվեց նոր տիպի պետություն՝ Սովետական Սոցիալիստական պետությունը, որը դարձավ հասարակության սոցիալական վերափոխման հզոր գործիքը։

Պրոլետարիատի դիկտատուրայի պետության, որպես կապիտալիզմից դեպի սոցիալիզմ տանող անցողիկ ժամանակաշրջանի պետության գլխավոր նպատակը նոր, սոցիալիստական հասարակարգի կառուցումն էր։ «Նրա նպատակն է,— ասում էր Վ. Ի. Լենինը,— ստեղծել սոցիալիզմ, ոչնչացնել հասարակության բաժանումը դասակարգերի, հասարակության բոլոր անդամներին աշխատավորներ դարձնել, խլել մարդու կողմից մարդուն շահագործելու ամեն մի հող» (Երկեր, հատ. 29, էջ՝ 476)։



Մեր կարծիքով, հարցի այս կողմն են անտեսում նրանք, ովքեր խորհում են, թե Սովետական Միության մեջ դեռևս շարունակում են մնալ հակոտնյա դասակարգեր, որոնց պայքարի անհրաժեշտությունն իբր թե անհրաժեշտ է դարձնում պրոլետարիատի դիկտատուրայի պահպանումը։ Սակայն դժվար չէ հասկանալ, որ տվյալ դեպքում մեր երկրի սոցիալական վիթխարի տեղաշարժերի անիմացությունն է այս մոլորության միակ աղբյուրը։

Քաղաքական հետևությունների համար միշտ էլ հարկավոր է հասարակական ուժերի իրական վիճակի ամենակողմանի ըմբռնում, այլ կերպ՝ քաղաքականությունն անպայման կլինի անպտուղ։ Ահա թե ինչու այժմ միջազգային ռևոլյուցիոն շարժման շահերը հրամայաբար թելադրում են կոմունիստներին կրկին և կրկին անգամ հիշել և կիրառել մեծ Լենինի այն պատգամը, թե տեսությունը դալար կյանքից պետք է սնվի և նրա կռվաններով պետք է մաքառի իր նպատակների համեմատ՝ իրականությունը վերափոխելու համար։ Չպետք է մոռանալ, որ սոցիալիզմի լիակատար և վերջնական հաղթանակից հետո բանվոր դասակարգն իր ղեկավար դերն արդեն իրագործում է ոչ պրոլետարիատի դիկտատուրայի միջոցով։ Քանի որ բանվոր դասակարգն անմիջականորեն կապված է սոցիալիստական սեփականության առավել բարձր ձևի՝ համաժողովրդական սեփականության հետ և ունի ռևոլյուցիոն կուռ կոփվածք ու հարուստ փորձ, նա իր ղեկավար դերը պահպանում է նաև կոմունիզմի ծավալուն շինարարության ժամանակաշրջանում։ «Հասարակության ղեկավարի իր դերի կատարումը,— ասված է ՍՄԿՊ Ծրագրում,— բանվոր դասակարգը կավարտի կոմունիզմի կառուցմամբ, երբ կվերանան դասակարգերը»։

Հիրավի, պատմական կարճ ժամանակում մեր երկրում կառուցվեց սոցիալիզմի նյութատեխնիկական բազան, ստեղծվեցին նոր, սոցիալիստական արտադրական հարաբերություններ։ Սովետական ժողովրդի հերոսական աշխատանքի և սոցիալիստական պետության տնտեսական գործունեության շնորհիվ, որը գլխավորում էր մարքսիզմ-լենինիզմի ռևոլյուցիոն տեսությամբ զինված կոմունիստական պարտիան, սոցիալիզմը մեր երկրում ռեալ իրականություն դարձավ, այն հաղթանակեց լիակատար կերպով և վերջնականապես։

Սոցիալիզմի կառուցմամբ վերացվեցին շահագործող դասակարգերն ու մարդու կողմից մարդու շահագործում ծնող պատճառները։ Մեր երկրում մնացին երկու բարեկամ դասակարգեր՝ բանվոր դասակարգը և կոլտնտեսային գյուղացիությունը, աճեց այդ դասակարգերի ծոցից ելած և սոցիալիզմի գործին նվիրված նոր ինտելիգենցիան, որոնց արմատական շահերի ընդհանրության հիմքի վրա ստեղծվեց սովետական ժողովրդի սոցիալ-քաղաքական ու գաղափարական անխախտ միասնությունը։ Լուծվեց ազգային հարցը՝ հաղթահարվեցին ազգերի միջև կապիտալիզմից ժառանգած հարաբերությունների մնացուկները, վերացվեց նրանց միջև տնտեսական ու կուլտուրական անհավասարությունը, ազգերի միջև ստեղծվեցին եղբայրական բարեկամության և փոխօգնության սոցիալիստական հարաբերություններ։

Սովետական հասարակության կյանքում տեղի ունեցած ռևոլյուցիոն այս բոլոր փոփոխությունների հիմնական լծակը պրոլետարիատի պետությունն էր։ «ՍՍՌՄ-ի փորձն ապացուցեց,— ասված է ՍՄԿՊ Ծրագրում,— որ հասարակության սոցիալիստական վերափոխման հիմնական գործիքը սոցիալիստական պետությունն է։ Այն կազմակերպում և համախմբում է մասսաներին, իրագործում է տնտեսական ու կուլտուրական շինարարության պլանային ղեկավարու-

նվաճումների պաշտպանությունը»։
․մը, ապահովում է ժողովրդի ռևոլյուցիոն դիկտատուրան,
Սոցիալիստական ռևոլյուցիայի ծնունդ պրոլետարիատի
-ապահովելով սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակը և սովետա-
կան հասարակության անցումը կոմունիզմի ծավալուն շինարարության ժամա-
նակաշրջանը, կատարեց իր պատմական միսիան և ներքին զարգացման խնդիր-
ների տեսակետից դադարեց ՍՍՌՄ-ում անհրաժեշտ լինելուց։ Սովետական
հասարակության զարգացման ներկա էտապում սոցիալիստական պետությունը
թևակոխել է իր զարգացման նոր ժամանակաշրջանը։ Պետությունը, որը մեր
երկրում առաջ եկավ որպես պրոլետարիատի դիկտատուրայի պետություն, կո-
մունիզմի ծավալուն շինարարության ժամանակաշրջանում դարձել է համաժո-
ղովրդական պետություն՝ ամբողջ սովետական ժողովրդի կամքն ու շահերն
արտահայտող պետություն։

Սա նշանակում է, որ Սովետական Միությունն արդեն թևակոխել է զար-
գացման այն նոր շրջանը, երբ համաժողովրդական պետությունն իր որակական
նոր փոփոխություններով, հենված ժողովրդական լայն զանգվածների ստեղ-
ծագործական նախաձեռնության վրա, մեծապես կնպաստի կոմունիստական
արտադրական հարաբերությունների բարգավաճմանը։ Մի պրոցես, որն իր
խորությամբ և լայնությամբ ամբողջ ժողովրդին գլխովին կներգրավի նոր
կյանքի կերտման պատմական նշանակություն ունեցող խնդիրների արդյու-
նավետ լուծմանը։

***

Կոմունիզմի ծավալուն շինարարության ժամանակաշրջանում անչափ ա-
ճում է սոցիալիստական համաժողովրդական պետության տնտեսական դերը,
բազմակողմանիորեն զարգանում են նրա տնտեսական-կազմակերպչական և
կուլտուր-դաստիարակչական ֆունկցիաները, որոնք ծառայում են կոմունիս-
տական հասարակարգի կառուցման նպատակին։

Հենվելով սոցիալիզմի տնտեսական օրենքների պահանջների վրա և իր
տնտեսական գործունեության ընթացքում գործիմացությամբ օգտագործելով
այդ օրենքները, սոցիալիստական պետությունը կոչված է կազմակերպելու կո-
մունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը, սոցիալիստական հասա-
րակական հարաբերությունների վերափոխումը կոմունիստական հասարակա-
կան հարաբերությունների, խստագույն վերահսկողություն իրագործելու աշխա-
տանքի և սպառման չափի նկատմամբ, ապահովելու սովետական ժողովրդի
բարեկեցության անշեղ վերելքը, պահպանելու աշխատավորների իրավունքներն
ու ազատությունը, ամրապնդելու սոցիալիզմի նվաճումները և նրա տնտեսական
հիմքը կազմող սոցիալիստական սեփականությունը, մարդկանց դաստիարա-
կելու գիտակցական կարգապահության ու հանրային աշխատանքի նկատմամբ
կոմունիստական վերաբերմունքի ոգով։

Զարգացման ժամանակակից էտապում սոցիալիստական պետության տըն-
տեսական գլխավոր դերն ու ֆունկցիան կոմունիզմի նյութատեխնիկական բա-
զայի ստեղծման կազմակերպումն է, սոցիալիզմի էկոնոմիկան կոմունիզմի
էկոնոմիկայի վերաճելու պրոցեսի ղեկավարումը։ Կոմունիզմի նյութատեխնի-
կական բազայի ստեղծման պրոցեսում մեր պետությունն իր տնտեսական դերն
ու ֆունկցիաներն իրագործելիս ելնում է Վ. Ի. Լենինի այն խորաթափանց ցու-



ցումից, ըստ որի «կոմունիզմը մենք գնահատում ենք միայն այն ժամանակ,
երբ նա հիմնավորված է տնտեսապես» (Երկեր, հատ. 29, էջ 224)։

ՍՄԿՊ Ծրագրում, որտեղ որոշված են համաժողովրդական սոցիալիստա-
կան պետության խնդիրները կոմունիստական հասարակարգի ծավալուն շինա-
րարության ժամանակաշրջանում, տրված է կոմունիզմի այն տնտեսական հիմ-
նավորումը, որ պարտիայի ու սովետական ժողովրդի գլխավոր տնտեսական
խնդիրն է՝ երկու տասնամյակների ընթացքում ստեղծել կոմունիզմի նյութա-
տեխնիկական բազան։

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը, որը գիտականորեն
հիմնավորված է պարտիայի ծրագրում, ենթադրում է արտադրության բոլոր
ճյուղերի լիակատար էլեկտրիֆիկացում, կոմպլեքսային մեքենայացում, ավտո-
մատացում ու քիմիացում, հանրային աշխատանքի ամենաառաջադեմ տեխնո-
լոգիա և գիտական կազմակերպում։ Այդ նշանակում է, որ կոմունիզմի նյութա-
տեխնիկական բազայի ստեղծման շնորհիվ Սովետական Միությունը կունենա
իր հզորությամբ և զարգացման մակարդակով չտեսնված արտադրողական
ուժեր, բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրողականությամբ
աշխարհում կգրավի առաջին տեղը, ձեռք կբերվի աշխարհում աշխատանքի
ամենաբարձր արտադրողականություն, որը կոմունիստական հասարակարգի
հաղթանակի գլխավոր ու վճռական պայմանն է։ Այդ պատճառով էլ սոցիալիս-
տական պետության ամբողջ ջանքերն այժմ ուղղված են կոմունիզմի նյութա-
տեխնիկական բազայի ստեղծման պրակտիկ խնդիրների իրագործմանը։

Անցած տասնամյակի արդյունքը, որին կոմունիստական պարտիայի ղե-
կավարությամբ հասավ սովետական ժողովուրդը, կոմունիզմի նյութատեխնի-
կական բազայի ստեղծման գործում ձեռք բերված հաջողություններն են։ Բավա-
կան է հիշատակել, որ տասը տարվա ընթացքում ՍՍՌՄ արդյունաբերության
համախառն արտադրանքի թողարկումն ավելացավ գրեթե երեք անգամ, գյու-
ղատնտեսությանը՝ 67 տոկոսով։ Ժողովրդական տնտեսության նյութատեխնի-
կական բազայի ուժեղացման համար յոթնամյակի հինգերորդ տարում՝ 1963
թվականին կապիտալ ներդրումները կկազմեն ավելի քան 33,5 միլիարդ ռուբլի։

Անցած տասնամյակում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծ-
ման խնդրի լուծման հաջողություններն ակնառու երևում են նաև մեր ռեսպուբ-
լիկայի օրինակով։ Անցած տասը տարում ռեսպուբլիկայի արդյունաբերության
համախառն արտադրանքի ծավալն աճել է 2, 6 անգամ։ Յոթնամյակի անցած
չորս տարում արդյունաբերական արտադրանքը, կոնտրոլ թվերով նախատես-
ված 49,6 տոկոսի փոխարեն, ավելացել է 52 տոկոսով։ Ժողովրդական տնտե-
սության մեջ կենտրոնացված կարգով կատարվել է ավելի քան 700 միլիոն
ռուբլու կապիտալ ներդրում, որը գերազանցում է 1921—1954 թվականներին
կատարված կապիտալ ներդրումները միասին վերցրած։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը, ելնելով
կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման տեմպերի արագացումից,
բացառիկ ուշադրություն են դարձնում կապիտալ ներդրումների ճիշտ պլանա-
վորման և դրանց ժողովրդատնտեսական արդյունավետության բարձրացման
վրա։

Սոցիալիստական պետությունը, ժողովրդական տնտեսության պլանավոր-
ման կատարելագործման իր ֆունկցիան իրագործելիս, ելնում է ՍՄԿՊ Ծրագրի
այն պահանջից, որ պետք է կապիտալ ներդրումները կենտրոնացնել վճռական

տապարեզներում, վերացնել կապիտալ ծախսերի փոշիացումը, որ կառուցվող ձեռնարկությունների գործարկման արագացումը պետք է դառնա պլանավորման ու տնտեսության կազմակերպման անհրաժեշտ պայմանը, որը կբարձրացնի կապիտալ ներդրումների առավելագույն արդյունավետությունը։ Չպետք է մոռանալ այն ճշմարտությունը, որ երկրի տնտեսական պոտենցիալը որոշվում է ո՛չ միայն այն բանով, թե որքան միջոցներ են տրամադրվում շինարարության համար, այլ ամենից առաջ նրանով, թե ամեն տարի որքան նոր կարողություններ են գործարկվում։

Սոցիալիստական պետության տնտեսական դերը, սոցիալիզմից կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանում, առաջնահերթ նշանակություն ունի հասարակության բոլոր անդամների աշխատանքի ու սպառման չափի նկատմամբ ամենախիստ վերահսկողության իրագործման համար։ «Մինչև այն ժամանակ, երբ կգա կոմունիզմի «բարձրագույն» փուլը,— ընդգծել է Վ. Ի. Լենինը,— սոցիալիստներն ամենախիստ վերահսկողություն են պահանջում հասարակության ու պետության կողմից աշխատանքի չափի ու սպառման չափի վրա...» (Երկեր, հատ. 25, էջ 611—612)։

Ղեկավարվելով Վ. Ի. Լենինի ցուցումով, պետությունն օգտագործում է ամենախիստ վերահսկողություն աշխատանքի մեջ մարդկանց մասնակցության վրա, հաշվի է առնում նրանց որակավորման տարբերությունները, որոշում է աշխատանքի նորմաները և վարձատրության չափերը, որպեսզի նա, ով աշխատում է բարեխիղճ ու շատ, հասարակական աշխատանքի արդյունքից ստանա ավելին։

Սոցիալիզմի ժամանակ նյութական ու հոգևոր բարիքների բաշխումը տեղի է ունենում ըստ աշխատանքի քանակի ու որակի, այսինքն՝ իրագործվում է հավասար աշխատանքի դիմաց հավասար վարձատրության սկզբունքը, որը պահանջում է ոչ թե թուլացնել, այլ ընդհակառակը, ուժեղացնել վերահսկողությունը ինչպես աշխատանքի, այնպես էլ սպառման չափի նկատմամբ։

Արդի ժամանակաշրջանում, ինչպես ընդգծվեց ՍՄԿՊ հունիսյան պլենումում (1963 թ.), պարտիայի և սոցիալիստական պետության խնդիրն է՝ հաղթահարել էկոնոմիկայում ու մարդկանց գիտակցության մեջ անցյալի մնացուկները, դաստիարակել կոմունիստական վերաբերմունք աշխատանքի նկատմամբ, բարձրացնել աշխատավորների գիտակցությունը և գաղափարական մակարդակը, որը կարևոր նշանակություն ունի կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման և կոմունիստական հասարակական հարաբերությունների ձևավորման խնդիրների լուծման պրոցեսում։

Պետության տնտեսական դերը կարևոր նշանակություն ունի նաև հանրային սեփականության պաշտպանության ու զարգացման գործում, որը հանդիսանում է սոցիալիստական հասարակարգի մարդկանց միջև նոր, կոմունիստական հարաբերությունների դաստիարակման և նրանց բարեկեցության բարձրացման հիմքը։ Հանրային արտադրության բնույթը պահանջում է նոր վերաբերմունք սոցիալիստական սեփականության նկատմամբ։ Սոցիալիստական սեփականությունը, որն ստեղծվել է սովետական ժողովրդի աշխատանքով, սրբազան ու անձեռնմխելի է։ Ահա թե ինչու սոցիալիստական պետությունը և նրա օրգանները պետք է անողոք պայքար մղեն սոցիալիստական սեփականության հափշտակողների, սպեկուլյանտների՝ պորտաբուծության ամենանողկալի ձևերից մեկի դեմ։



***

Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը պահանջում է կատարելագործել ժողովրդական տնտեսության ղեկավարման ձևերը։ Այն ավելի է բարձրացնում սոցիալիստական պետության դերը երկրի էկոնոմիկայի զարգացման գործում։ Ժողովրդական տնտեսության ղեկավարումը բարելավելու և կատարելագործելու համար սովետական ու պարտիական օրգանները վերակառուցվեցին արտադրական սկզբունքով։ Այդ վերակառուցումը լիովին հիմնվում է Վ. Ի. Լենինի այն ցուցումի վրա, որ նոր հասարակարգի ստեղծման պայմաններում քաղաքականության և էկոնոմիկայի միջև առաջանում է նոր հարաբերակցություն։ Այժմ, երբ ստեղծվում է կոմունիզմի նյութատեխնիկական բազան, առանձնահատուկ նշանակություն են ստանում քաղաքականության և էկոնոմիկայի հարաբերակցության մասին Վ. Ի. Լենինի այն մտքերը, թե կառավարման բնագավառում «գերակշռող նշանակություն է ստանում ոչ թե քաղաքականությունը, այլ էկոնոմիկան» որ «Սովետական իշխանության բուն հիմքերը, բուն էությունը... այն է, որ քաղաքական խնդիրները ենթակա են տնտեսական խնդիրներին»։

Վ. Ի. Լենինի այս խորաթափանց մտքերի էությունը իշխանությունը նվաճելուց հետո պարտիայի, պետության և ժողովրդի ամբողջ ջանքերը էկոնոմիկայի զարգացման վրա կենտրոնացնելն է։ Իհարկե, դրանից չի հետևում, որ պետք է նսեմացնել քաղաքականության դերը, լենինյան այդ դրույթները չեն նշանակում քաղաքականության բացասում։ Պարտիան ու պետությունը կոմունիստական հասարակարգի շինարարության ղեկավարման պրոցեսում միշտ էլ ցուցաբերում են քաղաքա-տնտեսական մոտեցում։

Ժողովրդական տնտեսության վարից վեր ըստ արտադրական սկզբունքի կառավարման վերակառուցումը պարտիական, պետական ու տնտեսական օրգաններին առավելագույն չափով մոտեցրեց արտադրությանը, նրանց անմիջականորեն կապեց արտադրական կոլեկտիվների հետ և աշխատավորական լայն մասսաներին հնարավորություն ընձեռեց մասնակից դառնալու արտադրության կառավարմանը։ Այդ կապակցությամբ ավելի են աճում սոցիալիստական պետության տնտեսական-կազմակերպչական և կուլտուր-դաստիարակչական դերն ու գործունեության սահմանները։ Կոմունիզմի ծավալուն շինարարության պայմաններում սոցիալիստական պետության տնտեսական դերի բարձրացումն արտահայտվում է նրանով, որ նրա գործունեությունն ընթանում է հասարակության կյանքի հիմքը կազմող նյութական արտադրության ոլորտը խորապես ներթափանցելու, իսկ կուլտուր-դաստիարակչական դերը՝ կոմունիստական հասարակության մարդու դաստիարակման ուղիով։

Արդյունաբերության, գյուղատնտեսության և շինարարության պարտիական ու պետական ղեկավարության վերակառուցումը կարևոր դեր է խաղում ժողովրդական տնտեսության կառավարման դեմոկրատական ցենտրալիզմի զարգացման գործում։ Ժողովրդական տնտեսության ղեկավարման դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքն ապահովում է կենտրոնացված պետական ղեկավարությունը, հնարավոր է դարձնում այն զուգակցել աշխատավոր մասսաների ստեղծագործական ակտիվության զարգացմանը և նրանց մասնակից դարձնել տնտեսական կյանքի անմիջական ղեկավարմանը։ Այսպիսով տնտեսության ղեկավարման կատարելագործումը կոմունիզմի ծավալուն շինարարու-

թյան ժամանակաշրջանում համաժողովրդական սոցիալիստական պետության տնտեսական դերի զարգացման գլխավոր ուղղություններից մեկն է։

Պետության տնտեսական դերը ակնառու կերպով հանդես է գալիս ո՛չ միայն երկրի էկոնոմիկայի զարգացման ու ղեկավարման, մարդկանց մեջ դեպի հանրային աշխատանքը կոմունիստական վերաբերմունք դաստիարակելու, այլև հասարակության անդամների բարեկեցության բարձրացման, նրանց նյութական ու հոգևոր պահանջմունքներն ավելի լրիվ բավարարելու մեջ։

Կոմունիստական պարտիան և սոցիալիստական պետությունը իրենց գործունեության հիմքում դնում են «Ամեն ինչ հանուն մարդու, մարդու բարօրության համար» սկզբունքը։ Այն բխում է սոցիալիստական հասարակության բուն էությունից, իրագործվում է մեր երկրի էկոնոմիկայի անշեղ զարգացմամբ։ Սոցիալիստական էկոնոմիկայի վերելքը բարերար ազդեցություն է գործում ժողովրդի կենսամակարդակի բարձրացման, սովետական մարդկանց նյութական և հոգևոր պահանջմունքների բավարարման վրա։ Դրա ցայտուն արտահայտությունը ՍՍՌՄ ազգային եկամտի աճն է։

Սոցիալիստական պետությունը խնդիր է դնում մեր երկրում ապահովել աշխատավորների համար ամենաբարձր կենսամակարդակ կապիտալի աշխարհի ամեն մի երկրի համեմատությամբ։

Կոմունիզմի ծավալուն շինարարության ժամանակաշրջանում անհամեմատ բարձրանում է պետության տնտեսական դերը ապրանքադրամական հարաբերությունների օգտագործման բնագավառում։ «Կոմունիստական շինարարության մեջ,— ասված է ՍՄԿՊ Ծրագրում,— անհրաժեշտ է լիովին օգտագործել ապրանքա-դրամական հարաբերությունները ըստ այն նոր բովանդակության, որ հատուկ է նրանց սոցիալիզմի ժամանակաշրջանում»։

Պարտիան ու պետությունը ելնում են այն բանից, որ քանի դեռ ժողովրդական տնտեսության մեջ հասարակական աշխատանքի ուղղակի հաշվառման ու բաշխման համար չեն ստեղծվել տնտեսական ու կազմակերպական անհրաժեշտ նախադրյալներ, կոմունիզմի կառուցման շրջանում պետք է դեռևս մնան ապրանքա-փողային հարաբերությունները։ Ընդսմին ապրանքա-փողային հարաբերությունների արդյունավետ օգտագործման պրոցեսում մեծ դեր է խաղում սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման այնպիսի լծակների կիրառումը, ինչպիսիք են՝ տնտեսական հաշվարկը, փողը, գինը, ինքնարժեքը, շահույթը, առևտուրը, վարկը և ֆինանսները։

Ապրանքա-փողային հարաբերությունների առկայությունը պահանջում է հասնել արդյունքների արտադրության համար աշխատանքի հասարակական ծախսումների ճիշտ հաշվառման։ Նյութական, աշխատանքային ու ֆինանսական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման ուղիով ձեռք բերել առավելագույն խնայողություն, հետևողականորեն կիրառել ըստ աշխատանքի քանակի և որակի բաշխումը, փոխադարձ շահավետության սկզբունքով ամրապնդել և ընդլայնել արդյունաբերության ու գյուղատնտեսության տնտեսական կապերը, բարձրացնել ժողովրդի կենսամակարդակը։ Հետևաբար, ապրանքա-փողային հարաբերությունները կոմունիզմի շինարարության ամբողջ ժամանակաշրջանում լիովին կպահպանեն իրենց տնտեսական նշանակությունը։



***

Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում բանվոր դասակարգի դիկտատուրան վերաճել է համաժողովրդական պետության։ Այդ, սակայն, չի նվազեցնում պետության տնտեսական դերը. այն ավելի է մեծանում։ Պետական օրգանների առանձին ֆունկցիաների անցնելը հասարակական կազմակերպություններին ընդլայնում և ամրապնդում է սոցիալիստական հասարակարգի քաղաքական հիմքը, ապահովում է սոցիալիստական դեմոկրատիայի հետագա ծավալումն ու կատարելագործումը, հասարակության բոլոր անդամների ակտիվ մասնակցությունը պետության կառավարմանը։ Համաժողովրդական պետությունը մնում է կոմունիզմի կառուցման գործիքը և բնավ պետության մահացում չի նշանակում։

ՍՄԿՊ XXII համագումարում նոր Ծրագրի մասին տված իր զեկուցման մեջ Ն. Ս. Խրուշչովը նշեց. «ՍՍՌՄ-ում զարգացած կոմունիստական հասարակարգ կառուցելուց հետո և միջազգային ասպարեզում սոցիալիզմի հաղթանակի ամրապնդման պայմանի դեպքում միայն կվերանա պետության անհրաժեշտությունը, և նա կմահանա» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 243)։ Իսկ այդ խիստ երկարատև պրոցեսի արդյունք կլինի։ Եվ այդ ամբողջ ժամանակամիջոցում կպահպանվի ու ավելի կընդլայնվի համաժողովրդական պետության տնտեսական դերը՝ կոմունիստական հասարակարգի կառուցման այդ հզոր գործոնը։

# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՀԱՄԱԿԵՆՏՐՈՆԱՑՄԱՆ ԵՎ ՇՐՋԱՆԱՅԻՆ ՀԱՏԱԿԱԳԾՈՒՄՆԵՐԻ ՄԻ ՔԱՆԻ ՀԱՐՑԵՐ

Ա. ԱՅՐՈՒՄՅԱՆ

*Մեր երկրի գյուղատնտեսության առջև դրված են երկու հիմնական, միմյանց հետ սերտորեն կապված խնդիրներ՝ ստեղծել գյուղատնտեսական մթերքների առատություն և վերացնել քաղաքի ու գյուղի միջև սոցիալ-տնտեսական և կուլտուր-կենցաղային տարբերությունները։ Այդ խնդիրների լուծման կարևոր պայմաններից մեկը գյուղատնտեսական արտադրության համակենտրոնացումն է։*

*Սոցիալ-տնտեսական վերափոխումների շնորհիվ Հայաստանում ստեղծվել են խոշոր գյուղատնտեսական ձեռնարկություններ։ Համատարած կոլեկտիվացման ժամանակաշրջանում կոլտնտեսությունները հիմնականում կազմակերպվում էին եղած բնակավայրերի բազայի վրա։ 1940 թվականին դրանց թիվը հասնում էր 1035-ի։ Հետագայում, գյուղատնտեսության զարգացման պրոցեսում խոշորացվեցին կոլտնտեսությունները, իսկ մի մասը վերածվեց սովխոզների։ Սովխոզների կազմակերպման համար բազա են եղել և այժմ էլ հանդիսանում են նաև նոր ոռոգվող հողերը։ 1963 թվականի սկզբին ռեսպուբլիկայում կային՝ 630 կոլտնտեսություն և 124 սովխոզ։ Միջին հաշվով մեկ տնտեսությունն ունի 1700 հեկտար գյուղատնտեսական հողատեսքեր և 1100 բնակիչ։*

*Սակայն կոլտնտեսություններն ու սովխոզներն իրենց արտադրական միջոցներով ու կարողություններով չափազանց տարբեր են։ Դրանք տարբեր են մինչև անգամ գյուղատնտեսական շրջանի ներսում, միևնույն ուղղությամբ մասնագիտացած տնտեսությունների միջև։ Ինչպես ցույց է տալիս ուսումնասիրությունը, ռեսպուբլիկայի գյուղատնտեսական ձեռնարկությունների, անասնաբուծական ֆերմաների և արտադրական բրիգադաների չափերի միջև ստեղծված մեծ տարբերությունները ոչ միշտ են հիմնավորված։ Լավ տնտեսական ցուցանիշներ ունեն համեմատաբար խոշոր գյուղատնտեսական ձեռնարկությունները ու նրանց արտադրական ստորաբաժանումները։*

*Ձեռնարկությունների խոշոր չափերը հնարավորություն են տալիս իրագործել մասնագիտացում և համակենտրոնացնել արտադրությունը, արմատավորել ժամանակակից տեխնիկան ու առաջավոր տեխնոլոգիան և ապահովել արտադրության բարձր շահութաբերությունը։*



*Կոլտնտեսությունների խմբավորումը ռեսպուբլիկայի գոտիների սահմաններում ըստ համախառն արտադրանքի արժեքի, գյուղատնտեսական հողատեսքերի տարածության, անասունների և թռչունների գլխաքանակի և այլ հատկանիշների բավականաչափ ակնառու ցույց են տալիս խոշոր արտադրության առավելությունները։ Այսպես, օրինակ՝ Զանգեզուրում մինչև 1000 հեկտար տարածությամբ գյուղատնտեսական հողատեսքեր ունեցող կոլտնտեսությունների շահութաբերությունը հասնում է 0,1, իսկ 3500 հեկտարից ավելի հողատարածություն ունեցող տնտեսություններում՝ մինչև 24 տոկոսի, Սևանի ավազանի կոլտնտեսություններում համապատասխանաբար մինուս 3-ից մինչև պլյուս 35 տոկոսի։ Տարբեր են հիմնական տնտեսական ցուցանիշները խոշոր և մանր տնտեսություններում գյուղատնտեսական հողատեսքերի 100 հեկտարի հաշվով. այսպես՝ խոշոր տնտեսություններում արտադրվում է 1,5 անգամ ավելի միս, մեկ ցենտներ կաթի ինքնարժեքը 3 ռուբլով ցածր է, մսինը՝ ավելի քան 20 ռուբլով, իսկ տավարաբուծության շահութաբերությունը մանր ֆերմաներում եղած մինուս 5—16 տոկոսից բարձրանում է մինչև պլյուս 18 տոկոսի՝ խոշոր ֆերմաներում։*

*Անասնաբուծության համակենտրոնացման առավելություններն ավելի ակնբախ են խոզաբուծության և թռչնաբուծության մեջ։ Այդ պատճառով անհրաժեշտ է լուրջ ուշադրություն հատկացնել արտադրության համակենտրոնացման, գյուղատնտեսական ձեռնարկություններն առավել չափերի հասցնելու հարցերին։ Պետք է հաշվի առնել, որ գյուղատնտեսական ձեռնարկությունների անբավարար շահութաբերությունը չի կարող ապահովել հասարակական արտադրության զարգացման այն տեմպերը, որոնք անհրաժեշտ են քսանամյա ժամանակաշրջանում նախատեսված առաջադրանքների կատարման համար։*

*Գյուղատնտեսական արտադրությունը հնարավոր կլինի համակենտրոնացնել ներտնտեսային խոր մասնագիտացմամբ, երկրագործության ու անասնաբուծության առանձին ճյուղեր մի տնտեսությունից մի այլ տնտեսություն տեղափոխելու միջոցով, ուր դրանց զարգացման համար կան ավելի բարենպաստ բնական և տնտեսական պայմաններ։ Սակայն արտադրության համակենտրոնացման ամենամասսայական մեթոդը ռեսպուբլիկայի պայմաններում միշտ չի ապահովում ռացիոնալ չափերի գյուղատնտեսական արտադրության կազմակերպումը և քաղաքաշինության պահանջների բավարարումը։*

*Համեմատաբար ոչ խոշոր կոլտնտեսությունների գյուղատնտեսական արտադրությունը ո՛չ միայն հեռանկարում, այլև արդեն այժմ էլ չի համապատասխանում արտադրողական ուժերի զարգացման մակարդակին։ Այստեղ ևս խոշոր սոցիալիստական գյուղատնտեսական արտադրության առավելությունները լրիվ չեն օգտագործվում։*

*Երկրորդ խնդրի՝ քաղաքի և գյուղի միջև եղած կուլտուր-կենցաղային տարբերությունների վերացման համար հասկանալի է, որ բնակավայրերը պետք է խոշոր լինեն, որպեսզի նրանցում տնտեսական նպատակահարմարությամբ իրագործվի բնակարանային և կուլտուր-կենցաղային շինարարություն, էլեկտրիֆիկացիա, ջրամատակարարում, կանալիզացիա, գազիֆիկացիա, կապի միջոցների շինարարություն և այլ աշխատանքներ։ Սխալ կլիներ կարծել, որ գյուղերը քաղաքատիպ բարեկարգ բնակավայրեր դարձնելու վերաբերյալ պարտիայի առաջ դրած խնդիրը կարող է հաջողությամբ լուծվել բնակավայրերի՝ գոյություն ունեցող չափերը պահպանելու դեպքում։ Հետագայում, քա-*

*ղաքատիպ, ժամանակակից կոմունալ և կուլտուր-կենցաղային սպասարկման հարմարանքների օգտագործմամբ բնակավայրերի թիվը զգալիորեն ավելի պակաս կլինի, քան ներկայումս գոյություն ունեցող կոլտնտեսությունների ու սովխոզների թիվը։ Ըստ նախագծային կազմակերպությունների տվյալների, կուլտուր-կենցաղային և այլ ձեռնարկությունների ամենալրիվ բեռնվածություն կարող են ապահովել 4 հազար և ավելի բնակիչ ունեցող բնակավայրերը։*

*Պարտիայի ծրագրում նշված է. «Կոլտնտեսային գյուղերն ու շեները հետզհետե կվերափոխվեն ու կդառնան քաղաքատիպ խոշորացված բնակավայրեր՝ բարեկարգ բնակելի տներով, կոմունալ սպասարկումով, կենցաղային ձեռնարկություններով, կուլտուրական ու բժշկական հիմնարկներով»։ Միանգամայն ակնհայտ է, որ այդ պրոցեսը պետք է կատարվի պլանաչափորեն, շրջանային և ներտնտեսային հատակագծումների բազայի վրա գյուղատնտեսական արտադրության պահանջների լրիվ հաշվառմամբ։*

*Չնայած պարտիայի և կառավարության մի շարք կոնկրետ որոշումներին, մինչև այժմ ռեսպուբլիկայում գյուղական բնակավայրերի հատակագծման հարցերը որպես կանոն դիտվում և լուծվում են միակողմանի, առավելապես որպես շինարարական պրոբլեմ, առանց հաշվի առնելու ժողովրդական տնտեսության ճյուղերի զարգացման գլխավոր հեռանկարը և գյուղերը քաղաքատիպ բնակավայրերի վերափոխելու պայմանները։ Ավելին, այդ հարցերը լուծվում են այս կամ այն կոլտնտեսության կամ սովխոզի ղեկավարներից հայտեր ստանալուն պես, մեկուսացած, առանձին բնակավայրերի սահմաններում, որոնք հաճախ իրենց չափերով հարմար չեն գյուղատնտեսական արտադրությունը ռացիոնալ վարելու և գյուղական բնակչությանը քաղաքատիպ կոմունալ-կենցաղային ձեռնարկություններով ապահովելու համար։ Մեծ մասամբ ռեսպուբլիկայում, շրջանային և ներտնտեսային հատակագծումների բացակայության պայմաններում, թույլ են տրվում լուրջ սխալներ բնակելի, կուլտուր-կենցաղային և արտադրական շենքերի տեղադրման գործում։*

*Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ու սովխոզներում այժմ ծավալվել է թանկ նստող արտադրական, կուլտուր-կենցաղային օբյեկտների ու բնակելի տների շինարարությունը. դրանք նախատեսված են շատ տասնամյակների համար, առանց քաղաքաշինության պահանջների հաշվառման։ Գյուղական շինարարության կազմակերպման այդպիսի պրակտիկան պատճառ է դառնում պետության, կոլտնտեսության և գյուղական բնակչության կողմից հսկայական չափերով իրագործվող կապիտալ ներդրումների փոշիացման ու ոչ ռացիոնալ օգտագործման։ Այն չի նպաստում քաղաքի և գյուղի միջև հիմնական տարբերությունների վերացման պրոցեսի արագացմանը։*

*Պարտիայի առաջադրանքի կատարման և նշված թերությունները վերացնելու նպատակով շատ ռեսպուբլիկաներում լայնորեն ծավալվում են աշխատանքներ շրջանային հատակագծումների և նրանց իրականացման ասպարեզում։ Մինչդեռ Հայաստանում այդ հարցերը դեռևս չեն գտնվում ռեսպուբլիկական համապատասխան օրգանների և նախագծային կազմակերպությունների ուշադրության կենտրոնում։*

***

*Գյուղատնտեսության առջև դրված խնդիրների լուծման համար կարևոր նշանակություն ունի սովխոզները, կոլտնտեսություններն ու նրանց արտադրա-*



*կան ստորաբաժանումները ռացիոնալ չափերի հասցնելը՝ հաշվի առնելով գյուղատնտեսական արտադրության բոլոր պայմանները և քաղաքաշինության պահանջները ըստ յուրաքանչյուր շրջանի կոնկրետ պայմանների։*

Գյուղատնտեսական ձեռնարկությունների առավել չափեր պետք է համարել այնպիսիք, որոնք ապահովում են ամենամեծ քանակի արտադրանք 100 հեկտար հողատարածությունից՝ միջոցների և աշխատանքի նվազագույն ծախսումներով *(արտադրանքի մեկ միավորին)*, արտադրանքի ամենամեծ ելք 100 ռուբլի կապիտալ ներդրումների դիմաց և ապահովում են գյուղերը քաղաքատիպ, ժամանակակից կոմունալ և կուլտուր-կենցաղային սպասարկմամբ բարեկարգ բնակավայրեր դարձնելու պահանջը։ *Գյուղատնտեսական ձեռնարկությունների առավել չափերը և բնակչության քանակը որոշելիս պետք է նկատի ունենալ գյուղական բնակավայրերի տերիտորիայում ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի և սպասարկման ոլորտում զբաղեցված բնակչության հեռանկարային զարգացումը։*

*Գյուղատնտեսության էկոնոմիկայի և կազմակերպման ինստիտուտը ընթացիկ տարում հիմնականում կավարտի ձեռնարկությունների օպտիմալ չափերի որոշման աշխատանքները՝ համապատասխան ռեսպուբլիկայի գյուղատնտեսության արտադրության տարբեր պայմանների։ Այդ նյութերը կարող են ծառայել որպես հիմք ո՛չ միայն գյուղատնտեսական արտադրության համակենտրոնացման հարցերի գործնական լուծման և ձեռնարկությունների աստիճանաբար առավել չափերի խոշորացման, այլև ռեսպուբլիկայում շրջանային և ներտնտեսային հատակագծումների սխեմաների մշակման աշխատանքների լայն ծավալման համար։*

*«Հայպետնախագիծ» ինստիտուտը և գյուղատնտեսության էկոնոմիկայի և կազմակերպման ինստիտուտը 1962 թվականին Ախուրյանի շրջանի համար, փորձնականորեն կազմել են շրջանային հատակագծման և գյուղատնտեսական արտադրության ռացիոնալ կազմակերպման սխեման։ Մշակված սխեման ընթացիկ տարվա հունիսին քննարկվել է Հայաստանի ճարտարապետների միության պլենումում և արժանացել բարձր գնահատականի։ Գյուղատնտեսության զարգացման և քաղաքաշինության հարցերի մշակման այդպիսի մեթոդը թույլ տվեց շրջանի կոնկրետ պայմաններին համապատասխան ավելի հիմնավորված որոշելու գյուղատնտեսական ձեռնարկությունների օպտիմալ չափերը, ձեռնարկությունների խոշորացման ամենանպատակահարմար սխեման՝ նշելով հողօգտագործման սահմաններն ու ապագա քաղաքատիպ բնակավայրերի կենտրոնները։*

*Գյուղատնտեսության էկոնոմիկայի և կազմակերպման ինստիտուտը ու «Հայպետնախագիծ» ինստիտուտը, նպատակահարմար են գտել Ախուրյանի շրջանի 24 կոլտնտեսությունների և 3 սովխոզների բազայի վրա կազմակերպել 8 օպտիմալ չափերի գյուղատնտեսական ձեռնարկություններ։ Նախատեսվում է այդ տնտեսությունների կենտրոններում բնակեցնել գյուղական բնակչության զգալի մասին՝ տեղաբաշխելով այնտեղ անհրաժեշտ կուլտուր-կենցաղային օբյեկտներ։ Արտադրությունը լավագույն ձևով կազմակերպելու, բնակելի ու արտադրական շենքերն օգտագործելու տեսակետից նպատակահարմար է գտնըված, բացի նշված 8-ից պահպանել ևս 4—5 բնակավայր, որպես բնակարանային արտադրական տեղամասեր՝ բնակչության սկզբնական կուլտուր-կենցաղային սպասարկմամբ։ Վերջապես, աշխատանքի բարձր արտադրո-*

ղականության հասնելու և արտադրության ծախքերն իջեցնելու համար հարկ կլինի առավելապես մանր բնակավայրերի բազայի վրա կազմակերպել նաև արտադրական տեղամասեր առանց բնակչության մշտական բնակեցման։

Այսպիսով, Ախուրյանի շրջանի համար մշակված հատակագծի սխեման արտացոլում է հեռանկարում առավել չափերի գյուղատնտեսական ձեռնարկություններ կազմակերպելու հնարավորությունները՝ բնակչության այնպիսի քանակությամբ, որն ապահովի քաղաքատիպ կուլտուր-կենցաղային օբյեկտների լրիվ բեռնվածությունը բնակելի, արտադրական և կուլտուր-կենցաղային շենքերի զգալի մասի պահպանմամբ և օգտագործմամբ։

Օպտիմալ չափեր ունեցող գյուղատնտեսական ձեռնարկությունների կազմակերպումն Ախուրյանի շրջանում, մեկ տնտեսության գյուղատնտեսական հողատեսքերի տարածությունը կհասցնի միջին հաշվով 4—6 հազար հեկտարի, այդ թվում վարելահող՝ 3—3,5 հազար, ներկայումս եղած (համապատասխանաբար) 1,6 և 1,0 հեկտարի դիմաց։ Շրջանի գյուղատնտեսության զարգացման հեռանկարները կազմված են այն հաշվով, որ բավարարվեն շրջանի և Լենինական քաղաքի բնակչության՝ բանջարեղենի, կաթի, ձվի պահանջմունքները։ Հաշվի առնելով բնական և տնտեսական պայմանները, նախատեսվում է նաև հացահատիկի, շաքարի ճակնդեղի և մսի արտադրության հետագա ավելացում։

Գյուղատնտեսության առաջատար ճյուղ կդառնա կաթնային տավարաբուծությունը։ Ոչխարաբուծությունը հիմնականում պետք է կենտրոնացվի Ջաջուռի և Մուսայելյանի խոշոր տնտեսություններում, որոնք ունեն ցածր բուսածածք ունեցող բնական արոտավայրերի զգալի տարածություններ։ Քաղաքի մոտ գտնվող տնտեսություններում կաթնային տավարաբուծության համակենտրոնացման հետ մեկտեղ նախատեսվում է կազմակերպել անհրաժեշտ քանակությամբ ջերմատներ ու ջերմոցներ, որոնք տարվա մեծ մասը բնակչությանը կմատակարարեն թարմ բանջարեղեն։ Զգալի չափով կզարգանան նաև թռչնաբուծությունն ու պտղաբուծությունը։

Քաղաքամերձ տնտեսությունների պայմաններին համապատասխան, գյուղատնտեսական արտադրության այդպիսի մասնագիտացումը կապահովի հողի, աշխատանքային ռեսուրսների ու տեխնիկայի ռացիոնալ օգտագործումը, աշխատանքի բարձր արտադրողականությունը, արտադրանքի ինքնարժեքի իջեցումը։ Այս ամենը հնարավորություն կտան կազմակերպելու բարձր շահութավետ տնտեսություններ։

Մշակված միջոցառումների իրականացմամբ արտադրության զարգացման և աշխատանքային օրվա տևողության կրճատման պայմաններում փոքրինչ կպակասի անմիջականորեն գյուղատնտեսական արտադրության մեջ զբաղված աշխատողների թիվը, միաժամանակ կավելանա սպասարկման ոլորտում և ժողովրդական տնտեսության ուրիշ բնագավառներում աշխատողների թիվը։ Բնակչության ստրուկտուրայում տեղի ունեցող այդպիսի փոփոխության շնորհիվ գյուղատնտեսության մեջ աշխատանքի արտադրողականությունը կբարձրանա 5—6 անգամ։

Հաշվարկումները ցույց են տալիս, որ մեկ գյուղատնտեսական ձեռնարկության սահմաններում տեղաբաշխված բնակչության միջին թիվը հեռանկարում կհասնի միջին հաշվով 4 հազար մարդու, 1962 թվականի 1,1 հազարի դիմաց։



Գյուղատնտեսական ձեռնարկությունների կազմակերպման և գյուղը քաղաքատիպ բարեկարգ ավանի վերածելու մշակված սխեմայի իրագործման ժամկետները տարբեր կլինեն։ Դրանք զգալի չափով կախված կլինեն կապիտալ ներդրումների չափերից և, առաջին հերթին՝ ջրաշինարարական աշխատանքներից, կոմպլեքսային մեքենայացման մակարդակի առկայությունից, բնակելի տների, կուլտուր-կենցաղային ձեռնարկությունների և արտադրական օբյեկտների կառուցումների ծավալից։

Գյուղատնտեսական մթերքների արտադրության զգալի աճը կարող է ապահովվել առաջիկա 10 տարվա ընթացքում։ Քանի որ գյուղատնտեսական խոշոր (օպտիմալ չափերի) ձեռնարկությունների կազմակերպումը կապված է կոլտնտեսությունների խոշորացման հետ, որը պետք է ընթանա կամավորության սկզբունքով, հետևաբար դրանց ժամկետները չեն կարող որոշակի լինել։ Գյուղերը քաղաքատիպ խոշոր ավանների վերածելը մեծ չափով կախված կլինի գյուղատնտեսական ձեռնարկությունների խոշորացման ժամկետից, ինչպես նաև պետության, կոլտնտեսությունների ու ազգաբնակչության կողմից գյուղատնտեսության մեջ, կուլտուր-կենցաղային կառուցումների և գյուղի բարեկարգման համար կատարվող կապիտալ ներդրումների չափերից։ Հանրային տնտեսության անընդմեջ զարգացումը և կապիտալ ներդրումների աճը հիմք են տալիս եզրակացնելու, որ 20 տարում գյուղատնտեսության մեջ և գյուղական շրջանների բարեկարգման գործում կներդրվի մոտ 80 միլիոն ռուբլի։ Կապիտալ ներդրումների այդպիսի ծավալը հնարավորություն կտա մեծ չափով ավելացնելու գյուղատնտեսական մթերքների արտադրությունը և գյուղերը դարձնելու բարեկարգ քաղաքատիպ բնակավայրեր, ժամանակակից կոմունալ, կուլտուր-կենցաղային հարմարանքներ ունեցող ավաններ։

Պետության ու կոլտնտեսությունների կողմից գյուղատնտեսության արդյունավետությունն ապահովելը և գյուղերը քաղաքատիպ խոշոր բնակավայր դարձնելը տնտեսական և քաղաքական մեծ կարևորություն ունեցող խնդիր է։

Սովետական գյուղի առջև դրված երկու մեծ խնդիրների կենսագործման համար անհրաժեշտ է հնարավորին չափ կարճ ժամկետում 20—30 տարվա համար մշակել շրջանային և ներտնտեսային հատակագծումների սխեմաներ, գյուղատնտեսական և ժողովրդական տնտեսության այլ ճյուղերի զարգացման գլխավոր հեռանկարի հաշվառմամբ։ Ինչպես նշված է ՍՄԿԿ ԿԿ դեկտեմբերյան (1959 թ.) պլենումի որոշման մեջ՝ «Անհրաժեշտ է, որ նախագծային կազմակերպություններն այժմ ձեռնամուխ լինեն շրջանային և ներտնտեսային հատակագծման սխեմաների մշակմանը։ Այդ սխեմաներում պետք է նախատեսված լինեն գյուղատնտեսական արտադրության զարգացման և մասնագիտացման հեռանկարները, արտադրական և հասարակական շենքերի, բնակելի մասսիվների ռացիոնալ տեղաբաշխումը, էլեկտրիֆիկացումը, ջրամատակարարումը, ճանապարհաշինությունը, կապը, կոլտնտեսությունների և սովխոզների բնակավայրերի հետագա զարգացումը»։

Գյուղի ավելի արագ վերակառուցման նպատակով, մեր կարծիքով, շրջանային և միջշրջանային հատակագծումների աշխատանքները կարելի է կատարել պետության հաշվին։ Դրա համար անհրաժեշտ է, մոտակա տարիներին ռեսպուբլիկայի բոլոր շրջաններում որոշել քաղաքատիպ խոշոր բնակավայրերի տեղերը, մշակել նրանց հատակագիծը, սահմանել գյուղատնտեսության արտադրության մոտավոր ծավալները և ժողովրդական տնտեսության այլ

ճյուղերի զարգացման հեռանկարները, որպեսզի դրան համապատասխան տարվի կապիտալ շինարարությունն այդ տեղամասերում։ Այդ բնավ չի նշանակում, որ հարկավոր է լրիվին ընդհատել արտադրական և կուլտուր-կենցաղային օբյեկտների շինարարությունն այն բնակավայրերում, որոնք չունեն հեռանկարային նշանակություն։ Արտադրության պահանջների հաշվառմամբ այդպիսի բնակավայրում անհրաժեշտ է կատարել միայն ժամանակավոր, էժան, հավաքովի կառուցումների շինարարություն։

Առանձնակի ուշադրություն պետք է հատկացնել ռեսպուբլիկայի պայմաններին համապատասխան բնակելի, կուլտուր-կենցաղային և արտադրական շենքերի տիպային նախագծերին։ Այդ գործում դեռևս կան շատ չլուծված հարցեր։

Հատակագծերի ճիշտ իրագործման վերահսկողությունն ապահովելու և գյուղական շինարարության ուղղությամբ տեղերին որակյալ օգնություն ցույց տալու նպատակով անհրաժեշտ է բոլոր շրջանային գործադիր կոմիտեների կամ արտադրական կոլտնտեսա-սովխոզային վարչությունների կից սահմանել շրջանային ճարտարապետի հաստիքային միավոր։

Ամբողջ ռեսպուբլիկայի մասշտաբով շրջանային և ներտնտեսային հատակագծումները հնարավորին չափ կարճ ժամկետում մշակելու և դրանք կենսագործելու համար անպայման կզգացվի մեծ թվով ինժեներների, ճարտարապետների և միջին որակի մասնագետների կարիք. այն բավարարելու համար մեր կարծիքով անհրաժեշտ է 1963—1964 ուսումնական տարում պոլիտեխնիկական ինստիտուտի շինարարական ֆակուլտետի վերջին կուրսի ուսանողների մի մասը մասնագիտացնել որպես շրջանային և ներտնտեսային հատակագծումների բնագավառի ճարտարապետներ։

Առաջադրված խնդիրների լուծման համար հարկ է, որ այդ ուղղությամբ աշխատեն ո՛չ միայն գյուղատնտեսական օրգանները, այլև գյուղի վերակառուցման հետ առնչություն ունեցող բոլոր օրգանների ներկայացուցիչները, ամենից առաջ՝ գյուղատնտեսական օրգանները, ժողտնտխորհը, շինարարության մինիստրության, կուլտուրայի, առողջապահության, կոմունալ տնտեսության, կապի մինիստրությունների և էլեկտրիֆիկացման հարցերը տնօրինող կազմակերպությունների աշխատողները։

Ամբողջ աշխատանքի ռացիոնալ կազմակերպումը մեծ չափով կավելացնի գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, կնպաստի քաղաքի ու գյուղի միջև եղած կուլտուր-կենցաղային տարբերությունների վերացմանը, որն, ինչպես մասնանշված է պարտիայի ծրագրում, կհանդիսանա կոմունիզմի կառուցման մեծագույն արդյունքներից մեկը։

# ՀԱԿԱԿՈՄՈՒՆԻԶՄԸ ԳԱՂՈՒԹԱՐԱՐՆԵՐԻ ԶԵՆՔՆ Է

Ն. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

Պատմական գիտությունների թեկնածու

1. Գաղութային սիստեմի փլուզումը.
2. Գաղութարարները դիմում են հակակոմունիզմի.
3. «Բաժանիր, որ տիրես»-ը XX դարում.
4. Կոմունիստների մեկուսացումը չի հաջողվում.
5. Մարքսիզմ-լենինիզմը հմայում է միլիոններին.
6. Գաղութարարների հակակոմունիզմը դատապարտված է.

## I.

Գաղութային սիստեմի փլուզումը հիմնականում ավարտվել է. գաղութային երկրների ճնշող մեծամասնությունն արդեն ձեռք է բերել քաղաքական անկախություն։ Գաղութային լուծը թոթափած երկրների համար ավարտվել է ազգային-ազատագրական շարժումների առաջին էտապը, և սկսվել նրանց զարգացման երկրորդ էտապը, որի կարևոր խնդիրներն են՝ մինչև վերջ հասցնել պայքարն իմպերիալիզմի դեմ և ամրապնդել ձեռք բերված քաղաքական անկախությունը, իրագործել սոցիալ-տնտեսական բարեփոխումներ, հասնել տնտեսական ինքնուրույնության, հաստատել դեմոկրատական ռեժիմ և բարելավել աշխատավորական մասսաների վիճակը։

Ինչպես առաջին էտապում, այնպես էլ այժմ, ազգային-ազատագրական ուժերը հարկադրված են համառ պայքար մղել իմպերիալիստական պետությունների և նրանց գործակալներ հանդիսացող ներքին ռեակցիոն տարրերի դեմ։ Գաղութատեր երկրներից շատերն ազգային-ազատագրական ռևոլյուցիաների հարվածների տակ հարկադրված եղան նահանջել և հաշտվել գաղութների քաղաքական անկախության փաստի հետ։ Սակայն նրանք չեն հրաժարվել այդ երկրներն իրենց ազդեցության ոլորտում պահելու և նրանց բնական հարստությունները թալանելու մտքից։ Միայն թե փոխվել են պայքարի մեթոդներն ու միջոցները։ Իրենց գավթողական պլաններն իրականացնելու համար իմպերիալիստներն այժմ լայնորեն կիրառում են էքսպանսիայի ավե-

լի քողարկված ձևեր՝ տնտեսական ճնշում, տեռոր, քայքայիչ գործունեություն և այլն։ Նրանք փորձում են անկախություն ձեռք բերած նոր պետություններին տնտեսական կախման մեջ պահել, նրանց ներգրավել ռազմական խմբավորումներում կամ կնքել երկկողմանի, «փոխադարձ անվտանգությունն ապահովող» ռազմական պայմանագրեր, որը նշանակում է այդ երկրները դնել իմպերիալիստական հզոր պետությունների հսկողության ներքո, ի չիք դարձնել նրանց ինքնուրույնությունը։

Իրենց գաղութային դիրքերն պահպանելու նպատակով իմպերիալիստական պետությունները երբեմն դիմում են ագրեսիայի։ Սակայն զինված միջամտության հարցում նրանք այժմ ավելի զգույշ են, որովհետև մեր օրերում, երբ գոյություն ունի համաշխարհային սոցիալիստական սիստեմ, երբ անհամեմատ աճել ու ամրապնդվել են ազգային-ազատագրական ուժերը, գաղութային պատերազմները հղի են մեծ վտանգներով հենց իրենց՝ իմպերիալիստական պետությունների համար։ Այդ մասին են վկայում 1956 թ. Եգիպտոսի դեմ սանձազերծած ագրեսիայի և 1961 թ. Կուբայի դեմ կատարված ռազմական ավանտյուրայի դասերը։ Պատմության հենց այդ դասերը և սոցիալիստական սիստեմի ուժերն ու ազգային-ազատագրական շարժման թափը հաշվի առնելով՝ իմպերիալիստները հարկադրված եղան 1962 թ. վիջել և վերջ տալ արյունոտ պատերազմին Լաոսում, չհանդգնեցին բացահայտ ռազմական ինտերվենցիա սկսել ընդդեմ Եմենի հաղթական ռևոլյուցիայի, պատերազմ սանձազերծել սոցիալիստական Կուբայի դեմ։ Այդ իսկ պատճառով իմպերիալիստական պետությունները նախապատվությունն այժմ տալիս են պայքարի այլ, ոչ ռազմական մեթոդներին, այդ թվում նաև գաղափարական էքսպանսիային և, հակակոմունիզմին, որը ժամանակակից գաղութատիրության գաղափարախոսության գլխավոր զենքն է։

II

Հակակոմունիզմի գաղափարախոսության օգտագործումը համաշխարհային պրակտիկայում նոր չէ։ Սակայն այն հատկապես ուժեղացավ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, որը կապված է սոցիալիզմի համաշխարհային սիստեմի առաջացման, ազգային-ազատագրական շարժումների հաղթանակների, իմպերիալիզմի սիստեմի թուլացման, կոմունիզմի գաղափարների տարածման և կոմունիստական պարտիաների հեղինակության աճման հետ։

Հակակոմունիզմի զենքի օգտագործումը, պայքարը կոմունիստական ուժերի և կոմունիստական գաղափարների դեմ ինչ-որ սխոլաստիկ, «զուտ» գաղափարական վեճ չէ։ Դա մի պայքար է, որը հետապնդում է կոնկրետ նպատակներ և ունի իր տնտեսական դրդապատճառները։ Բանը նրանում է, որ իմպերիալիզմի համաշխարհային սիստեմի համար այժմ ստեղծվել է ծանր կացություն։ Այն թևակոխել է իր ընդհանուր ճգնաժամի երրորդ էտապը, որն ավելի է սրում հակասություններն իմպերիալիստական տերությունների միջև։ Մի շարք, նախկինում ագրարային պետություններ ոտք են դրել արդյունաբերական զարգացման ուղին, որը նշանակում է պայքարի հետագա սրում հումքի աղբյուրների և վաճառահանման շուկաների համար։

Ասիայի և Աֆրիկայի երկրների ճնշող մասը ձեռք է բերել քաղաքական



անկախություն և այժմ օրակարգում դրված է նրանց տնտեսական անկախության հարցը։ Իսկ տնտեսական անկախություն նվաճելու համար նրանք պետք է ձերբազատվեն Արևմուտքի գաղութային իմպերիալիստական պետություններից։ Բայց վերջիններս չեն ցանկանում կորցնել իրենց տնտեսական դիրքերը և այն հսկայական շահույթները, որ նրանք ստանում են թույլ զարգացած երկրների շահագործումից։ Ուստի իմպերիալիստներն Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի երկրները կախման մեջ պահելը համարում են կենսական անհրաժեշտություն։ Ահա, այդ խնդրի իրականացման համար նրանք, ի թիվս այլ միջոցների, օգտագործում են նաև հակակոմունիզմի զենքը։ «Իմպերիալիստների և նրանց սպասարկուների համար,— նշում է Նիգերիայի երիտասարդական կոնգրեսի նախագահ Մոկվուգո Օկոյեն,— սովորական բան է դարձել մետրոպոլիաների բանվորների պայքարը շահագործման և գաղութների ժողովուրդների պայքարն օտարերկրյա տիրապետության դեմ նշավակելը որպես կոմունիստների մեքենայություններ և նույնիսկ կոմունիզմը հայտարարել Աֆրիկայի թշնամի։ Եվ այնուամենայնիվ հենց իմպերիալիզմն է, որ մեր կոնտինենտը շրջապատում է ռազմական բազաների շղթայով, գցում է մեր հիմնական ապրանքների գները, որպեսզի կրճատի արդյունաբերության զարգացման համար կապիտալի կուտակման հնարավորությունները։ Հենց իմպերիալիզմն է, որ բորբոքում է քաղաքացիական երկպառակություն, խրախուսում է ռեակցիային որոշ երկրներում և սպիտակ տեռոր է սանձազերծում մյուս երկրներում (օրինակ, Քենիայում, Կոնգոյում, Անգոլայում) և այդ բոլորն արվում է հօգուտ նավթային ընկերությունների, սուրճի և ուրիշ պլանտացիաների տերերի»։

Հակակոմունիզմի գաղափարախոսությունն արտահայտում է պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի, ֆինանսական օլիգարխիայի շահերը։ Նրա դրոշի ներքո միավորվել են պետական ու քաղաքական գործիչները, գաղութարարները, ռեակցիոն հոգևորականներն ու կալվածատերերը և նրանց շահերը պաշտպանող գաղափարախոսները։

Արևմուտքում՝ կապիտալիստական երկրներում, հակակոմունիզմի զենքն օգտագործվում է պատմության կողմից մահվան դատապարտված կապիտալիստական հասարակարգի պահպանման համար։ Իսկ Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի երկրներում այն իմպերիալիստների ձեռքին գործիք է գաղութային սիստեմը պահպանելու համար։

III

Հակակոմունիզմն ուղղված է կոմունիստական պարտիաների դեմ։ Գաղութարարները փորձում են անվստահություն և կասկածանք ներշնչել կոմունիստների հանդեպ, քայքայել ու պայթեցնել հակաիմպերիալիստական միասնական ճակատն այն երկրներում, որտեղ այն գոյություն ունի և թույլ չտալ այդպիսի ճակատի ստեղծումն այնտեղ, որտեղ այդպիսին դեռևս չկա։ Հակաիմպերիալիստական ճակատում սովորաբար միավորվում են բանվոր դասակարգը, գյուղացիությունը, դեմոկրատական ինտելիգենցիան և ազգային բուրժուազիայի այն մասը, որը կապված չէ օտարերկրյա իմպերիալիզմի հետ։

Սոցիալական տարբեր ուժերից բաղկացած այդ խմբավորման մեջ ամե-

նավճռական ուժը բանվոր դասակարգն է, որն իր ավանգարդի՝ մարքս-լենինյան պարտիայի ղեկավարությամբ պայքարում է ազգային-ազատագրական ռևոլյուցիայի խնդիրների ամենահետևողական իրագործման համար, դեմ է գաղութարարների հետ որևէ կոմպրոմիսի և մերկացնում է նրանց մեքենայությունները։ Այդ տեսակետից էլ հենց կոմունիստական ուժերն ամենամեծ վտանգն են ներկայացնում գաղութարարների համար։ Եվ դա չեն թաքցնում իրենք՝ գաղութարարներն ու նրանց շահերն արտահայտող գաղափարախոսները։ Այսպես, օրինակ, ամերիկյան պատմաբան Ջոն Քեմբելի կարծիքով «ուժերի նոր տեղաբաշխումով կոմունիստական վտանգը դառնում է ավելի լուրջ»։ Նա ցավով նշում է, որ մի շարք երկրներում կոմունիստները դարձել են մյուս պարտիաների դաշնակիցը, ընթանում են ազգային պայքարի առաջին գծում, ազդում են հասարակական կյանքի վրա և այլն։

Ելնելով ազգային, հակաիմպերիալիստական ճակատը քայքայելու խնդիրներից, իմպերիալիստները և նրանց գործակալները կոմունիստների դեմ կիրառում են պայքարի երկու գլխավոր մեթոդ։ Առաջինը, նրանք նոր անկախություն ձեռք բերած երկրների կառավարություններին կոչ են անում արգելել կոմունիստական պարտիաները և հալածել կոմունիստներին. երկրորդ, փորձում են վարկաբեկել կոմունիստական պարտիաները՝ նրանց հակազգային, հակահայրենասիրական ուժ, «Մոսկվայի գործիք» հայտարարելով։

Կոմունիստների նկատմամբ անվստահություն ներշնչելը և նրանց դեմ պայքարի կոչ անելը հետապնդում է մի այլ նպատակ ևս։ Բանը նրանում է, որ անկախության համար պայքարող երկրների համար այժմ գլխավոր հակասությունը՝ այդ հակասությունն է իմպերիալիզմի և ազգային-ազատագրական շարժման ուժերի միջև։ Ինչպես նշվեց, ազգային-ազատագրական պայքարում միավորվել են տարբեր սոցիալական ուժեր՝ բանվոր դասակարգը, գյուղացիությունը, ազգային բուրժուազիան և այլն, որոնց մեջ, անկասկած, գոյություն ունեն հակասություններ ու խնդիրների տարբեր ըմբռնում։ Սակայն այժմ այդ չէ գլխավորը, և թույլ զարգացած երկրներն իրենց ազգային խնդիրները կարող են լուծել, եթե դեմոկրատական, հայրենասիրական ուժերը չջլատվեն և միասնական ճակատով հանդես գան։ Իսկ այդպիսի հեռանկարը մեծ վտանգ է ներկայացնում գաղութարարների համար։ Ուստի նրանք, կոչ անելով պայքարել կոմունիստների դեմ, փորձում են գլխավոր հակասությունը՝ անտագոնիզմը իմպերիալիզմի և ազգային-ազատագրական շարժման միջև, փոխարինել երկրորդականով՝ հակասությունն ազգային-ազատագրական շարժման տարբեր թևերի միջև։ Ելնելով այդ խնդրից՝ գաղութատիրության պաշտպան «տեսաբաններն» այն «թեզն» են զարգացնում, որ գաղութատիրության դեմ պայքարի էտապն արդեն ավարտվել է։ Այստեղից բխում է այն հետևությունը, որ քաղաքական անկախություն ձեռք բերած երկրների ազգային բուրժուազիան պետք է ավարտված համարի իր պայքարն իմպերիալիզմի դեմ և համագործակցի նրա հետ։ Իսկ եթե այդ այդպես է, ապա միասնական ճակատի անհրաժեշտությունը նույնպես վերանում է, և ավտոմատ կերպով առաջին պլանի վրա է գալիս հակասությունը բուրժուազիայի և աշխատավորական մասսաների միջև, պայքարը կոմունիստական գաղափարների և կոմունիստական պարտիաների դեմ։ Սա ոչ այլ ինչ է, եթե ոչ «բաժանիր, որ տիրես» իմպերիալիստական սկզբունքի կիրառումը։





Իմպերիալիզմի գաղափարախոսները կոմունիստներին համարում են հակահայրենասիրական, հակազգային ուժ։ Իրենց այդ կեղծիքը «հիմնավորելու» համար նրանք օգտագործում են այն հանգամանքը, որ կոմունիստների աշխարհհայացքը պրոլետարական ինտերնացիոնալիզմն է, և որ Ասիայի ու Աֆրիկայի կոմունիստական պարտիաները միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման բաղկացուցիչ մասն են կազմում։

Չկա ավելի մեծ կեղծիք, քան կոմունիստներին հակազգային և հակահայրենասիրական ուժ համարելը։ Կոմունիստներն իրենց ազգի դեմոկրատական շահերի ամենահետևողական պաշտպաններն են, իսկ պրոլետարական ինտերնացիոնալիզմը ո՛չ միայն չի անտեսում ազգային շահերը, այլ ընդհակառակն, օգնում է բոլոր միջոցներով պաշտպանելու ճիշտ հասկացված ազգային խնդիրները։ Իսկական հայրենասերն ինտերնացիոնալիստ է, իսկ ինտերնացիոնալիստը՝ հայրենասեր։ Ասիայի ու Աֆրիկայի կոմունիստներն այդ բանն ապացուցել են ոչ թե խոսքով, այլ գործով, իրենց ամենօրյա պայքարով։

Վերցնենք այնպիսի հարց, ինչպիսին իմպերիալիզմի լծից ազատագրվելու և քաղաքական անկախություն ձեռք բերելու կամ ֆեոդալիզմի վերացման, տնտեսական բարեփոխումների կիրառման և դեմոկրատական կարգերի հաստատման հարցն է։ Հայտնի է, որ դրանք Ասիայի ու Աֆրիկայի երկրների մեծ մասի առջև կանգնած ամենակենսական ազգային հարցերն են և նրանց նկատմամբ ունեցած վերաբերմունքով է որոշվում այս կամ այն դասակարգի, այս կամ այն քաղաքական պարտիայի հայրենասիրական ու ազգային լինելը։ Առանց չափազանցության կարելի է ասել, որ գաղութային լծի դեմ պայքարի դուրս եկած ուժերի մեջ չկա մի այլ ուժ, որն այնքան զոհեր տված լինի և այնքան վճռական ու հետևողական պայքար մղած լինի ազգային կարևոր խնդիրների ամենաարմատական լուծման համար, քան կոմունիստական պարտիաները։

Սկսած 20-ական թվականներից նրանք ընթացել են հակաիմպերիալիստական շարժման ավանգարդում՝ ամենուրեք կազմակերպելով աշխատավորական մասսաների ռևոլյուցիոն պայքարը։ Այդ պայքարում գաղութային լծի տակ գտնվող երկրների կոմունիստները տվել են բազմաթիվ զոհեր, շատերն էլ նետվել են գնդանները։ Մի՞թե դա չի խոսում կոմունիստների հայրենասիրության մասին։ Մի՞թե այդ մասին չի վկայում այն փաստը, որ կոմունիստական պարտիաներն այժմ ամբողջովին պաշտպանում են ազգային կառավարությունների պրոգրեսիվ միջոցառումները, որոնք ուղղված են իրենց երկրների անկախությունն ամրապնդելուն, օտարերկրյա կապիտալի դիրքերի թուլացմանը, աշխատավորական մասսաների դրության բարելավմանը և այլն։ Կոմունիստները հայրենիքի և ազգի շահերը պաշտպանելու քաղաքականություն են վարում նույնիսկ այն դեպքում, երբ ազգային իշխանությունները հետապնդում են նրանց։ Այսպես, 1956 թ. Եգիպտոսի դեմ Անգլիայի, Ֆրանսիայի ու Իսրայելի սանձազերծած ագրեսիայի ժամանակ, որը վտանգի տակ էր դրել երկրի անկախ գոյության հարցը, եգիպտական կոմունիստները, չնայած իշխանությունների կողմից նրանց դեմ կիրառվող խիստ ռեպրեսիվ միջոցառումներին ու հալածանքներին, մեկ մարդու պես կանգնեցին հայրենիքի պաշտպանության դիրքերում, որովհետև այդ էին պահանջում ազգային անկախության շահերը։

Հակակոմունիզմի ջատագովների տեսակետների սնանկության և կոմունիստների հայրենասիրության մասին են վկայում նաև հետևյալ փաստերը։ Դա Հնդկաստանի կոմունիստական պարտիայի դիրքն է Գոայի ազատագրման հարցում։ Հասկանալի է, որ այդ սոցիալական և տնտեսական հարց չէր ու ազգային շրջանակներից դուրս չէր գալիս։ Եվ, այնուամենայնիվ, Հնդկաստանի կոմունիստական պարտիան պաշտպանեց ու աջակցություն ցույց տվեց հնդկական կառավարության քայլերին ու միջոցառումներին՝ ազատագրելու այդ տերիտորիան պորտուգալական գաղութարարներից։ Կոմունիստներն այդպես վարվեցին, որովհետև այդ համապատասխանում էր Հնդկաստանի ազգային շահերին։

Կոմունիստական պարտիաների վարած այդ քաղաքականությունն էլ հենց նրանց բերել է մեծ հեղինակություն աշխատավորական մասսաների շրջանում. Նրանց ծառայությունները բարձր են գնահատվում Ասիայի ու Աֆրիկայի շատ երկրների ազգային ղեկավարների կողմից։ «Ինչպե՞ս մենք կարող ենք,— գրում է Կամբոջայի պետության ղեկավար Նորոդոմ Սիանուկը,— կոմունիստներին հաշվել մեր թշնամիները, եթե նրանք երբեք մեր երկրում հակակամբոջական գործունեություն չեն վարել։ Միևնույն ժամանակ մենք անընդհատ սպառնալիքի ու պրովոկացիայի ենք ենթարկվում «ազատ աշխարհի» որոշ երկրների կողմից և ստիպված ենք պաշտպանվել նրանց բազմաթիվ հարձակումներից ու ագրեսիվ գործողություններից» («За рубежом», 1960, № 10, էջ 9)։

Ասիայի և Աֆրիկայի երկրների կոմունիստական պարտիաների, ինչպես նախապատերազմյան, այնպես էլ հետպատերազմյան ժամանակաշրջանի ողջ պրակտիկ գործունեությունը համոզիչ կերպով ցույց է տալիս, որ նրանք իսկական հայրենասիրական և ազգային ուժեր են, իրենց երկրների կենսական շահերի հետևողական պաշտպանները։

## V

Նույնքան անհիմն ու ակնհայտ զրպարտչական բնույթ է կրում գաղութարարների այն պնդումը, թե կոմունիստական պարտիաները «Մոսկվայի գործիքն» են։ Այս հարցը որոշ իմաստով առնչվում է նախորդ հարցի հետ, որ իբր կոմունիստները հակահայրենասիրական և հակազգային ուժ են։ Հակակոմունիզմի ջատագովները, կոմունիստներին մեղադրելով օտար պետություններին ծառայելու մեջ, հարկ չեն համարում թեկուզ մեկ կոնկրետ օրինակ բերել։

Մինչդեռ փաստերը անհերքելիորեն խոսում են այն մասին, որ կոմունիստները ո՛չ թե գործիք են, ո՛չ թե ծառայում են օտար պետությունների շահերին, այլ ծառայել ու ծառայում են միայն ու միայն իրենց ժողովրդի շահերին։ 40 տարուց ավելի է, ինչ գաղութային ու կախյալ երկրների կոմունիստական պարտիաներն անձնուրաց պայքար են մղում իմպերիալիզմի և դրանց կամակատար ներքին ռեակցիայի ուժերի դեմ՝ հանուն իրենց երկրների քաղաքական ու տնտեսական անկախության։ Սեփական ժողովրդի շահերին ծառայելու ամենալավագույն օրինակն է այդ։ Երբ 1959 թ. Մոսուլում իմպերիալիստական պետությունների աջակցությամբ բռնկեց խռովություն, որի նպատակն էր տապալել ռեսպուբլիկական ռեժիմն Իրաքում, Իրաքի կո-



մունիստները կազմակերպեցին աշխատավորական մասսաների դիմադրությունը և ակտիվ դեր խաղացին այդ խռովության ճնշման գործում։ Մի՞թե դա իր սեփական ժողովրդի շահերին ծառայելու օրինակ չէ։ Մի՞թե այդպիսին չէ Ալժիրի կոմունիստական պարտիայի գործունեությունը, որն ավելի քան ութ տարի պայքար էր մղում ֆրանսիական գաղութարարների դեմ։ Մի՞թե իրենց ժողովրդի շահերին ծառայելու օրինակ չէ Հնդկաստանի, Ինդոնեզիայի, Սիրիայի և մյուս երկրների կոմունիստական պարտիաների գործունեությունը, որոնք պայքարում են իրենց երկրները դեմոկրատիայի ուղիով տանելու, աշխատավորական մասսաների վիճակը բարելավելու և իրենց երկրներում իմպերիալիզմի ազդեցությունը վերջնականապես լիկվիդացնելու համար։

Նման օրինակները շատ շատ են։ Ինչպես մյուս, այնպես էլ Ասիայի ու Աֆրիկայի երկրների կոմունիստական պարտիաներն իրենց գործունեության մեջ չեն ղեկավարվում որևէ այլ պետության կամ պարտիայի թելադրանքով։ Նրանք իրենց պարտիական ծրագրերն ընդունում, իրենց պայքարի ստրատեգիան ու տակտիկան կառուցում են՝ ելնելով իրենց ազգային խնդիրներից և կոնկրետ իրադրությունից։ Ինչպես նշում է «Ալ-Ջադիդ» ամսագիրը, արաբական երկրների կոմունիստները սոցիալիզմի համար մղվող պայքարում մեխանիկորեն չեն ընդօրինակում սովետական կամ այլ փորձերը։ Նրանք հաշվի են առնում իրենց երկրների տնտեսական պայմանները, ազգային առանձնահատկությունները և այլն։ Այդպես են վարվում ո՛չ միայն արաբական, այլ աշխարհի բոլոր երկրների կոմունիստական պարտիաները, սրանց միջև հաստատվել են եղբայրական փոխհարաբերություններ։ Սովետական Միության կոմունիստական պարտիան, մյուս կոմունիստական պարտիաների հետ իր հարաբերությունները հիմնում է լրիվ իրավահավասարության և նրանց ներքին գործերին չմիջամտելու սկզբունքի վրա։ Այս է իրողությունը։

Արդյո՞ք հակակոմունիզմի ջատագովներին հաջողվել է դեմոկրատական ուժերի մոտ վարկաբեկել կոմունիստական պարտիաներին և կասկածանք ու անվստահություն հարուցել նրանց նկատմամբ։ Արդյո՞ք նրանց հաջողվել է համոզել անկախություն ձեռք բերած երկրների ազգային կառավարություններին, որ նրանց № 1 թշնամին կոմունիստներն են։ Այդ հարցի պատասխանը կարելի է գտնել բուրժուական որոշ պատմաբանների մոտ, որոնց ո՛չ միայն չի կարելի կասկածել կոմունիստների նկատմամբ ունեցած համակրանքի մեջ, այլ որոնք, ընդհակառակն, աչքի են ընկնում դեպի կոմունիստներն ունեցած իրենց ատելությամբ։ Այսպես, օրինակ, Լոնդոնի և Կալիֆոռնիայի համալսարանների պրոֆեսոր Բեռնարդ Լուիսը ցավով նշում է, որ «Միավորված Ազգերի կազմակերպությունում, Արաբական ու Ասիական բլոկի պետությունները բազմաթիվ առիթներով ցույց են տվել, որ համաշխարհային պրոբլեմները նրանք տեսնում են Արևմուտքի դեմ մղվող իրենց պայքարում և ոչ թե կոմունիզմի դեմ մղվող մեր պայքարում»։ Այս շատ արժեքավոր խոստովանություն է, որը հաստատում է հակակոմունիզմի քաղաքականության ձախողման փաստը։

## VI

Հակակոմունիզմը նախ և առաջ ուղղված է Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների դեմ։ Գաղութարարները խոսում են «սովե-

տական իմպերիալիզմի», «սովետական գաղութարարության» մասին, խեղաթյուրում են սոցիալիստական լագերի երկրների արտաքին քաղաքականությունը և նոր անկախություն ձեռք բերած երկրներին նրանց կողմից ցույց տրվող քաղաքական ու տնտեսական օգնության իսկական նպատակները: Պրոֆեսոր Բ. Լուիսն, օրինակ, հավասարության նշան է դնում Սովետական Միության և ցարական Ռուսաստանի արտաքին քաղաքականության միջև, նշելով որ սկսած Պյոտր Մեծից մինչև այսօր, Ռուսաստանը ցանկանում է նվաճել Արևելքը: Գնդապետ Թաքսիսը նշում է, որ կոմունիստների նպատակն է՝ հասնել համաշխարհային տիրապետության, իսկ Հալֆորդ Հոսկինսը գրում է, որ կոմունիզմն ագրեսիայի վտանգավոր զենք է Ռուսաստանի ձեռքում: Սովետական Միության արտաքին քաղաքականության հասցեին տարածվող այս հերյուրանքների քաղաքական իմաստը պարզ է: Դրանով գաղութարարները փորձում են Ասիայի ու Աֆրիկայի երկրների ժողովուրդների մոտ կասկած հարուցել Սովետական Միության հանդեպ, սեպ խրել այդ և սոցիալիստական սիստեմի երկրների միջև, թուլացնել նրանց քաղաքական ու տնտեսական դիրքերը, նրանց կրկին գցել գաղութային լծի տակ:

Թույլ զարգացած երկրների նկատմամբ Սովետական Միության վարած քաղաքականությունը հիմնվում է լրիվ իրավահավասարության, նրանց անշահախնդիր օգնություն ցույց տալու սկզբունքների վրա: Հոկտեմբերյան ռևոլյուցիայից հետո սովետական կառավարությունը հրաժարվեց ժամանակին ցարիզմի կնքած բոլոր անիրավահավասար պայմանագրերից, որին նա դիմել էր Արևելքի մի շարք երկրները կողոպտելու նպատակով: Հարց է ծագում, եթե ՍՍՌՄ-ի քաղաքականությունը ցարական Ռուսաստանի արտաքին քաղաքականության շարունակությունն է, ապա ինչո՞ւ նա հրաժարվեց այդ պայմանագրերով իրեն տրվող արտոնություններից:

Ոչ մի պետություն, որը վարում է ուրիշ երկրներ նվաճելու և շահագործելու քաղաքականություն, այդպես չի վարվի: Իրականում համաշխարհային տիրապետության, գաղութային սիստեմի վերականգնմանն են ձգտում Արևմուտքի իմպերիալիստական տերությունները: Դիմենք փաստերին: 1956 թ. Անգլիան և Ֆրանսիան, ԱՄՆ-ի լռելյայն համաձայնությամբ, ագրեսիա սանձազերծեցին Եգիպտոսի դեմ, իմպերիալիստական տերություններն անընդհատ սպառնում էին Սիրիային: 1958 թ. ԱՄՆ-ը դեսանտ հանեց Լիբանանում, իսկ Անգլիան՝ Հորդանանում, նպատակ ունենալով ճնշել այդ երկրներում ծավալվող ազգային-ազատագրական շարժումներն ու ինտերվենցիա սկսել Իրաքի երիտասարդ ռեսպուբլիկայի դեմ: Իմպերիալիստական տերություններն ամեն կերպ խանգարում էին Հնդկաստանին ու Ինդոնեզիային՝ լուծելու իրենց տերիտորիալ հարցերը և վերջ տալու գաղութատիրության մնացորդներին: Նրանք ամեն տեսակ դավեր են նյութում Աֆրիկայի այն երիտասարդ պետությունների դեմ, որոնք չեն ցանկանում կոմպրոմիսի մեջ մտնել գաղութային տերությունների հետ: Ամերիկյան ներխուժման մշտական սպառնալիքի տակ է գտնվում ազատ Կուբան: Արդյոք նման որևէ փաստ կարելի՞ է բերել Սովետական Միության կամ սոցիալիստական մյուս երկրների միջազգային պրակտիկայից: Բնավ ոչ:

Ընդհանրապես, վերևում թվարկված բոլոր իրադարձությունների ժամանակ սոցիալիստական երկրները պաշտպանել են թույլ զարգացած երկրներին և խիստ զգուշացրել իմպերիալիստական ուժերին՝ հրաժարվելու իրենց



զավթողական պլաններից: Եվ պետք է նշել, որ Սովետական Միության անհողդողդ դիրքը վճռական դեր է խաղացել իմպերիալիստական պետությունների զավթողական պլանների ձախողման և թույլ զարգացած երկրների ազգային անկախության պահպանման գործում:

Սոցիալիզմի լագերի, միջազգային բանվորական շարժման և ազգային-ազատագրական շարժումների փոխհարաբերության և կապի հարցը սկզբունքային կարևոր նշանակություն ունի: Այդ կապի, սոցիալիստական երկրների կողմից Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի ժողովուրդներին ցույց տրվող օգնության ամեն մի թերագնահատում գործնական կյանքում շատ ծանր հետևանքներ կարող է ունենալ ազգային-ազատագրական շարժումների համար: Ահա թե ինչու չի կարելի համաձայնվել կյանքի ընթացքին հակասող այն տեսակետին, թե իբր մեր ժամանակի հիմնական հակասությունը ոչ թե սոցիալիզմի և իմպերիալիզմի հակասությունն է, այլ ազգային-ազատագրական շարժման և իմպերալիզմի հակասությունը: Այստեղից՝ այն սխալ հետևությունը, թե իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում վճռական ուժը ոչ թե սոցիալիզմի համաշխարհային սիստեմն է, այլ ազգային ազատագրական շարժումը: Ինչպես նշված է ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի բաց նամակում, այդ նոր «տեսության» «փաստական իմաստը, անկախ այն բանից, թե որոշ տեսաբաններ ուզում են թե ոչ, այն է, որ ազգային-ազատագրական շարժումը մեկուսացվի միջազգային բանվոր դասակարգից և նրա ծնունդը հանդիսացող սոցիալիզմի համաշխարհային սիստեմից: Բայց դա հսկայական վտանգ կներկայացներ բուն ազգային-ազատագրական շարժման համար»: Այդ շարժման հաջողության գլխավոր պայմաններից մեկը սոցիալիզմի երկրների հետ կայուն դաշինքն է և համագործակցությունը տնտեսական, կուլտուրական ու քաղաքական բնագավառներում:

Սոցիալիստական երկրների և իմպերիալիստական երկրների քաղաքականությունների արմատական տարբերությունները շատ լավ են ըմբռնում իրենք՝ թույլ զարգացած երկրների ժողովուրդներն ու նրանց ազգային ղեկավարները: Նրանք շատ բարձր են գնահատում Սովետական Միության օգնությունն ու աջակցությունն իրենց մղած պայքարում: Ինդոնեզիայի պրեզիդենտ Սուկառնոն, օրինակ, դիմելով իմպերիալիստներին, որոնք Ինդոնեզիային մեղադրում են Սովետական Միության հետ բարեկամական կապեր պահպանելու համար, նշում է. «Պարոնա՛յք, դուք ձգտում եք կործանել ինդոնեզական ռեսպուբլիկան, դուք ուզում եք քայքայել նրա ուժերը, իսկ Սովետական Միությունը ո՛չ միայն չի ձգտում քայքայել Ինդոնեզական ռեսպուբլիկայի ուժերը, այլ ընդհակառակն, նա մեզ օգնություն է ցույց տալիս: Նա ուզում է, որ Ինդոնեզիան դառնա ուժեղ»:

Սովետական Միության քաղաքականության մասին նույն կարծիքն է հայտնում նաև լիբանանյան «Ռեյու դյու Լիբան» թերթը, նշելով, որ «Իզուր են արաբներին նախազգուշացնում մոսկովյան դիվանագիտության գործողություններից: Նրանք դրա վրա ուշադրություն չեն դարձնում, որովհետև նրանց համար կարևորն արդյունքներն են: Իսկ արդյունքները խոսում են այն մասին, որ Սովետական Միության դիրքն ու մրցակցությունը՝ Արևմուտքի և Արևելքի միջև, կշեռքի նժարը թեքել է հօգուտ արաբների»:

Հակակոմունիզմի կողմնակիցներն ամեն կերպ ջանում են սավեր գցել

Հակակոմունիզմի ջատագովների տեսակետների սնանկության և կոմունիստների հայրենասիրության մասին են վկայում նաև հետևյալ փաստերը։ Դա Հնդկաստանի կոմունիստական պարտիայի դիրքն է Գոայի ազատագրման հարցում։ Հասկանալի է, որ այդ սոցիալական և տնտեսական հարց չէր ու ազգային շրջանակներից դուրս չէր գալիս։ Եվ, այնուամենայնիվ, Հնդկաստանի կոմունիստական պարտիան պաշտպանեց ու աջակցություն ցույց տվեց հնդկական կառավարության քայլերին ու միջոցառումներին՝ ազատագրելու այդ տերիտորիան պորտուգալական գաղութարարներից։ Կոմունիստներն այդպես վարվեցին, որովհետև այդ համապատասխանում էր Հնդկաստանի ազգային շահերին։

Կոմունիստական պարտիաների վարած այդ քաղաքականությունն էլ հենց նրանց բերել է մեծ հեղինակություն աշխատավորական մասսաների շրջանում. Նրանց ծառայությունները բարձր են գնահատվում Ասիայի ու Աֆրիկայի շատ երկրների ազգային ղեկավարների կողմից։ «Ինչպե՞ս մենք կարող ենք,— գրում է Կամբոջայի պետության ղեկավար Նորոդոմ Սիանուկը,— կոմունիստներին հաշվել մեր թշնամիները, եթե նրանք երբեք մեր երկրում հակակամբոջական գործունեություն չեն վարել։ Միևնույն ժամանակ մենք անընդհատ սպառնալիքի ու պրովոկացիայի ենք ենթարկվում «ազատ աշխարհի» որոշ երկրների կողմից և ստիպված ենք պաշտպանվել նրանց բազմաթիվ հարձակումներից ու ագրեսիվ գործողություններից» («За рубежом», 1960, № 10, էջ 9)։

Ասիայի և Աֆրիկայի երկրների կոմունիստական պարտիաների, ինչպես նախապատերազմյան, այնպես էլ հետպատերազմյան ժամանակաշրջանի ողջ պրակտիկ գործունեությունը համոզիչ կերպով ցույց է տալիս, որ նրանք իսկական հայրենասիրական և ազգային ուժեր են, իրենց երկրների կենսական շահերի հետևողական պաշտպանները։

## V

Նույնքան անհիմն ու ակնհայտ զրպարտչական բնույթ է կրում գաղութարարների այն պնդումը, թե կոմունիստական պարտիաները «Մոսկվայի գործիքն» են։ Այս հարցը որոշ իմաստով առնչվում է նախորդ հարցի հետ, որ իբր կոմունիստները հակահայրենասիրական և հակազգային ուժ են։ Հակակոմունիզմի ջատագովները, կոմունիստներին մեղադրելով օտար պետություններին ծառայելու մեջ, հարկ չեն համարում թեկուզ մեկ կոնկրետ օրինակ բերել։

Մինչդեռ փաստերը անհերքելիորեն խոսում են այն մասին, որ կոմունիստները ո՛չ թե գործիք են, ո՛չ թե ծառայում են օտար պետությունների շահերին, այլ ծառայել ու ծառայում են միայն ու միայն իրենց ժողովրդի շահերին։ 40 տարուց ավելի է, ինչ գաղութային ու կախյալ երկրների կոմունիստական պարտիաներն անձնուրաց պայքար են մղում իմպերիալիզմի և դրանց կամակատար ներքին ռեակցիայի ուժերի դեմ՝ հանուն իրենց երկրների քաղաքական ու տնտեսական անկախության։ Սեփական ժողովրդի շահերին ծառայելու ամենալավագույն օրինակն է այդ։ Երբ 1959 թ. Մոսուլում իմպերիալիստական պետությունների աջակցությամբ բռնկեց խռովություն, որի նպատակն էր տապալել ռեսպուբլիկական ռեժիմն Իրաքում, Իրաքի կո-



մունիստները կազմակերպեցին աշխատավորական մասսաների դիմադրությունը և ակտիվ դեր խաղացին այդ խռովության ճնշման գործում։ Մի՞թե դա իր սեփական ժողովրդի շահերին ծառայելու օրինակ չէ։ Մի՞թե այդպիսին չէ Ալժիրի կոմունիստական պարտիայի գործունեությունը, որն ավելի քան ութ տարի պայքար էր մղում ֆրանսիական գաղութարարների դեմ։ Մի՞թե իրենց ժողովրդի շահերին ծառայելու օրինակ չէ Հնդկաստանի, Ինդոնեզիայի, Սիրիայի և մյուս երկրների կոմունիստական պարտիաների գործունեությունը, որոնք պայքարում են իրենց երկրները դեմոկրատիայի ուղիով տանելու, աշխատավորական մասսաների վիճակը բարելավելու և իրենց երկրներում իմպերիալիզմի ազդեցությունը վերջնականապես լիկվիդացնելու համար։

Նման օրինակները շատ շատ են։ Ինչպես մյուս, այնպես էլ Ասիայի ու Աֆրիկայի երկրների կոմունիստական պարտիաներն իրենց գործունեության մեջ չեն ղեկավարվում որևէ այլ պետության կամ պարտիայի թելադրանքով։ Նրանք իրենց պարտիական ծրագրերն ընդունում, իրենց պայքարի ստրատեգիան ու տակտիկան կառուցում են՝ ելնելով իրենց ազգային խնդիրներից և կոնկրետ իրադրությունից։ Ինչպես նշում է «Ալ-Ջադիդ» ամսագիրը, արաբական երկրների կոմունիստները սոցիալիզմի համար մղվող պայքարում մեխանիկորեն չեն ընդօրինակում սովետական կամ այլ փորձերը։ Նրանք հաշվի են առնում իրենց երկրների տնտեսական պայմանները, ազգային առանձնահատկությունները և այլն։ Այդպես են վարվում ո՛չ միայն արաբական, այլ աշխարհի բոլոր երկրների կոմունիստական պարտիաները, սրանց միջև հաստատվել են եղբայրական փոխհարաբերություններ։ Սովետական Միության կոմունիստական պարտիան, մյուս կոմունիստական պարտիաների հետ իր հարաբերությունները հիմնում է լրիվ իրավահավասարության և նրանց ներքին գործերին չմիջամտելու սկզբունքի վրա։ Այս է իրողությունը։

Արդյո՞ք հակակոմունիզմի ջատագովներին հաջողվել է դեմոկրատական ուժերի մոտ վարկաբեկել կոմունիստական պարտիաներին և կասկածանք ու անվստահություն հարուցել նրանց նկատմամբ։ Արդյո՞ք նրանց հաջողվել է համոզել անկախություն ձեռք բերած երկրների ազգային կառավարություններին, որ նրանց № 1 թշնամին կոմունիստներն են։ Այդ հարցի պատասխանը կարելի է գտնել բուրժուական որոշ պատմաբանների մոտ, որոնց ո՛չ միայն չի կարելի կասկածել կոմունիստների նկատմամբ ունեցած համակրանքի մեջ, այլ որոնք, ընդհակառակն, աչքի են ընկնում դեպի կոմունիստներն ունեցած իրենց ատելությամբ։ Այսպես, օրինակ, Լոնդոնի և Կալիֆոռնիայի համալսարանների պրոֆեսոր Բեռնարդ Լուիսը ցավով նշում է, որ «Միավորված Ազգերի կազմակերպությունում, Արաբական ու Ասիական բլոկի պետությունները բազմաթիվ առիթներով ցույց են տվել, որ համաշխարհային պրոբլեմները նրանք տեսնում են Արևմուտքի դեմ մղվող իրենց պայքարում և ոչ թե կոմունիզմի դեմ մղվող մեր պայքարում»։ Այս շատ արժեքավոր խոստովանություն է, որը հաստատում է հակակոմունիզմի քաղաքականության ձախողման փաստը։

## VI

Հակակոմունիզմը նախ և առաջ ուղղված է Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների դեմ։ Գաղութարարները խոսում են «սովե-

տական իմպերիալիզմի», «սովետական գաղութարարության» մասին, խեղաթյուրում են սոցիալիստական լագերի երկրների արտաքին քաղաքականությունը և նոր անկախություն ձեռք բերած երկրներին նրանց կողմից ցույց տրվող քաղաքական ու տնտեսական օգնության իսկական նպատակները։ Պրոֆեսոր Բ. Լուիսն, օրինակ, հավասարության նշան է դնում Սովետական Միության և ցարական Ռուսաստանի արտաքին քաղաքականության միջև, նշելով որ սկսած Պյոտր Մեծից մինչև այսօր, Ռուսաստանը ցանկանում է նվաճել Արևելքը։ Գնդապետ Թաքսիսը նշում է, որ կոմունիստների նպատակն է՝ հասնել համաշխարհային տիրապետության, իսկ Հալֆորդ Հոսկինսը գրանում է, որ կոմունիզմն ագրեսիայի վտանգավոր զենք է Ռուսաստանի ձեռքում։ Սովետական Միության արտաքին քաղաքականության հասցեին տարածվող այս հերյուրանքների քաղաքական իմաստը պարզ է։ Դրանով գաղութարարները փորձում են Ասիայի ու Աֆրիկայի երկրների ժողովուրդների մոտ կասկած հարուցել Սովետական Միության հանդեպ, սեպ խրել այդ և սոցիալիստական սիստեմի երկրների միջև, թուլացնել նրանց քաղաքական ու տնտեսական դիրքերը, նրանց կրկին գցել գաղութային լծի տակ։

Թույլ զարգացած երկրների նկատմամբ Սովետական Միության վարած քաղաքականությունը հիմնվում է լրիվ իրավահավասարության, նրանց անշահախնդիր օգնություն ցույց տալու սկզբունքների վրա։ Հոկտեմբերյան ռևոլյուցիայից հետո սովետական կառավարությունը հրաժարվեց ժամանակին ցարիզմի կնքած բոլոր անիրավահավասար պայմանագրերից, որին նա դիմել էր Արևելքի մի շարք երկրները կողոպտելու նպատակով։ Հարց է ծագում, եթե ՍՍՌՄ-ի քաղաքականությունը ցարական Ռուսաստանի արտաքին քաղաքականության շարունակությունն է, ապա ինչո՞ւ նա հրաժարվեց այդ պայմանագրերով իրեն տրվող արտոնություններից։

Ոչ մի պետություն, որը վարում է ուրիշ երկրներ նվաճելու և շահագործելու քաղաքականություն, այդպես չի վարվի։ Իրականում համաշխարհային տիրապետության, գաղութային սիստեմի վերականգնմանն են ձգտում Արևմուտքի իմպերիալիստական տերությունները։ Դիմենք փաստերին։ 1956 թ. Անգլիան և Ֆրանսիան, ԱՄՆ-ի լռելյայն համաձայնությամբ, ագրեսիա սանձազերծեցին Եգիպտոսի դեմ, իմպերիալիստական տերություններն անընդհատ սպառնում էին Սիրիային։ 1958 թ. ԱՄՆ-ը դեսանտ հանեց Լիբանանում, իսկ Անգլիան՝ Հորդանանում, նպատակ ունենալով ճնշել այդ երկրներում ծավալվող ազգային-ազատագրական շարժումներն ու ինտերվենցիա սկսել Իրաքի երիտասարդ ռեսպուբլիկայի դեմ։ Իմպերիալիստական տերություններն ամեն կերպ խանգարում էին Հնդկաստանին ու Ինդոնեզիային՝ լուծելու իրենց տերիտորիալ հարցերը և վերջ տալու գաղութատիրության մնացորդներին։ Նրանք ամեն տեսակ դավեր են նյութում Աֆրիկայի այն երիտասարդ պետությունների դեմ, որոնք չեն ցանկանում կոմպրոմիսի մեջ մտնել գաղութային տերությունների հետ։ Ամերիկյան ներխուժման մշտական սպառնալիքի տակ է գտնվում ազատ Կուբան։ Արդյոք նման որևէ փաստ կարելի՞ է բերել Սովետական Միության կամ սոցիալիստական մյուս երկրների միջազգային պրակտիկայից։ Բնավ ոչ։

Ընդհանրապես, վերևում թվարկած բոլոր իրադարձությունների ժամանակ սոցիալիստական երկրները պաշտպանել են թույլ զարգացած երկրներին և խիստ զգուշացրել իմպերիալիստական ուժերին՝ հրաժարվելու իրենց



զավթողական պլաններից։ Եվ պետք է նշել, որ Սովետական Միության անհողդողդ դիրքը վճռական դեր է խաղացել իմպերիալիստական պետությունների զավթողական պլանների ձախողման և թույլ զարգացած երկրների ազգային անկախության պահպանման գործում։

Սոցիալիզմի լագերի, միջազգային բանվորական շարժման և ազգային-ազատագրական շարժումների փոխհարաբերության և կապի հարցը սկզբունքային կարևոր նշանակություն ունի։ Այդ կապի, սոցիալիստական երկրների կողմից Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի ժողովուրդներին ցույց տրվող օգնության ամեն մի թերագնահատում գործնական կյանքում շատ ծանր հետևանքներ կարող է ունենալ ազգային-ազատագրական շարժումների համար։ Ահա թե ինչու չի կարելի համաձայնվել կյանքի ընթացքին հակասող այն տեսակետին, թե իբր մեր ժամանակի հիմնական հակասությունը ոչ թե սոցիալիզմի և իմպերիալիզմի հակասությունն է, այլ ազգային-ազատագրական շարժման և իմպերալիզմի հակասությունը։ Այստեղից՝ այն սխալ հետևությունը, թե իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում վճռական ուժը ոչ թե սոցիալիզմի համաշխարհային սիստեմն է, այլ ազգային ազատագրական շարժումը։ Ինչպես նշված է ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի բաց նամակում, այդ նոր «տեսության» «փաստական իմաստը, անկախ այն բանից, թե որոշ տեսաբաններ ուզում են թե ոչ, այն է, որ ազգային-ազատագրական շարժումը մեկուսացվի միջազգային բանվոր դասակարգից և նրա ծնունդը հանդիսացող սոցիալիզմի համաշխարհային սիստեմից։ Բայց դա հսկայական վտանգ կներկայացներ բուն ազգային-ազատագրական շարժման համար»։ Այդ շարժման հաջողության գլխավոր պայմաններից մեկը սոցիալիզմի երկրների հետ կայուն դաշինքն է և համագործակցությունը տնտեսական, կուլտուրական ու քաղաքական բնագավառներում։

Սոցիալիստական երկրների և իմպերիալիստական երկրների քաղաքականությունների արմատական տարբերությունները շատ լավ են ըմբռնում իրենք՝ թույլ զարգացած երկրների ժողովուրդներն ու նրանց ազգային ղեկավարները։ Նրանք շատ բարձր են գնահատում Սովետական Միության օգնությունն ու աջակցությունն իրենց մղած պայքարում։ Ինդոնեզիայի պրեզիդենտ Սուկառնոն, օրինակ, դիմելով իմպերիալիստներին, որոնք Ինդոնեզիային մեղադրում են Սովետական Միության հետ բարեկամական կապեր պահպանելու համար, նշում է. «Պարոնա՛յք, դուք ձգտում եք կործանել ինդոնեզական ռեսպուբլիկան, դուք ուզում եք քայքայել նրա ուժերը, իսկ Սովետական Միությունը ո՛չ միայն չի ձգտում քայքայել Ինդոնեզական ռեսպուբլիկայի ուժերը, այլ ընդհակառակն, նա մեզ օգնություն է ցույց տալիս։ Նա ուզում է, որ Ինդոնեզիան դառնա ուժեղ»։

Սովետական Միության քաղաքականության մասին նույն կարծիքն է հայտնում նաև լիբանանյան «Ռեյու դյու Լիբան» թերթը, նշելով, որ «Իզուր են արաբներին նախազգուշացնում մոսկովյան դիվանագիտության գործողություններից։ Նրանք դրա վրա ուշադրություն չեն դարձնում, որովհետև նրանց համար կարևորն արդյունքներն են։ Իսկ արդյունքները խոսում են այն մասին, որ Սովետական Միության դիրքն ու մրցակցությունը՝ Արևմուտքի և Արևելքի միջև, կշեռքի նժարը թեքել է հօգուտ արաբների»։

Հակակոմունիզմի կողմնակիցներն ամեն կերպ ջանում են ստվեր գցել

թույլ զարգացած երկրներին Սովետական Միության կողմից ցույց տրվող տնտեսական օգնության բնույթի վրա։ Նրանք փորձում են հավատացնել թույլ զարգացած երկրների ժողովուրդներին և կառավարություններին, որ տնտեսական օգնությունն ու առևտուրը Սովետական Միությունն օգտագործում է կոմունիզմի ներթափանցման համար։

Մինչև Սովետական Միության և մյուս սոցիալիստական երկրների հանդես գալը և նրանց կողմից Ասիայի ու Աֆրիկայի մի շարք երկրներին տնտեսական օգնություն ցույց տալը, այդտեղ անբաժան կերպով տիրապետում էին գաղութային պետությունները։ Նրանք թույլ զարգացած երկրներին թելադրում էին ցանկացած ստրկացուցիչ պայմանները և վերջիններս, այլ ելք չունենալով, հարկադրված էին ընդունել այդ «օգնությունը»։ Սակայն պատկերն այժմ լրիվ փոխվել է։ Սոցիալիստական երկրների առաջացմամբ թույլ զարգացած երկրները հնարավորություն ստացան տնտեսական օգնություն ստանալ իրենց ձեռնտու պայմաններով։ Միջազգային պրակտիկայում առաջին անգամ սկսեցին կիրառվել նոր սկզբունքների վրա հիմնված տնտեսական փոխհարաբերություններ։ Սովետական Միությունն Ասիայի ու Աֆրիկայի երկրներին տնտեսական օգնություն է ցույց տալիս առանց որևէ պայմանի։ Այդ օգնությունը փոխադարձաբար ձեռնտու ու շահավետ է՝ հիմնված լրիվ իրավահավասարության ու միմյանց ներքին գործերին չմիջամտելու սկզբունքների վրա։ Անդրադառնալով այդ հարցին, արաբական հասարակական գործիչ, դոկտոր Մուհամմեդ Մաջզուբը Դեմոկրատիայի և արաբական նացիոնալիզմի ողբերգությունը Լիբանանում գրքում նշում է, որ սովետական տնտեսական օգնության բնույթի մասին իմպերիալիստների հերյուրանքները չեն հասնում իրենց նպատակներին, քանի որ «Արևելքում գիտակից շրջաններն սկսում են կոմունիստական աշխարհի վրա նայել նոր տեսակետից, հեռավոր կարծեցյալ «թշնամուց» առանց որևէ պայմանի և առանց իր սկզբունքները փաթաթելու օգնություն ստանալու տեսակետից» (М. Маджзуб, «Трагедия демократии и арабского национализма в Ливане», М. 1959, էջ 94)։

Սովետական Միությունը լայն ու բազմակողմանի օգնություն է ցույց տալիս թույլ զարգացած երկրներին։ Նա ձեռնտու պայմաններով վարկ է բաց թողնում, կառուցում է արդյունաբերական տարբեր ձեռնարկություններ, օգնում է գիտական, տեխնիկական և տնտեսական կադրերի պատրաստմանը։ Թույլ զարգացած երկրներին Սովետական Միության բաց թողած վարկի գումարը հասնում է 2 մլրդ ռուբլու։ Այդ երկրներում նրա օգնությամբ կառուցվում են արդյունաբերական և այլ բնույթի մոտ 400 ձեռնարկություններ։ Ըստ որում ՍՍՌՄ-ն օգնում է կառուցելու մետալուրգիական, մեքենաշինական գործարաններ, էլեկտրակայաններ, օգնում է այդ երկրներին՝ ստեղծելու իրենց ազգային, անկախ էկոնոմիկան։ Այստեղից պարզ չէ՞, որ եթե ՍՍՌՄ-ը ձգտեր թույլ զարգացած երկրների էկոնոմիկան դարձնել իր էկոնոմիկայի կցորդը, մի՞թե նա կնպաստեր այդ երկրների ազգային անկախ տնտեսության ստեղծմանը։ Իհարկե, ոչ։ Սովետական Միությունը ոչ մի գաղութային նպատակ չի հետապնդում։ Այդ հակասում է նրա, որպես սոցիալիստական պետության բնույթին։ Նա ունի հումքի անսպառ պաշարներ ու ներքին լայն շուկա։ Նա մյուս երկրների հումքի աղբյուրները շահագործելու և շուկաները նվաճելու կարիքը չի զգում։



Տնտեսական թույլ զարգացած երկրներին օգնելը ՍՍՌՄ-ը դիտում է որպես իր արտաքին քաղաքականության անկյունաքարերից մեկը։ «ՍՄԿՊ-ն իր ինտերնացիոնալ պարտքն է համարում օգնել ազգային անկախությունը նվաճելու և ամրապնդելու ուղիով ընթացող ժողովուրդներին, գաղութային սիստեմը լիովին ոչնչացնելու համար պայքարող բոլոր ժողովուրդներին» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 471—472)։ ՍՍՌՄ-ի անշահախնդիր օգնությունը լայն ճանաչում է գտել։ Այդ օգնությունը բարձր են գնահատում Ասիայի ու Աֆրիկայի երկրների ականավոր պետական գործիչները՝ Ներուն, Սուկառնոն, Նասերը, Քվամե Նքրուման, Սեկու Տուրեն և մյուսները։ Այդ ցույց է տալիս, որ հակակոմունիզմի բոլոր կողմնակիցների փորձերը՝ գժտեցնել Ասիայի ու Աֆրիկայի թույլ զարգացած երկրներին Սովետական Միության և սոցիալիստական մյուս պետությունների հետ, հաջողության չեն հասնում։

Գաղութատիրական քաղաքականության ջատագովների կողմից հակակոմունիզմի զենքի օգտագործումը մեկ անգամ ևս հաստատում է, որ բուրժուական գաղափարախոսությունը խոր դեգրադացիա է ապրում։ Այդ «տեսությունը» հիմնված է ստի ու կեղծիքի, զրպարտության ու հերյուրանքների վրա։ Բայց հենց այդ էլ հանդիսանում է նրա թույլ ու խոցելի կողմը և հաստատուն գրավականն այն բանի, որ առաջիկայում ևս նրան չի հաջողվի մոլորեցնել ժողովրդական մասսաներին։ Հակակոմունիզմը պատմության կողմից դատապարտված է ձախողման։ Սակայն այդ չի նշանակում, որ նրա դեմ չպետք է պայքարել կամ պետք է պայքարը թուլացնել։ Պայքարը հակակոմունիզմի դեմ և նրա բոլոր մեքենայությունների ու կեղծ «գիտական» տեսակետների մերկացումը մեր ժամանակի գաղափարական աշխատանքի կարևորագույն խնդիրներից է։

# ԳՅՈՒՂԱԿԱՆ ԻՆՏԵԼԻԳԵՆՑԻԱՆ

Վ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

Նախասովետական հայ գյուղում ինտելիգենտը ծիծեռնակ էր, ժամանակավոր հյուր։ Գյուղ մեկնողներից նրանք, ովքեր տարված էին նարոդնիկական հովերով, անզոր էին գյուղացիության ազատագրության խոչընդոտները հաղթահարելու։

Լինում էր և այնպես, որ ինտելիգենտը գյուղում աշխատանքի ոչ մի պայման չէր ունենում, ոչ ոքից օգնություն չէր ստանում և հուսալքված հեռանում էր այնտեղից, չմտածելով այլևս գյուղ վերադառնալու մասին։ Անգամ սովորելու մեկնած գյուղական երիտասարդը, որի հետ հարազատները մեծ հույսեր էին կապում, կրթություն ստանալուց հետո դառնում էր «Նոյի ագռավ» և ընդմիշտ հրաժեշտ տալիս գյուղին, ասպարեզը թողնելով տեր-թոդիկներին ու տիրացու մոսիներին։ Դա, բնականաբար, չէր անհանգստացնում տիրապետող դասակարգի «ընտրյալ» մարդկանց, որոնք աշխատավոր գյուղացուն կեղեքելու, ունեզրկելու և ճնշելու հետ միասին պահում էին խավարի մեջ, զրկում կրթություն ստանալու հնարավորությունից։

Այդպես շարունակվեց մինչև սովետական կարգերի հաստատումը։

Սովետական իշխանության հաստատման առաջին իսկ օրից Հայաստանի քաղաքներում ու գյուղերում ստեղծվեցին նոր կյանք, նոր կարգ։ Ազատագրված գյուղացին պատմության մեջ առաջին անգամ դարձավ իր արդար վաստակի տերը և հնարավորություն ստացավ կարիքից դուրս գալու։ Սերտ դաշինք կնքելով եղբայրական բանվոր դասակարգի հետ և ստանալով նրա անշահախնդիր օգնությունը, աշխատավոր գյուղացին հետագայում իր մանր, փոշիացած ու հետամնաց տնտեսությունը փոխադրեց սոցիալիստական ռելսերի վրա, կոլեկտիվ աշխատանքով զարգացրեց հանրային տնտեսությունը, պատմականորեն կարճ ժամանակաշրջանում գյուղում ապահովեց սոցիալիզմի վերջնական ու լիակատար հաղթանակը և թևակոխեց կոմունիստական շինարարության ծավալուն կառուցման ժամանակաշրջանը։

Տնտեսության բնագավառում կատարված խոր, արմատական փոփոխությունների հետ միասին գյուղում լայն թափ ստացավ կուլտուրական ռևոլյուցիան։ Այն գյուղը հեղեղեց առաջավոր մտքի ջահակիրներով, բանվոր դասակարգի ու աշխատավոր գյուղացիության ծոցից դուրս եկած նոր ինտելիգենցիայի ջոկատներով։ Նրանց շարքերում ներկայումս կան բարձրագույն ու միջնակարգ կրթությամբ հազարավոր ուսուցիչներ, գյուղատնտեսներ, զոոտեխնիկներ, ինժեներներ, մեխանիկներ, անասնաբույժներ ու այլ աշխատողներ, որոնք ազնվորեն ծառայում են ժողովրդին և վայելում նրա սերն ու համակրանքը։



Գյուղական ինտելիգենցիան այսօր կոմունիզմի ակտիվ կառուցող է։ Նա ստեղծագործական արդյունավետ աշխատանք է կատարում նյութական բարիքների արտադրության և հոգևոր կյանքի բոլոր բնագավառներում։ Չկա մի աշխատանք, չկա մի կարևոր միջոցառում, որին նա ակտիվ մասնակցություն չցուցաբերի։

Մեր ռեսպուբլիկայի ամեն մի գյուղում, լինի այն մեծ թե փոքր, հեռու թե մոտիկ, նոր իդեաներով զինված ինտելիգենցիան հանդես է գալիս որպես գիտության ու կուլտուրայի տարածող , որպես կոմունիստական շինարարության առաջամարտիկ։ Նա աշխատում է կոլտնտեսականների ու սովխոզների բանվորների հետ ուս-ուսի տված, իրեն համարում է տվյալ համերաշխ կոլեկտիվի անդամը, յուրաքանչյուրի ընկերն ու բարեկամը, որին օգնում է իր գիտելիքներով ու խորհուրդներով։

Հանձին ինտելիգենցիայի, գյուղատնտեսության մեջ լայն ծավալ է ստանում մտավոր աշխատանքը, գիտության նվաճումների օգտագործումը, որը մեծապես նպաստում է արտադրության առավել զարգացմանը։

***

Գյուղատնտեսության մեջ գիտության ու տեխնիկայի ներդրման մասշտաբների համեմատ աճել է գյուղական ինտելիգենցիայի թիվը, նրա աշխատանքի տեսակարար կշիռը։ Այդ ուղղությամբ առանձնապես խոշոր աշխատանք է կատարված վերջին տասնամյակում, ՍՄԿՊ Կենտկոմի 1953 թվականի սեպտեմբերյան պլենումից հետո ընկած ժամանակաշրջանում, երբ պարտիան մի շարք կոնկրետ միջոցառումներ իրականացրեց կոլտնտեսություններն ու սովխոզները մասնագետ կադրերով ապահովելու, գյուղատնտեսական արտադրության մեջ նրանց դերը բարձրացնելու ուղղությամբ։

Այժմ ռեսպուբլիկայի գյուղական արտադրական վարչությունների բոլոր տնտեսությունների ղեկավարների, մասնագետների ու միջին հրամանատարական աշխատողների կազմում կան բարձրագույն ու միջնակարգ կրթությամբ մոտ 4860 մարդ, որոնցից գյուղատնտեսներ են 679, զոոտեխնիկներ՝ 578, անասնաբույժներ՝ 495, ինժեներ-մեխանիկներ՝ 206, բրիգադավարներ՝ 863, ֆերմաների վարիչներ՝ 408, կոլտնտեսությունների նախագահներ ու սովխոզի դիրեկտորներ՝ 758 հոգի (վերջիններիս զգալի մասը ունեն մասնագիտական կրթություն) և այլն։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչությունների շատ տնտեսություններ ունեն բարձրագույն կրթությամբ մի քանի մասնագետներ։ Ավելին, կան առանձին խոշոր տնտեսություններ, ուր մասնագետները մեծ թիվ են կազմում։ Այդ տեսակետից առանձնապես աչքի է ընկնում Էջմիածնի Վ. Ի. Լենինի անվան սովխոզը։ Այստեղ արտադրության տարբեր ճյուղերում աշխատում են բարձրագույն կրթությամբ քսանից ավելի մասնագետներ։

Գյուղական ինտելիգենցիան այժմ իր ամբողջ ջանքերն ուղղել է ՍՄԿՊ XXII համագումարի կողմից գյուղի առջև դրված նոր, բարդ խնդիրների լուծմանը, որոնք պարզորոշ շարադրված են համագումարի որոշումներում և ՍՄԿՊ Ծրագրում։ Առաջադրված խնդիրներից գլխավորը գյուղատնտեսության էկո-

նոմիկայի այնպիսի մեծ չափերով զարգացումն է, որը հնարավորություն կտա ազգաբնակչությանը լիովին ապահովել առատ մթերքներով, իսկ արդյունաբերությանը՝ հումքով։ Դրա համար անհրաժեշտ է կատարելագործել կոլտնտեսային ու սովխոզային արտադրությունը, լայնորեն արմատավորել գիտության նվաճումներն ու առաջավոր փորձը, ռացիոնալ օգտագործել հողն ու տեխնիկան, ամեն կերպ բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը։

Լավ իմանալով այդ, արտադրական վարչություններում, կոլտնտեսություններում ու սովխոզներում աշխատող ինտելիգենցիան տնտեսությունների ղեկավարներին ու պարտիական կազմակերպություններին լուրջ օգնություն է ցույց տալիս հանրային բազմաճյուղ խոշոր տնտեսությունը հաշվենկատորեն վարելու համար։ Դրա հետ միասին նրանք կոլտնտեսականների ու սովխոզների բանվորների շրջանում լայնորեն պրոպագանդում են գիտության և տեխնիկայի նվաճումները։

Գյուղական ինտելիգենցիան աշխատավորներին ծանոթացնում է ոչ միայն գիտության ու տեխնիկայի նվաճումներին, գիտական հետազոտությունների արդյունքներին, այլև օգնում է արտադրության մեջ դրանց ներդրմանը։

Առանց ինտելիգենցիայի, առանց բարձրորակ մասնագետ կադրերի այժմ հնարավոր չէ կազմակերպել ու առաջ տանել արտադրությունը, ռացիոնալ օգտագործել անընդհատ հոսանքով գյուղ մուտք գործող մեքենաներն ու ագրեգատները, որոնք իրենց տեսակներով դառնում են բազմազան, կառուցվածքով՝ բարդ։ Դրանք լայն չափերով թափանցում են հանրային տնտեսության բոլոր ճյուղերը, կրճատում ձեռքի ծանր աշխատանքը, բարձրացնում արտադրության կուլտուրան ու աշխատանքի արտադրողականությունը։

Մեքենաները գործի են դնում մարդիկ, կադրերը, որոնցից առավել մեծ անելիքներ ունեն ինժեներներն ու մեխանիկները։ Տեխնիկայի խնամքին ու ռացիոնալ օգտագործմանը հետևելով հանդերձ, նրանք հաճախ համարձակ քայլերի են դիմում՝ մեքենայացնելու մի շարք այնպիսի ծանր աշխատանքներ, որոնք առհասարակ ձեռքով են կատարվում և մեծ ծախսեր պահանջում։ Դա, իհարկե, դժվար է։ Բայց գյուղական շատ մասնագետներ, վստահ իրենց ուժերին, հենց դժվար տեղից էլ սկսում են գործը։

Այդպիսի դժվար, բայց խիստ օգտակար գործ է ձեռնարկել Իջևանի արտադրական վարչության ինժեներ-մեխանիկ Շ. Այվազյանը։ Երրորդ տարին է, ինչ նա համառորեն զբաղվում է ծխախոտի պլանտացիաների մշակությունը մեքենայացնելու խնդրով։ Այվազյանը գործը սկսել է Լալի-գյուղի կոլտնտեսությունում։ Այստեղ նա փորձեր է դրել, խորհրդակցել ծխախոտագործների, գյուղատնտեսի ու մեխանիզատորների հետ։ Վերջիններիս մասնակցությամբ նա վերափոխել է կուլտիվատորը, նրան ամրացրել է նոր հարմարանքներ, որոնց միջոցով հնարավոր է մեքենայացնել ծխախոտի պլանտացիայի միջշարային տարածությունները, նոր ձևով սնուցում տալ բույսերին։ Այդ միջոցառման շնորհիվ մեծ չափով կրճատվում է ձեռքի ծանր աշխատանքը։ Այսպես. մեկ հեկտար ծխախոտի պլանտացիան ձեռքով մշակելու դեպքում ծախսվում է 45 մարդ-օր և 55 աշխօր. մեքենայական մշակման դեպքում այդ ծախսերը 7—8 անգամ կրճատվում են, իսկ աշխատանքը կատարվում է արագ, ժամանակին ու որակով։ Եթե նկատի ունենանք այն, որ ծխախոտագործական խոշոր կոլտնտեսություններում աշխատող ձեռքերի մոտ 30—35 տոկոսը զբաղվում է այդ կուլտուրայի մշակությամբ, ապա պարզ



կդառնա, թե ընկ. Այվազյանի փորձի արմատավորումն ինչպիսի մեծ օգուտ կբերի հանրային տնտեսությանը։

Գյուղատնտեսության մասնագետներից շատերը աշխատանքի ընթացքում կոփվել ու դարձել են նաև լավ կազմակերպիչներ, որոնցից առավել պատրաստված ու պրակտիկայում փորձված բազմաթիվ ընկերներ առաջ են քաշվել որպես կոլտնտեսության նախագահներ ու սովխոզների դիրեկտորներ։ Նրանք, իբրև կանոն, հաջողությամբ են ղեկավարում հանրային տնտեսությունը և ապահովում նրա էկոնոմիկայի բուռն զարգացումը։ Ահա նրանցից մեկը՝ Հոկտեմբերյանի արտադրական վարչության Հոկտեմբեր գյուղի կոլտնտեսության նախագահ, ռեսպուբլիկայի վաստակավոր գյուղատնտես Ս. Խաչատրյանը, որի ղեկավարած խոշոր տնտեսությունն ընթանում է վերելքի ուղիով և տարեկան ստանում է մոտ մեկ միլիոն ռուբլու եկամուտ։

Գյուղատնտեսության բնագավառում աշխատող ինտելիգենցիան, պատվով կատարելով իր պարտքը հայրենիքի հանդեպ, իր ողջ գիտելիքները, ուժն ու եռանդը ի սպաս է դրել այն բոլոր խնդիրների իրագործմանը, որ կոլտնտեսությունների ու սովխոզների առջև դրել են պարտիան և նրա լենինյան Կենտկոմը։

***

Գյուղական ինտելիգենցիայի առավել մեծ մասն աշխատում է ոչ նյութական արտադրության ոլորտում—դպրոցներում, բուժմիավորումներում, կուլտուր-լուսավորական հիմնարկներում, սպորտային կամավոր ընկերություններում և այլ ասպարեզներում։ Նրա աշխատանքն ուղղված է սովետական մարդկանց կուլտուրական մակարդակի բարձրացմանն և առողջության ամրապնդմանը։

Պարտիան ու կառավարությունը հսկայական միջոցներ են հատկացնում գյուղում լուսավորության ու առողջապահության զարգացմանը, հոգատարությամբ շրջապատում այդ բնագավառներում աշխատող ինտելիգենցիային, որն այսօր մեծ թիվ է կազմում։ Այսպես. այժմ ռեսպուբլիկայի գյուղերում աշխատում են բարձրագույն կրթությամբ 407 բժիշկներ, իսկ միջին բուժանձնակազմի թիվը հասնում է 3255-ի։

Գյուղական բժշկի աշխատանքն ունի իր առանձնահատուկ կողմերը։ Գյուղում լինելով միակ մասնագետը, բոլոր դեպքերում, լինի ցերեկ թե գիշեր, նա է հիվանդին կամ պատահարից տուժողին առաջին օգնություն ցույց տվողը։ Քիչ չեն դեպքերը, երբ բժիշկը ծանր հիվանդի մոտ անքուն գիշերներ է անցկացրել, օրերով հանգիստ չի ունեցել, բայց փրկել է ամենաթանկագին բանը՝ մարդու կյանքը։ Զուր չէ, որ բժիշկը գյուղում ամենասիրված ու հարգված մարդկանցից է։

Սակայն գյուղի այսօրվա բժիշկը միայն սոսկ բուժող չէ. իր հիմնական աշխատանքի հետ միասին նա զբաղվում է նաև սանիտարական լուսավորության պրոպագանդայով, հետևում է գյուղի սանիտարական պայմանների բարելավմանը, մարդկանց կազմակերպում է՝ կանաչապատելու ու ծաղկապատելու բակերն ու փողոցները, առավել լավ ու առողջարար դարձնելու կենցաղային պայմանները։ Այդ ամենը մարդուն, ամենակարևոր արտադրողական

ուժին, դարձնում են առույգ ու առկուն. նա աշխատանքի է անցնում թարմացած, ուժերը վերականգնած։

Օրվա աշխատանքից հետո մարդը կարիք է զգում հանգստանալու և իր կուլտուրական պահանջները բավարարելու։ Այս գործում նրան օգնության են գալիս կուլտուր-լուսավորական հիմնարկները, որոնք կուլտուրական սպասարկման ու դաստիարակչական աշխատանքի հենակետեր են։ ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումը նշեց, որ նրանց գործունեության ուժը յուրաքանչյուր մարդու մտքի ու սրտի ճանապարհը գտնելու մեջ է։ Դրա համար նրանք գործադրում են բազմապիսի ձևեր ու մեթոդներ, կազմակերպում են բեմադրություններ, կինոնկարների ցուցադրումներ, ստեղծագործական երեկոներ, դասախոսություններ, զրույցներ և այլն։

Այդ միջոցառումների նախաձեռնողներն ու անցկացնողները կուլտուր-լուսավորական հիմնարկների աշխատողներն են, որոնց կատարած գործը դաստիարակչական մեծ նշանակություն ունի։ Դա կարող ենք ցույց տալ նրանցից մեկի՝ Ալավերդու շրջանի Ղաչաղան գյուղի գրադարանավար Հ. Սարգսյանի համեստ աշխատանքով։ Նա հաշվի է առնում տարբեր կրթությամբ ու տարբեր զբաղմունքի մարդկանց նախասիրությունները, նրանց հանձնարարում համապատասխան գրքեր, զրուցում հետաքրքրող հարցերի շուրջ, կազմակերպում նոր գրքերի քննարկումներ, ընթեցողների կոնֆերանսներ։ Ամռանը նա հաճախ լինում է գյուղից հեռու գտնվող յայլաներում, շրջիկ գրադարաններից գրքեր տալիս անասնապահներին ու կթվորներին, նյութեր հասցնում ագիտատորին։ Սրանք ոչ թե տեխնիկական, այլ գաղափարական աշխատանքի հարցեր են, որոնք առնչվում են նոր հասարակարգ կառուցող մարդկանց դաստիարակության հետ։

Գյուղում մեծ ու անգնահատելի աշխատանք են կատարում ուսուցիչները։ Նրանք մեր կենսախինդ պատանիներին ու աղջիկներին տալիս են գիտելիքներ, զինում կոմունիստական աշխարհայացքով ու պրակտիկ աշխատանքի հմտությամբ, ակտիվ մասնակցում են հասարակական ու քաղաքական կյանքին։ «Ժողովրդական ուսուցիչը,— ասել է Ն. Ս. Խրուշչովը,— պարտիայի գլխավոր հենարանն է ժողովրդի կուլտուրական վերելքի համար մղվող պայքարում, պարտիայի ամենամոտ օգնականն է նոր մարդու դաստիարակության գործում»։ Այդ բարձր գնահատականը ոգևորում է ուսուցիչներին, որոնք ազնիվ աշխատանքով արդարացնում են պարտիայի ու ժողովրդի հույսերը, պատվով կատարում իրենց առջև դրված խնդիրները։

Ներկայումս ռեսպուբլիկայի գյուղական բոլոր դպրոցներում աշխատում են 12.367 ուսուցիչներ։ Գյուղում մանկավարժական աշխատանքի են մեկնում բարձրագույն կրթությամբ նոր, երիտասարդ կադրեր, որոնք սիրում են իրենց գործը, սերտորեն կապվում աշակերտների հետ և նրանց տալիս խոր գիտելիքներ։ Իջևանի շրջանի Վ. Աղդան գյուղում բոլորը հիացմունքով են խոսում այդպիսի երիտասարդ ուսուցիչներից մեկի՝ Վ. Հախվերդյանի մասին։ Դպրոցում աշխատանքի անցնելու առաջին իսկ օրից նա լուրջ ջանքեր գործադրեց և մեկ տարվա ընթացքում մաթեմատիկայից աշակերտների առաջադիմությունը 50 տոկոսից հասցրեց 95 տոկոսի։ Շատ աշակերտներ այդ առարկայից ստացան 4 և 5 գնահատական ու երախտագիտությամբ լցվեցին իրենց երիտասարդ ուսուցչի նկատմամբ։

Դա եզակի երևույթ չէ։ Իրենց բեղմնավոր աշխատանքով և բարոյական



անաղարտությամբ մեծ հարգանք են վայելում Անիի շրջանի Սարատակ գյուղի դպրոցի դիրեկտոր Ա. Մկրտչյանը, Ստեփանավանի շրջանի Պրիվոլնի գյուղի դպրոցի ուսուցիչներ Գ. Եֆրեմովը, Ի. Ստորոժենկոն, Շամշադինի դպրոցի ուսուցիչ Ռ. Խաչատրյանը, Սպիտակի շրջանի Սարալ գյուղի դպրոցի ուսուցիչ Ս. Օսմանովը, Խնկոյան գյուղի դպրոցի ուսուցիչներ Գ. Ավետիսյանը, Ա. Հայկյանը և այսպես շատ-շատերը։

«Կոմունիզմի հաղթանակով,— ասված է ՍՄԿՊ Ծրագրում,— տեղի կունենա մտավոր և ֆիզիկական աշխատանքի օրգանական միացում մարդկանց արտադրական գործունեության մեջ։ Ինտելիգենցիան կդադարի սոցիալական առանձին խավ լինելուց, ֆիզիկական աշխատանք կատարողները իրենց կուլտուր-տեխնիկական մակարդակով կբարձրանան մտավոր աշխատանքի մարդկանց մակարդակին» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 484)։ Մեզ մոտ այդ պրոցեսն սկսված է և հաջողությամբ առաջ է գնում։ Դրա լավագույն ապացույցը բնակչության կրթական մակարդակի անընդհատ բարձրացումն է։ Այդ ուղղությամբ անգնահատելի գործ է կատարում սովետական ուսուցչությունը, այդ թվում և գյուղական ուսուցչությունը։ Նրա բազմավաստակ աշխատանքի և սովետական պետության հոգատարության շնորհիվ խոշոր առաջընթաց քայլ է կատարված գյուղական բնակչության կրթության ասպարեզում։ Այսպես. գյուղական բնակչության յուրաքանչյուր 1000 աշխատողից բարձրագույն, միջնակարգ և ոչ լրիվ միջնակարգ կրթություն ունեցողների թիվը 1959 թվականին, 1939 թվականի համեմատությամբ, ավելացել է 16,5 անգամ, այդ թվում տղամարդկանցը՝ ավելի քան 11,5 անգամ, կանանցը՝ 34,5 անգամ։

* * *

Մեր երկրում կոմունիզմի համար մղվող պայքարի բնագավառներից մեկը նոր մարդու դաստիարակումն է։ Այդ խնդրի լուծմանն են ուղղված պարտիայի ամբողջ գաղափարական աշխատանքը, հոգևոր ներգործության բոլոր միջոցները։ Գաղափարական աշխատանքում պարտիայի մոտիկ օգնականը ինտելիգենցիան է։ Դրա համար էլ ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշման մեջ ասված է.

«Պլենումը կարևոր նշանակություն է տալիս այն բանին, որ գաղափարական աշխատանքին մասնակցի ինտելիգենցիան՝ ուսուցիչները, դասախոսները, ինժեներա-տեխնիկական և գիտական աշխատողները, գյուղատնտեսները, բժիշկները, գրականության, արվեստի, մամուլի գործիչները։ Պարտիան սովետական ինտելիգենցիային կոչ է անում էլ ավելի ակտիվացնել ու բազմապատկել սովետական հասարակության հոգևոր հարստությունը, պարտիային օգնել ժողովրդի կոմունիստական աշխարհայացքի ձևավորման գործում»։

Ջերմորեն արձագանքելով պարտիայի կոչին, ինտելիգենցիան սկսել է ավելի ակտիվ մասնակցություն ցույց տալ գաղափարական աշխատանքին։ Նրա բազմաթիվ առաջավոր ներկայացուցիչներ հասարակական կարգով հանդես են գալիս որպես պրոպագանդիստներ, ագիտատորներ, պատի թերթի խմբագիրներ, քաղլուս տների մեթոդիստներ, սեմինարավարներ, գեղարվեստական ինքնագործ խմբերի ղեկավարներ և այլն։ Միայն Հոկտեմբերյանի ու Սպիտակի շրջանների ուսուցիչներից 220 հոգի պրոպագանդիստներ են։

Շատ պրոպագանդիստներ, կոնսուլտանտներ ու սեմինարավարներ կան նաև գյուղական մյուս շրջանների ուսուցիչներից, գյուղատնտեսներից, բժիշկներից, զոոտեխնիկներից և այլ մասնագետներից, որոնք պարտիական կազմակերպություններին օգնում են կադրերին զինելու մարքսիզմ-լենինիզմով, նրանց լայնորեն պարզաբանելու ՍՍՌՄ ներքին ու արտաքին քաղաքականության հարցերը, գյուղի աշխատավորների առջև դրված խնդիրները։

Սերտորեն կապված լինելով կոլտնտեսականների, սովխոզների բանվորների, ծառայողների, գյուղի մեր բոլոր աշխատողների հետ, իդեական-դաստիարակչական աշխատանքում ընդգրկված ինտելիգենցիան յուրաքանչյուր աշխատողի օգնում է գաղափարապես կոփվելու, կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի սկզբունքները հետևողականորեն կենսագործելու։ Նա ձգտում է, որպեսզի գաղափարական աշխատանքը ծառայի արտադրության բարձրացմանը, ամրապնդի ու զարգացնի կոլեկտիվիզմը, ընկերական փոխօգնությունն ու բարեկամությունը, ավելի ուժեղացնի հայրենասիրությունը և սովետական բոլոր մարդկանց մեջ սեր հարուցի հանրօգուտ աշխատանքի նկատմամբ։

Նոր մարդու դաստիարակության գործում որոշակի դեր է խաղում անձնական օրինակը։ Նա, ով գաղափարական է, աշխատանքում բարեխիղճ ու կարգապահ, միշտ էլ օրինակ է հանդիսանում շրջապատի մարդկանց և աշխատանքային կոլեկտիվի անդամների համար։ Այդպիսի հրաշալի շատ մարդկանց ենք մենք հանդիպում նաև գյուղական ինտելիգենցիայի շարքերում, որոնք իրենց բարոյական վեհ կերպարով նվաճում են մարդկանց և նրանց մեջ զարգացնում լավագույն գծեր։ Որքա՜ն այդպիսի ուսուցիչներ ու ուսուցչուհիներ, բժիշկներ ու բժշկուհիներ, գյուղատնտեսներ ու գյուղատնտեսուհիներ և այլ մասնագետներ կան, որոնց գյուղացիները՝ պատանիներից սկսած մինչև ծերունիները, համարում են իրենց հարազատ ընկերը, բարեկամն ու խորհրդատուն։

***

Գյուղում ինտելիգենցիան մեծ ուժ է և այն պետք է օգտագործվի իր ամբողջ կարողությամբ։ Դրա համար անհրաժեշտ է, որ արտադրական վարչությունների պարտիական կոմիտեները և սկզբնական կազմակերպությունները ուժեղացնեն ինտելիգենցիայի շրջանում տարվող աշխատանքը, սիստեմատիկաբար օգնեն նրան՝ տեսական խոր գիտելիքներ ձեռք բերելու, իր մասնագիտության գծով որակավորվելու և հասարակական-քաղաքական կյանքին ավելի ակտիվորեն մասնակցելու։

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումից հետո այդ ուղղությամբ մի շարք պարտիական կոմիտեներ ու կազմակերպություններ քիչ աշխատանք չեն կատարում. նրանք սկսել են ավելի մոտիկից կապվել ինտելիգենցիայի հետ, արտադրության մեջ ու գաղափարական աշխատանքում բարձրացնել նրա դերը։ Ճիշտ են վարվում այն պարտիական կազմակերպությունները, որոնք հաճախ խորհրդակցում են ինտելիգենցիայի հետ, նրան մասնակից դարձնում քննարկվող հարցերի նախապատրաստմանը և այնպես անում, որ յուրաքանչյուր ինտելիգենտ անմասն չմնա հասարակական հանրօգուտ աշխատանքից, իր ուժերը ներածին չափ օգնի տնտեսական ու կուլտուրական շինարարության խնդիրների կատարմանը։



Ինտելիգենցիայի հետ կատարվող աշխատանքում մի շարք պարտիական կազմակերպություններ հատուկ տեղ են տալիս բարոյական գործոնին՝ խրախուսում ու մեծարում են առաջավոր աշխատողներին, բարձրացնում նրանց փառքն ու պատիվը։ Այս առումով դրական օրինակ է Նոյեմբերյանի շրջանում վերջերս անցկացված ուսուցչի մեծարման օրը։ Այդ օրը ավելի քան 250 ուսուցիչներ հանդիպում ունեցան պարտիական ու սովետական ղեկավար աշխատողների հետ, դիտեցին իրենց համար կազմակերպված ցուցահանդեսը, զեկուցումներ լսեցին ներկա էտապում սովետական ուսուցչության խնդիրների մասին, ներկա եղան Երևանի պետօպերայի և հայֆիլհարմոնիայի արտիստների տված ճոխ համերգին։ Նրանց հավաքում հրապարակվեց շրջսովետի գործկոմի որոշումը՝ մի խումբ ուսուցիչների պատվոգրերով պարգևատրելու մասին։

Այդպիսի հետաքրքրական միջոցառումներ են անցկացվում նաև ռեսպուբլիկայի մյուս շրջաններում։

Այդ բոլորը, ինչ խոսք, լավ է։ Բայց դրանով ամեն ինչ չի վերջանում։ Ինտելիգենցիայի շրջանում պետք է ավելի խոր ու շերտավորված աշխատանք կատարել, հետաքրքրվել նրանցից յուրաքանչյուրի կյանքով ու գործունեությամբ, իմանալ նրա նախասիրությունը, ձգտումներն ու խոհերը։ Այս հանգամանքի վրա առանձին պարտիական կոմիտեներ դեռևս լուրջ ուշադրություն չեն դարձնում և ինտելիգենցիայի շրջանում կատարված աշխատանքը սահմանափակում են միայն արտադրական վարչության մասշտաբով գումարվող ընդհանուր խորհրդակցություններով ու հավաքներով։

Ինչ խոսք, որ հավաքներին ու խորհրդակցություններին ինտելիգենցիան նույնպես պետք է մասնակցի և դա անհրաժեշտ է։ Բայց որքա՜ն լավ կլինի, որ հրավիրվեն նաև գյուղատնտեսների, զոոտեխնիկների, անասնաբույժների, ինժեներ-մեխանիկների առանձին խորհրդակցություններ և սրտաբաց զրույց ունենալ նրանց աշխատանքի ուրույն հարցերի մասին, ծանոթանալ նրանց գործունեությանը, իմանալ, թե ով ինչ կոնկրետ հարցով է զբաղված, ինչ նոր բան է ձեռնարկում կամ ինչ առաջարկներ ունի աշխատանքի կատարելագործման, գիտության նվաճումների և առաջավոր փորձի արմատավորման և այլ հարցերի առթիվ։

Մի՞թե անհրաժեշտ չէ, որ պարտիական կոմիտեի ընկերները տեղում մանրամասն ծանոթանան, ասենք, զոոտեխնիկի աշխատանքին և իմանան, թե նա ինչպես է հետևում զոոկանոնների պահպանմանը, աշխատանքի ինչպիսի ռեժիմ ունի, ինչ է անում անասնաբուծության կուլտուրան բարձրացնելու համար, արդյոք ֆերմայի վարիչի հետ հաշվում է, թե ծախսված կերի միավորների դիմաց որքան կաթ ու միս է արտադրվել, կամ ինչպիսի դժվարությունների է հանդիպում, ինչ օգնության կարիք ունի և այլն։ Այդպես խոր կերպով պետք է ուսումնասիրել ամեն մի մասնագետի գործունեությունը, ճիշտ կողմնորոշել նրան և օգնել՝ արդյունավետ աշխատելու։ Ցավոք, այսպես չեն վարվում Հոկտեմբերյանի, Էջմիածնի, Արտաշատի արտադրական վարչությունների պարտիական կոմիտեները։ Նրանք ինչպես հարկն է չեն ուսումնասիրում ինտելիգենցիայի աշխատանքը, բարոյապես չեն խրախուսում նրանցից առաջավորներին, որոնց աշխատանքի դրական փորձը հարկ է տարածել այնպես, ինչպես տարածում են արտադրության առաջավորների փորձը։

Մեր գյուղական ինտելիգենցիան, իր ամբողջ կազմով վերցված, աշխատասեր մի համերաշխ կոլեկտիվ է։ Բայց նրա շարքերում կան առանձին մարդիկ, որոնք երբեմն զբաղվում են անձնական գծում հարցերով, մոռանում են իրենց կոչումը և թերանում աշխատանքում։ Աշտարակի արտադրական վարչության Օշականի կոլտնտեսության պարտիական կազմակերպության հաշվետու-ընտրական ժողովում դառն խոսքեր ասվեցին կոլտնտեսության զոոտեխնիկ Վ. Ամատունու և անասնաբույժ Վ. Բաղդասարյանի հասցեին, որոնք աշխատանքում ցուցաբերում են անճարակություն ու անպատասխանատվություն։

Այդպիսի մասնագետներին պետք է քննադատել, ցույց տալ նրանց թերությունններն ու վրիպումները, հանձնարարված գործի նկատմամբ բարձրացնել պատասխանատվությունը։

Գյուղական ինտելիգենցիայից բազմաթիվ ընկերներ տարբեր հարցերի շուրջը հաճախ հանդես են գալիս առաջարկություններով, կոնկրետ միջոցառումներ են նշում աշխատանքի հնացած ձևերը փոխելու, արտադրությունը կատարելագործելու, սովետական մարդկանց սպասարկումը բարձրացնելու նպատակով։ Այդ ամենը պետք է խրախուսել և նրանց առաջարկություններից ընդունել իրոք օգտակարը, արժեքավորը։ Բայց դեռևս կան առանձին ղեկավար ընկերներ, որոնք այդպես չեն վարվում. նրանք անտեսում են ներքևից եկող առաջարկությունները և դրանով իսկ կաշկանդում մարդկանց ստեղծագործական նախաձեռնությունը։

Կան նաև այնպիսի փաստեր, երբ առանձին տեղերում համապատասխան պայմաններ չեն ստեղծում ինտելիգենտի նորմալ աշխատանքի համար։ Ինչ կարող է անել Սևանի շրջանի Ծովագյուղի գրադարանի վարիչը, երբ գրադարանը տեղավորված է վատ շենքում, երբ անձրևային օրերին ջուրը առաստաղից հոսում է ներս, փչացնում գրքերը։ Գրադարանավարների աշխատանքի համար նորմալ պայմաններ չկան նաև Մարտունու, Սպիտակի, Նոյեմբերյանի, Եղեգնաձորի առանձին գյուղերում։

Արտադրական վարչությունների պարտիական կոմիտեներն ու սկզբնական պարտիական կազմակերպությունները, սովետական օրգանները պետք է առանձնահատուկ ուշադրություն նվիրեն ինտելիգենցիայի շրջանում կատարվող աշխատանքի վրա, տնտեսական ու կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում բարձրացնեն նրա դերն ու պատասխանատվությունը։ Նրանք միաժամանակ պետք է ամենօրյա հոգատարությամբ շրջապատեն ինտելիգենցիային և նրա համար ստեղծեն աշխատանքային ու կուլտուր-կենցաղային լավագույն պայմաններ։

# ՕԳՏԱԿԱՐ ԲԱՆԱՎԵՃ

Մեր ամսագրի անցյալ տարվա 11-րդ համարում հրապարակեցինք մանկավարժական գիտությունների թեկնածու Ս. Խուդոյանի՝ Ջկաշկանդենք ուսուցչին խորագրով հոդվածը։ Ինչպես պետք էր սպասել, այն պատշաճ արձագանք գտավ ուսուցչական շրջաններում։ Ստացված բազմաթիվ հոդվածներն ու թղթակցությունները (որոնց մեծ մասը տպագրվեց ամսագրում) մի անգամ ևս վկայում են այն մասին, որ շոշափված հարցը խիստ այժմեական էր ու կենսահույզ։ Տպագրված և անտիպ նյութերի ուսումնասիրությունը խոսում է այն մասին, որ իր վերակառուցման ճանապարհին սովետական դպրոցն ունի բազմաթիվ չլուծված հարցեր, հարցեր, որոնք առաջացել են մեր երկրի սոցիալ-տնտեսական ու կուլտուրական մեծ առաջընթացի հետևանքով։

Խմբագրությունը գոհունակությամբ է նշում, որ վիճաբանությանը մասնակցող համարյա բոլոր մանկավարժները, հիմնականում համամիտ լինելով ընկ. Ս. Խուդոյանի արծարծած մտքերին, իրենք ևս բավական ցայտուն ձևերով հանդես բերին նորի զգացումը։ Միաժամանակ այդ բանավեճից երևաց որոշ մանկավարժների մտքի աղքատությունը և մեծ պրոբլեմների ըմբռնման, հաճախ նույնիսկ կռահման անկարողությունը։ Ինչևիցե։ Մեր դպրոցն ընթանում է վերելքի ճանապարհով, և նրա մշակները, հանձին մասսայական ուսուցիչների, ձգտում են նոր մեթոդներ և ուղիներ գտնել դպրոցը կյանքի հետ կապելու նպատակով։

Ընկ. Ս. Խուդոյանի հոդվածի արժանիքն այն էր, որ նա համարձակ կերպով և բավականին հիմնավոր փաստարկներով առաջ քաշեց սովետական դպրոցի առջև ծառացած մի կարևոր հարց՝ ուսուցչի ինքնուրույնության հարցը։ Նա միանգամայն իրավացի էր, երբ նշում էր, որ ուսման որակի բարձրացման խնդիրը կարող է լուծվել այն դեպքում, երբ ուսուցիչը ստեղծագործաբար կիրառի իր գիտելիքները և լուսավորության մինիստրության մշակած ծրագրերն ու հրահանգները։

Այո՛, արմատապես փոխվել ու փոխվում են ուսուցման և դաստիարակության պայմանները սովետական իրականության մեջ։ Աշակերտությունն այսօր բազմաթիվ կանալներով ներգրավվում է հասարակական եռուզեռի մեջ։ Այսօրվա տասը տարեկան աշակերտը շատ բաներով է տարբերվում մոտիկ անցյալի նույն տարիքի աշակերտից։ Այդ տարբերությունը աչքի է զարնում ո՛չ միայն նրա պահանջների բարդությամբ և բազմապիսությամբ, այլև նոր բնույթով։ Անցյալում, ընտանիքում ծնողների ու զավակների միջև ընդհարում չէր կարող լինել կինո, ռադիո, հեռուստատեսություն դիտելու և լսելու համար։ Ժամանակակից մամուլի, արվեստի, ցուցահանդեսների, հասարակական զբ-

վարճանքների դռները լայնորեն բաց են պատանեկության առաջ։ Դպրոցում սովորող և մինչև այդ ընտանիքում դաստիարակվող պատանին շատ բան է սովորում հասարակական կյանքից, ազդվում նրանից։

Գնալով հասարակական կյանքի գործոնը վճռական դեր է խաղում ամբողջ մատաղ սերնդի դաստիարակության և կրթության գործում. ընդգծում ենք, նաև կրթության գործում։ Պարզ թյուրիմացություն է կարծել, որ մեր օրերի աշակերտը բավականանում է միայն դպրոցում ձեռք բերած գիտելիքներով։ Որքան զարգանում է և ծաղկում ժամանակակից սոցիալական կյանքը, այնքան արագ են աճում պատանիների հետաքրքրասիրությունները, կյանքի գաղտնիքներն իմանալու նրանց այրող ծարավը։ Այսօր մանուկների վառ երևակայությունը հաճախ հագուրդ է գտնում մեր հոգեկան աշխարհն ակամա ներխուժած արտաքին գործոններից։ Այս մեծագույն փոփոխությունն իր առարկայացած արդյունքներով ուղղակի հակադրվում է գոյություն ունեցող դպրոցական հնացած կանոններին ու որոշ ուսուցիչների սահմանափակ գիտելիքներին։

Սովետական մանկավարժներին և բոլորին այսօր հուզում են կրթության արմատական հարցերը, որոնց լուծումից կախված է նոր մարդու դաստիարակության հաջողությունը։ Ամենքին հայտնի է, որ դպրոցական ուսումնական ծրագրերն իրենց ծավալով շատ ավելի ընդարձակ են, քան սովորողների տրամադրության տակ եղած հնարավորությունները ժամանակի իմաստով։ Եթե որևէ մեկը փորձի հաշվել, թե ամեն օր դպրոցական աշակերտը քանի էջ պետք է կարդա հանձնարարված դասերը պատրաստելու համար, քանի ժամ պետք է գործադրի տրված հանձնարարությունները կատարելու համար, ապա նա չի կարող չզարմանալ այն հանգամանքի վրա, որ հասարակական պարտականությունների, խաղի և այլ ժամանցների համար հաճախ պատանիները զուրկ են տարրական հնարավորություններից։ Գաղտնիք չէ, որ ուսման բեռը պատանեկության զգալի մասին զրկում է խաղալու և սպորտի սիստեմատիկ հաճույքից։ Հասարակական կազմակերպությունների հրապուրիչ գործունեությունը հաճախ դպրոցական տաղտկալի դասարանից դուրս է կանչում աշակերտներին։

Այսպիսով նորանոր հակասություններ են ծագում ուսուցչի առջև, որը եթե չկարողանա կողմնորոշվել ժամանակակից կյանքի բարդ ոլորտներում, իհարկե, միայն ծրագրերը և լավ հրահանգները գործին օգնել չեն կարող։ Այս առումով ընկ. Ս. Խուդոյանը միանգամայն իրավացի է, երբ պահանջում է հրաժարվել դաստիարակության ու կրթության այն մեթոդներից, որոնք արդյունավետ չեն։ Իսկապես, նո՛ր կյանքը, նո՛ր մարդու դաստիարակությունը հարուցում են կրթության և պատանու ձևավորման նո՛ր մեթոդների ու պրիոմների ստեղծման ու գործադրման հարցը։

Այժմ մանկավարժության տեսակետից միանգամայն նոր ձևով և նոր բովանդակությամբ է առաջադրվում ճարակից գիտությունների դասավանդման հարցը։ Հայտնի է, որ վերջին տասնամյակում հասարակական կյանք են ներխուժել բոլորովին նոր դիսցիպլիններ։ Առանց մաթեմատիկական լոգիկայի, կիբեռնետիկայի, մաթեմատիկական տնտեսագիտության, ատոմագիտության և այլն, հնարավոր չէ որակյալ կադրեր պատրաստել։ Ինքնին հասկանալի է, որ նորագույն գիտությունների նվաճումներն այս կամ այն չափով պետք է իրենց արտացոլումը գտնեն դպրոցական ծրագրերում։ Դա չի կարող լինել



ուսման տևողության երկարացման միջոցով։ Վաղ թե ուշ հեռուստացույցը պետք է դառնա սիստեմատիկ կրթության լսարան։ Այդ պահանջում է բեռնաթափել դպրոցական ծրագրերն ու դասագրքերն այն ամենից, ինչ անմիջականորեն չի նպաստում նոր մարդու գիտելիքների խորացմանը։

Գիտական աշխարհի ռևոլյուցիան, որը տեղի է ունենում կոմունիստական շինարարության հարուստ բազայի հիման վրա, արմատական և բարդ խնդիրներ է հարուցում սովետական ուսուցչի առջև։ Ով յուրաքանչյուր փորձված մանկավարժ չի կարող չզգալ, որ շատ դժվար է հասնել գիտության ընթացքին։ Էլ ուր մնաց, որ պատանիները տասը տարվա ընթացքում համառոտակի յուրացնեն այն վիթխարի նյութը, որը դարերով կուտակել է մարդկային միտքը։

Ի դեպ, ընկ. Ս. Խուդոյանին հակաճառողներ ընկ.ընկ. Հ. Գասպարյանը, Հ. Մխիթարյանը բավականին պարզունակ պատկերացում ունեն այն բարդ ու դժվարին խնդիրների մասին, որպիսիք ծառացել են սովետական մանկավարժների առջև։ Այլ կերպ այդ ընկերներն անհիմն կերպով չէին փորձի ընկ. Ս. Խուդոյանին կշտամբել այնպիսի մի անհեթեթ «եզրակացությամբ», թե իբր նա «մեր դպրոցի ոգուն խորթ և վնասակար առաջարկություններ» է արել։ Անաչառության դեպքում դժվար չէ նկատել, որ ընկ. Ս. Խուդոյանի հոդվածում վնասակարության ստվերն անգամ չկա։ Ընդհակառակը, ուսուցչի ինքնազարգացման, ինքնագործունեության, նրա աշխարհայացքի և ինքնուրույնության հարցերը անհամեմատ հրատապ են, քան կարծում են նրանք։

Անհերքելի է, որ դասավանդման, մեթոդիկայի, վերահսկողության, ծրագրերի, աշակերտների գնահատման և այլ բնագավառներում առկա են մեր դպրոցի առաջխաղացմանը խանգարող մի շարք մեռած ձևեր և «ակադեմիական» բնույթի դոգմաներ։ Եթե տեսուչն իր դպրոց մտնելով տագնապ է հարուցում ուսուցիչների հոգում, եթե աշակերտների գնահատման գործում զգալի դեր են խաղում սուբյեկտիվ և վարչական գործոնները, եթե ուսման և առաջադիմության հարցերը որոշվում են ի վերջո ձայների մեծամասնությամբ, եթե որոշ ուսուցիչներ դպրոցական ծրագիրը համարում են լոկ պարտադիր փաստաթուղթ, որով միայն պետք է ղեկավարվեն, այս ամենը չե՞ն խոսում այն մասին, որ իսկապես մեր դպրոցի առաջխաղացման այս տարիներին կուտակվել են հարցեր, որոնք իրենց լուծումն են պահանջում։ Իսկ այդ լուծումն իր հիմնական կողմերից մեկով սերտորեն առնչվում է ուսուցչի գաղափարական, գիտա-բարոյական կերպարի հետ։

Հիրավի, ի՞նչ է պահանջվում այսօր սովետական ուսուցչից։ Նախ և առաջ՝ գիտելիքների մեծ պաշար և ավելի մեծ մտահորիզոն, քան սրանից երկու տասնամյակ առաջ։ Իսկ այդ ինքնին թելադրում է ուսուցչին ճիգերի մեծ լարում։ Իսկական մանկավարժն այժմ հանգստի քիչ ժամանակ ունի։ Եթե նա նվիրված մանկավարժ է և գիտության ներկայացուցիչը պատանիների շրջանում, ապա իր աշխատանքում նա այրվում է հերոսաբար և դա մեր հասարակությունը գնահատում է որպես մեծ անձնազոհություն։ Սակայն դա հարցի մի կողմն է միայն։

Բանն այն է, որ լավագույն ուսուցիչներն անգամ հաճախ իրենց կիրառած կրթության ու դաստիարակության մեթոդներով միշտ չէ, որ առաջադիմական են։ Ուսուցչի պրոֆեսիոնալ հոգեբանության վտանգավոր կողմերից մեկն էլ այն է, որ նա տարիների ընթացքում մերվելով իր դերի հետ, սկսում է իրեն

պատկերացնել լոկ որպես ուսուցող: Նա մոռանում է, որ ինքը մինչև կյանքի
վերջը պարտավոր է ուսանել, ուսումնասիրել, որովհետև ուսուցանել և մնալ
գիտելիքների նույն մակարդակին, նշանակում է կասեցնել մատաղ սերնդի
զարգացման գործը:

Մեր կարծիքով, ուսուցիչը որքան տալիս է աշակերտներին, դրանից մի
քանի անգամ ավելի շատ պետք է վերցնի զարգացող գիտությունից և փոփոխ-
վող կյանքից: Տեղում դոփելն ուսուցչի համար մահ է: Եվ պատահական չէ,
որ սովետական բազմահազար լավագույն ուսուցիչներ իրենց հաջողություննե-
րով նախ և առաջ պարտական են սեփական աշխատասիրությանն ու գիտելիք-
ների անվերջ կուտակմանը: Գիտելիքների կուտակման այդ պրոցեսը մշտա-
պես նպաստում է ուսուցչի հեղինակության ամրապնդմանը և դառնում նրա
հոգեկան հաճույքի աղբյուրներից մեկը: Այս առումով պարզ է, որ ամեն տե-
սակի կաշկանդումներ կարող են խանգարել և իրոք խանգարում են ուսուցչի
ստեղծագործական աճին: Որ մեր որոշ հրահանգներ և դպրոցական ծրագրեր
զերծ չեն քարացած նյութերից, այդ անհերքելի է: Այդպիսիք կարելի է վերաց-
նել հարցերի ստեղծագործական քննարկմամբ և կոլեկտիվ ջանքերով:

Այո՛, հասել է ժամանակը, որպեսզի ուսուցիչը խոր գիտակցությամբ
ըմբռնի և ինքնուրույն կերպով կիրառի լուսավորության մինիստրության այն
հրահանգներն ու ծրագրերը, որոնք նրա համար պարտադիր են: Դեռ Լենինը
ժամանակին նկատել է, որ յուրաքանչյուր դպրոցի գործունեության բովանդա-
կությունը նախ և առաջ պայմանավորված է ուսուցչի գաղափարական և գի-
տա-բարոյական արժանիքներով: Հետևաբար, կյանքի կոչելով ուսուցչի ստեղ-
ծագործական պոտենցիալ կարողությունները, հնարավորություն տալով նրան
գիտակցորեն ինքնուրույնություն դրսևորելու իր գործունեության ընթացքում,
մենք կհասնենք ուսուցման որակի արմատական բարձրացման: Այս չի նշա-
նակում, թե դպրոցական ծրագրերը և լուսավորության մինիստրության հրա-
հանգներն անհրաժեշտ չեն: Դրանք անհրաժեշտ են և պետք են:

Ընկեր Ս. Խուդոյանն այդ հարցին անդրադառնալիս խոսում է այն մասին,
որ այստեղ պետք է հաղթահարվի անձի պաշտամունքի ժամանակից մնացած
վարչարարության տարրը: Նա բնավ հարցը չի դնում այնպես, թե ամեն մի
ուսուցիչ կարող է դասավանդման ընթացքում թույլ տալ ինքնագլխություն:
Վերջինս խիստ տարբեր է ինքնուրույնությունից: Լինել ինքնուրույն, նշանա-
կում է ստեղծագործաբար մոտենալ ղեկավար սկզբունքներին և հրահանգնե-
րին: Լինել ինքնագլուխ, նշանակում է անտեսել կուտակված մանկավարժական
դրական փորձը և անտեղի ուժեր վատնել նպատակին հասնելու համար:

Նկատի առնելով այն հանգամանքը, որ ընկ. Ս. Խուդոյանի հոդվածում
ուսուցչի դերը քննարկված է լոկ մի տեսանկյունով, մենք անհրաժեշտ համա-
րեցինք մի այլ առումով ևս անդրադառնալ ուսուցչի՝ դպրոցում ունեցած հույժ
պատասխանատու դերին: Եվ ահա այդ նպատակով սույն թվականի փետրվար
ամսին հրապարակեցինք Վ. Ադամյանցի՝ «Ուսուցիչը և դպրոցը» հոդվածը, ուր
նա միանգամայն ճիշտ կերպով բարձրացրել է սովետական ուսուցչի առջև
ծառացած ստեղծագործական բնույթի մի շարք էական հարցեր:

Հիրավի, ուսուցիչը դպրոցում միայն կրթող չէ: Նա, միաժամանակ, դաս-
տիարակ է, լավագույն մարդու կենդանի օրինակ: Սակայն դեռևս հաղթահար-
ված չէ ուսուցման և դաստիարակության որոշակի խզումը: Ուսուցչի անձնա-
կան կերպարն իր կնիքն է դնում մանկական անբիծ հոգիների վրա: Յուրա-



քանչյուր պատանի իր կյանքի ընթացքում այս կամ այն չափով ազդվում է
իր ուսուցիչներից, ձգտում է նմանվել նրանց: Հաճախ այդ ազդեցությունը
մնում է մինչև կյանքի վերջը: Այս հանգամանքը ևս հարկադրում է ուսուցչին
մշտապես լինել հասարակության առաջավորների շարքերում: Գիտելիքների
հարստությունը բավական չէ մանկական աշխարհը վարելու համար: Անհրա-
ժեշտ է և հմայիչ հոգեկան կերտվածք, օրինակելի վարքագիծ, մանկավարժա-
կան հկուն տակտ, ապագա մարդկանց հոգեկան աշխարհի խորիմացություն և
բոլոր հանգամանքներում՝ ինքնուրույն կողմնորոշվելու կարողություն:

Մեր օրերում ժողովրդական ուսուցիչը պարտիայի հուսատու հենարանն է
ժողովրդի կուլտուրական վերելքի համար մղվող պայքարում, պարտիայի ամե-
նամոտ օգնականը նոր մարդու դաստիարակության գործում: Այսպիսով, մեր
օրերի ուսուցչի բեռը խիստ ծանր է: Նրա աշխատանքը գնալով բարդանում է,
որովհետև հասարակական կյանքի դաստիարակչական գործոնները բազմաթիվ
եղանակներով ներգործում են երիտասարդ սերնդի հոգեկան աշխարհի վրա:
Ըմբռնել հասարակական կյանքի պահանջը, որսալ նրա զարգացման առողջ
տենդենցը, ձերբազերծվել գրքերի քարացած դրույթներից, դյուրին չէ: Բայց
դրան պետք է ձգտել:

Քանի որ մանկավարժ լինելն այնպիսի մի ձիրք է, ինչպես նկարիչ, երա-
ժիշտ, գրող կամ քանդակագործ լինելը, ապա մանկավարժական կադրերի
ինքնուրույնության հարցը խիստ կարևոր է: Եթե մանկավարժն իր գործունեու-
թյան ընթացքում որևէ չափով դադարում է իր այդ ձիրքը կատարելագործե-
լուց, նա պարտություն է կրում մանկական աշխարհում:

Ընկ. Ս. Խուդոյանին առարկողները հար պնդում են, թե պետական ծրա-
գրերն ու հրահանգները պարտադիր են ուսուցիչների համար: Որ դրանք պար-
տադիր են, դա վեր է կասկածից: Բայց որ դրանք ևս զերծ չեն արատներից և
պետք է կիրառվեն ստեղծագործաբար, մանկավարժորեն, դա էլ անհրա-
ժեշտ է: Հիրավի, Դ. Օյստրախը, Է. Գիլելսը, Մ. Աբրահամյանը, Ջ. Պետրոս-
յանը, Վան Կլայբերնը, Բեթհովենի, Չայկովսկու, Շուբերտի ստեղծագործու-
թյունները կատարելիս, յուրաքանչյուրն այն կատարում է խիստ յուրովի և
միայն իրեն հատուկ եղանակով ու ոճով: Ոչ ոք չի ասում սովետական
ուսուցչին, որ նա ամեն առարկայի գծով ունենա իր ուրույն ծրագիրը՝ պետա-
կանից տարբեր: Բայց դպրոցական ծրագրերը և հրահանգները մշակելիս, ինչ-
պես և կիրառելիս, պետք է նկատի առնվի այն հանգամանքը, որ ուսուցիչը
կենդանի անձնավորություն է և իրավունք ունի յուրովի ընկալելու ու կիրառե-
լու սահմանված ծրագրի ոգին:

Փորձված և խելոք ուսուցիչը միշտ էլ կարող է հանդես բերել լիակատար
նախաձեռնություն և ինքնուրույնություն, եթե նա ծրագրին ու հրահանգին մո-
տենում է մանկավարժական ընդհանուր փորձից ելնելով: Դպրոցական ծրա-
գրերը և հրահանգները մեխանիկորեն կիրառում են այն ուսուցիչները, որոնք
դրանց վրա նայում են դոգմատիկորեն: Դոգմաների հաղթահարումը ենթա-
դրում է հոգու ազատ ստեղծագործություն, բայց ոչ երբեք անարխիկ գործու-
նեություն: Չէ՛ որ ուսուցչական կոլեկտիվում չափից ավելի և հիվանդոտ ինք-
նագլխությունը միշտ էլ կասեցվում է կոլեկտիվի կողմից, կամ ավելի փորձ-
ված մանկավարժների միջամտությամբ: Հարցի էությունն այն է, որ զարգաց-
ման ներկա շրջանում ուսուցչի ստեղծագործական պոտենցիայի ձերբազերծու-
մը մեծապես կնպաստի ուսուցման որակի բարձրացմանը:

Դպրոցական ծրագրերը և լուսավորության մինիստրության հրահանգները ըստ էության դպրոցական կյանքի ընդերքում կուտակված ուսուցչական կոլեկտիվի երկարատև փորձի մարմնացումն են։ Ճիշտ է, այդ փորձը մշտապես զգալիորեն վերամշակվում ու թորվում է վերադաս օրգաններում գործող մանկավարժների կողմից, բայց և այնպես այն գալիս է պրակտիկայից։ Դպրոցական ծրագրերում և վերադաս օրգանների հրահանգներում տեղ գտած քարացած և անկենսունակ տարրերը նմանապես առնված են ժամանակի մանկավարժական պրակտիկայից։ Ամբողջ խնդիրն այն է, որ, գիտակցելով դրանց անկենսունակությունը, ուսուցիչը պետք է համարձակություն և ակտիվություն հանդես բերի՝ հաղթահարելու դրանք։ Յուրաքանչյուր աշակերտի և պատանեկան կոլեկտիվի առանձնահատկությունները միշտ աչքի առաջ ունենալը դրականորեն կանդրադառնա ծրագրված նյութի յուրացման վրա։ Ուսուցիչը, որպես կոմունիստական գաղափարների ու գիտության պատվաստող, միշտ էլ լայն հնարավորություններ ունի ստեղծագործաբար ավանդելու իր գիտելիքները։ Իրենց սպառած կամ մանկավարժական ձիրքից զուրկ դասատուներն են, որ դասաժամերի թվաբանական գումարումների մեջ որոնում են ուսուցման խորագույն իմաստը։

Ճիշտ այդպես էլ պետք է վերառնել ուսուցչի գործունեության նկատմամբ կիրառվող պետական վերահսկողության հարցը։ Ցավալի է, որ որոշ տեսուչների այցը դպրոց տագնապահար է անում դասատուներին։ Դա նշանակում է, որ վերահսկողությունը մանկավարժության բնագավառում տակավին զերծ չէ վարչարարության տարրերից։ Դա վնասակար պրակտիկա է, որի հաղթահարման հարցը, իրավացի կերպով բարձրացրեց ընկ. Ս. Խուդոյանը։

Սովետական դպրոցի տեսուչը, մեր կարծիքով, իր ամեն մի այցելությունը պետք է դարձնի մանկավարժների պրակտիկան կատարելագործող իրադարձություն։ Տեսչի բանական դիտողություններն անհրաժեշտ է անմիջականորեն քննարկել մանկավարժների շրջանում. բայց քննարկումը պետք է լինի ստեղծագործական հողի վրա։ Տեսուչը չպետք է ճարձակվի և ոչ էլ ուսուցիչը պաշտպանվի: Նրանք պետք է զորեղ ապացույցներով և գործիմացությամբ հիմնավորեն և միմյանց փոխադարձաբար ճամոզեն, թե ով է մոտ ճշմարտությանը։ Եթե տեսուչները դպրոց կմտնեն ո՛չ միայն զինված ստուգելու իրավունքով, այլ անսահման խոր գիտելիքներով և մանկավարժական նուրբ տակտով, այդպիսի տեսուչների այցը խիստ բաղձալի կլինի բարեխիղճ մանկավարժների համար։ Մենք չենք կասկածում, որ մոտ ապագայում երիտասարդ և շնորհալի մանկավարժների շարքերից կս առաջ կգան նորանոր տեսչական կադրեր, որոնք իրենց հեղինակությունը կնվաճեն գերազանցապես գիտելիքների խորիմացությամբ և ոչ թե գրաված հասարակական դիրքով։

Որ աշակերտների գիտելիքների յուրացման գնահատումների ու նորմերի հարցը բավականին խճճված է ու բարդ, ճիշտ է։ Ճիշտ է և այն, որ ժամանակն է մեկընդմիշտ հրաժարվել ուսուցչին աշակերտներին տված գնահատականներով գնահատելուց, այլ կերպ որոշ արատներ չեն վերանա դպրոցական կյանքից։ Չպետք է մոռանալ, որ աշակերտները նաև սուբյեկտներ են։ Ուսման որակը նաև կախված է աշակերտների զգայական աշխարհի ընկալումներից, նրանց խոր ապրումներից, որոնումներից, աշխատանքի մեթոդից ու ոճից։

Գիտելիքների յուրացման պրոցեսը զուտ մեխանիկական չէ, այլ կենդանի զգայումների, ընկալումների և մտավոր վերաորոճման պրոցես։ Այստեղ



պատանու հոգեկան գործոնը հաճախ և գրեթե միշտ վճռական դեր է խաղում յուրացրած առարկայի տարրերը դրսևորելու գործում։ Բավական է մի փոքր անտարբերություն, և ամենալավ աշակերտը կարող է տապալվել։ Բայց լինում է այնպես, երբ մանկավարժական ունակությունից զուրկ ուսուցիչն անողոք կերպով օգտվում է վետոյի իր իրավունքից, սխալ գնահատելով իր աշակերտին։ Սա չի նշանակում, թե մենք պետք է անտեսենք այն հանգամանքը, երբ որոշ ուսուցիչներ գնահատումների խնդրում անաչառության պատրվակով հանդես են բերում իրենց անհիմն «համակրանքը» այս կամ այն աշակերտի նկատմամբ։ Երբ ուսուցիչը հրաժարվում է իր կրքոտ խոսքն ասել աշակերտի ունակությունների վերաբերյալ, նա փաստորեն խրախուսում է պատանու պակասությունները և աստիճանաբար ետ մղում նրան կյանքի վերջին դիրքերը։ Նման օգնությունը միշտ էլ բացասաբար է անդրադարձել երեխաների զարգացման վրա։ Ահա թե ինչու աշակերտները խոր ակնածանք տածելով խստապահանջ ուսուցչի նկատմամբ, ոչ պակաս խորությամբ սիրում են նրան, երախտապարտ զգում իրենց ձեռք բերած գիտելիքների համար։

Սովետական ուսուցչի ինքնուրույնությունը մեծ գործոն կդառնա դպրոցի զարգացման ասպարեզում, եթե նա ունի մտքի լայն հորիզոն։ Գիտության ռևոլյուցիայի և կոմունիստական հասարակության կերտման ներկա դարում մի քանի տասնյակ գրքերից առնված մտավոր պաշարով ուսուցիչը մանկավարժական այս կամ այն հարցը լուծելիս չի կարող խիզախել։ Ընդհակառակը։ գիտական մեծ էրուդիցիայով օժտված մանկավարժն է, որ համարձակորեն դընում և լուծում է իր շրջապատի կենսական խնդիրները։ Մտավախությունը մանկավարժության ասպարեզում, պասսիվությունը պատանեկան աշխարհում, նախ և առաջ հետևանք են մտավոր պաշարի և կյանքի իմացության անբավարար վիճակի։

Ո՛չ միայն սովետական ժողովուրդների և սոցիալիստական լագերի մեր բարեկամների առաջխաղացումը, այլև ամբողջ մարդկության գիտատեխնիկական արդի նվաճումները մշտապես պետք է լինեն սովետական ուսուցչի ուսումնասիրության առարկան։ Այստեղից անհրաժեշտորեն բխում է ուսուցիչների կատարելագործման և ինքնազարգացման հարցը։ Տարբեր դասընթացները մանկավարժների վերապատրաստման համար անհրաժեշտ են։ Սակայն լուսավորության մինիստրությունը վատ է օգտագործում նորագույն տեխնիկայի նվաճումները։ Այսպես, օրինակ, ինչո՞ւ չի կարելի հեռուստատեսության հատուկ դասընթացի միջոցով մանկավարժներին ծանոթացնել արդի գիտության վիթխարի նվաճումներին։ Ինչո՞ւ չի կարելի ռադիոյի միջոցով սովետական լավագույն գիտնականներին հանդես բերել մանկավարժական կոլեկտիվների առջև նրանց տանջող հարցասիրությանը բավարարելու համար։ Լավ չի՞ լինի, եթե հիմնվի մանկավարժի ռադիոճամալսարան, որը կոչված պետք է լինի գիտության բոլոր բնագավառների նվաճումները բարձրորակ հեղինակությունների միջոցով մատուցել ուսուցչական հսկայական կոլեկտիվին։ Ժամանակը չէ՞, որ լուսավորության մինիստրությունը տարեգրքեր հրապարակի նվիրված արդի գիտության հրատապ պրոբլեմներին։ Չէ որ քսան հազարից ավելի ուսուցչական կոլեկտիվը միշտ էլ կուզենա իր ձեռքի տակ ունենալ ճամաշխարհային գիտության ամեն տարվա նվաճումները։ Այդ հրատարակությունը պետք է կատարվի մեծ խնամքով ու որակով, կատարվի բազմաթիվ ջրալի գրքերի փոխարեն։

Մեզ թվում է, որ մանկավարժական կադրերի ինքնակրթությանը մեծա-
պես կօգնի Սովետական մանկավարժ ամսագրի պրոֆիլի արմատական փո-
փոխումը։ Հասունացած է այն հարցը, որ այդ ամսագիրը լիովին ձերբազերծ-
վի մանկավարժական և քերականական մանրուքները որոնելուց և հիմնակա-
նում դառնա ուսուցչական կադրերի զարգացմանը խթանող հեղինակավոր
ուղեցույց։ Նեղ ակադեմիզմի մեռած հարցերի արծարծումն այդ ամսագրի
էջերում բոլորովին չի նպաստում նոր ուսուցչի զարգացմանը։ Խիստ անհրա-
ժեշտ է, որ Սովետական մանկավարժ ամսագիրն իր էջերում սիստեմատիկաբար
լուսաբանի ո՛չ միայն Սովետական Միության ժողովուրդների կուտակած ման-
կավարժական փորձը, այլև ողջ սոցիալիստական լագերի առաջավոր դպրոց-
ների նվաճումները։ Որքա՜ն լավ կլիներ, եթե այդ ամսագիրը տարեկան մի
քանի անգամ ամբողջական համարներ հատկացներ սոցիալիստական այս
կամ այն երկրի դպրոցական գործի խոր լուսաբանմանը։ Որքա՜ն լավ կլիներ,
որ այդ ամսագրում պարբերաբար հանդես գային սոցիալիստական լագերի
ականավոր մանկավարժները։ Այդ մեծապես կօգնի մեր ուսուցիչներին առնա-
լու և հանդես բերելու իրական բանիմացություն ու ակտիվություն։
Ուսուցչի ինքնուրույնության և ձեռներեցության հարցն ունի մի այլ կողմ։
Դա նրա հասարակական, արտադպրոցական գործունեությունն է։ Կյանքը
բազմիցս ապացուցել է, որ մանկավարժական պատյանում անդորր որոնող և
ինքնամփոփ ուսուցիչը, երբեք չի կարող ինքնուրույն լինել։ Սովետական ու-
սուցիչը և՛ դաստառու է, և՛ կազմակերպիչ և՛ հասարակական գործիչ։ Որքան
ակտիվ է նա հասարակական կյանքում, որքան անմիջական է մասնակցում
կոմունիզմի շինարարությանը, այնքան լուրջ հիմքեր ունի մանկական աշխար-
հում պահպանելու իր ուրույն դեմքը։ Որպես նոր կյանքի առաջամարտիկ, սո-
վետական ուսուցիչը հաճույքով է մասնակցում իր շրջապատի քաղաքական ու
հասարակական կյանքին, օգնում պարտիային առաջ մղելու նոր հասարակու-
թյան շենքի կերտումը։
Ուսուցչական կադրերի կատարելագործման այս կողմի վրա պետք է հա-
տուկ ուշադրություն դարձնել։
Մեր ամսագրում սկսված բանավեճը վերջինը չէ։ Խմբագրությունը ծրա-
գրել է պարբերաբար արծարծել ժողովրդական կրթության, նոր մարդու դաս-
տիարակության հրատապ հարցերը, որոնց լուծման լավագույն ձևերից մեկը
ստեղծագործական բանավեճերն են։
Ուսուցչի դերի մասին սկսված բանավեճը այն գրական հետևանքն ունե-
ցավ, որ զգալիորեն խթանեց հազարավոր մանկավարժների ինքնագործունեու-
թյան բարձրացմանը։ Մտորումների, որոնումների և հուզող հարցերի ար-
ծարծումը մամուլում ինքնին նոր լիցք է տալիս բազմահազար ընթերցողների
հոգեկան կյանքին։ Վնր է ամեն կասկածից, որ բանավեճը երևան բերեց
ուսուցչական կադրերին հուզող հարցերից մեկի՝ ուսուցչի դերի բավականին
լայն մեկնաբանման անհրաժեշտության գիտակցությունը։ Յուրաքանչյուր
ուսուցիչ, որին մտատանջում են շատ հարցեր, համարձակ և հիմնավոր կեր-
պով այդպիսիք կառաջադրի հասարակական քննարկման դատաստանին։ Իսկ
դա քիչ բան չէ։ Ցանկանք, որ այսուհետև բանավեճերին մասնակցեն ավելի
շատ անձնավորություններ և առավել հիմնավոր առաջարկություններով ու
դիտողություններով։

# Պատմում են
# ՄԵՐ ԲԱՐԵԿԱՄՆԵՐԸ

Մեր ռեսպուբլիկայի շատ քաղաքներ, ինչպես նաև արդյունաբերական ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների կոլեկտիվներ բարեկամական սերտ կապեր են հաստատել ՍՍՌՄ եղբայրական մյուս ռեսպուբլիկաների կոլեկտիվների հետ:

Ստեղծված բարեկամության վառ արտահայտություններից մեկը՝ ծավալված սոցիալիստական մրցությունն է, որի առթիվ այս համարում հոդվածներ ենք զետեղում Ուկրաինայից և Վրաստանից:

## ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆԱՐԱՐ ՈՒԺԸ

Ա. ԲՈՏՎԻՆ

Ուկրաինայի կոմպարտիայի Կիևի արդյունաբերական մարզկոմի քարտուղար



Սովետական բոլոր ժողովուրդների եղբայրական համագործակցությունը և փոխօգնությունն այն կենարար ուժն է, որն ապահովում է յուրաքանչյուր ռեսպուբլիկայի տնտեսական բուռն ու համակողմանի զարգացումը։ Պետական, քաղաքական և տնտեսական կյանքի բոլոր բնագավառներում դրսևորվող այդ բարեկամությունն ու փոխօգնությունը կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության կենդանի մարմնացումն է, կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարի շարժիչ ուժերից մեկը։ Այդ բարեկամության վառ արտահայտությունն է մեր բազմազգ հայրենիքի աշխատավորների սոցիալիստական մրցությունը։

Ահա այդ գծերով է բնորոշվում Երևան և Կիև քաղաքների աշխատավորների արդեն հինգ տարի տևող եղբայրական համագործակցությունը։

Ասում են, որ բարեկամությունը փոխադարձաբար հարստացնում է։ Ուկրաինացիները սովորելու շատ բան ունեն արևաշող Հայաստանի որդիներից

ու ղուստրերից։ Կիևցիներից նույնպես կարելի է բավական լավ, օգտակար բան վերցնել։ Երևանը և Կիևը նվիրական ու վսեմ տրադիցիաների, մեծ կուլտուրայի քաղաքներ են։ Այդ երկու մայրաքաղաքների մրցությունը ավելի սերտ է դարձնում եղբայրությամբ զոդված երկու ժողովուրդների տնտեսական ու կուլտուրական կապերը։

Կիևում մենք հաճախ ենք ընդունել Երևանից եկած պատվիրակություններ։ Մեր արդյունաբերության աշխատողները, շինարարներն ու գիտնականներն իրենց փորձն են հաղորդել նրանց։ Կիևցիները ջերմորեն ծափահարել են բեմի հայ վարպետներին։ Հայ գրողների շատ գրքեր թարգմանվել են ուկրաիներեն և մեծ ժողովրդականություն են վայելում Ուկրաինայի մայրաքաղաքում։ Մեր թերթերը պատմում են աշխատանքային Երևանի կյանքի մասին։ Տեղական թերթերում բազմիցս հանդես են եկել երևանցի ժուռնալիստները և պատմել Երևանի Լենինյան շրջանի և Կիևի Հոկտեմբերյան շրջանի աշխատավորների միջև ծավալվող մրցության մասին։

Մեր քաղաքի ձեռնարկությունների բանվորները և ինժեներները սերտ կապեր ունեն Երևանի արտադրական ձեռնարկությունների աշխատողների հետ։ Ահա, օրինակ, «Տոչէլեկտրոպրիբոր» գործարանը՝ մեր մայրաքաղաքի այն առաջին ձեռնարկությունը, որն ստացել է կոմունիստական աշխատանքի ձեռնարկության պատվավոր կոչում։ Այստեղ դուք շատ հետաքրքրական բան կարող եք լսել Կիևի և Երևանի բանվորների ամենօրյա փոխօգնության ու բարեկամության մասին։ Այդ մասին պերճախոս կերպով պատմում է գործարանի նիստերի դահլիճում դրված հատուկ ստենդը։

Կիևցիները հպարտանում են իրենց մետրոպոլիտենով։ Նրա կառուցմանը օգնել են նաև երևանցիները։ Քաղաքի այդ ստորերկրյա զարկերակը սարքավորված է հզոր տրանսֆորմատորներով, որոնք կրում են «Պատրաստված է Երևանում» պիտակը։ Անտարակույս, Հայաստանի մայրաքաղաքում նույնպես ծանոթ են Կիևի գործարանների արտադրանքին։

Ծավալելով Երևան—Կիև սոցիալիստական մրցությունը, մեր քաղաքի աշխատավորները նվաճում են նորանոր բնագծեր։ Այս տարվա ինն ամսվա ընթացքում Կիևում և նրա մարզում արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկումը, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, ավելացավ 10,2 %-ով, աշխատանքի արտադրողականությունն աճեց 7,9 տոկոսով։ Կիևում արագ տեմպերով զարգանում են էլեկտրոնիկան, ռադիոտեխնիկան, քիմիան, հաշվիչ-կառավարող տեխնիկան, սինթետիկ ալմաստների արտադրությունը։

Կիևի գործարանները թողարկում են էքսկավատորներ, մետաղահատ կիսավտոմատ բարդ հաստոցներ, էլեկտրական ապարատներ, ճշգրիտ-չափիչ սարքեր, լաբորատոր սարքավորում, մեքենաներ և սարքավորում էլեկտրակայանների, մետալուրգիական, քիմիական, թեթև, պոլիգրաֆ, սննդի, շինարարական և փայտամշակման արդյունաբերության համար, գետային և ծովային նավեր, վագոններ, մոտոցիկլետներ, տրամվայներ, տրոլեյբուսներ և այլն։

Ահա քաղաքի արդյունաբերության համար բնորոշ մի ձեռնարկություն՝ արհեստական մանրաթելի կոմբինատը, որն, ի դեպ, օրերս արժանացել է կոմունիստական աշխատանքի ձեռնարկության կոչման։ Այդ կոմբինատի մարկան հայտնի է ամենուրեք։ Նա իր արտադրանքն ուղարկում է երկրի 700



ձեռնարկություններ՝ տեքստիլ, ավտոդողերի, սննդի և այլն։ Բայց միայն դրանով չի հայտնի կոմբինատը, որի լայնածավալ կորպուսները տեղավորված են Դնեպրի ձախ ափին, Կիևի ինդուստրիալ շրջանում՝ Դարնիցայում։ Այստեղ հաճախ սովորելու են գալիս ինժեներներ ու բանվորներ, մասնագետներ ու տնտեսագետներ։ Ձեռնարկությունը սիրով ընդունում է ամեն մի նորամուծություն և ուրախությամբ արմատավորում ցեխերում։ Կոմբինատում մշակված ու արմատավորված են բարձր արտադրողականություն ունեցող նոր մեքենաներ, ավտոմատացված են ամբողջ տեղամասեր, լրիվ ավտոմատացված է կոմբինատի մի ցեխը։ Ինժեներների, ռացիոնալիզատորների ջանքերով տնտեսված է մոտ երկու միլիոն ռուբլի, և ավելի քան 1400 հոգի ազատվել և ներգրավվել են այլ աշխատանքներում։

Բայց կոմբինատը լոկ մեքենաների հռնդյունով լցված արտադրական կորպուսները չէ, արծաթե մանրաթել չէ միայն, որով, ինչպես կատակով ասում են բանվորները, կարելի է երկրագնդի շուրջը ցանց հյուսել։ Յոթնամյակի անցած տարիներին այստեղ յուրաքանչյուր երրորդ աշխատավորը նոր բնակարան է ստացել, ձեռնարկությունն ունի իր պրոֆիլակտորիումը, պոլիկլինիկան, պիոներական ճամբարը, իր ջրային կայանը։ Ղրիմում կառուցվում է պանսիոնատ։ Ամբողջ երկրով մեկ հռչակված է այնպիսի արդյունաբերական հսկաների արտադրանքը, ինչպիսին են «Կրասնի էքսկավատոր» գործարանը, որը մեքենաներ է ուղարկում աշխարհի 30 երկրներ, «Բոլշևիկ», «Արսենալ» գործարանները։

Կիևի արդյունաբերության աշխատողներն ակտիվորեն պայքարում են աշխատանքի արտադրողականության բարձրացման համար։ Միայն ընթացիկ տարում նրանց հաջողվեց արտադրողականության բարձրացման հաշվին 78—80 տոկոսով ավելացնել համախառն արտադրանքի թողարկումը։

Նվազ ծախսումներով ավելի շատ արտադրանք տալու նպատակով արդյունաբերության բոլոր տեղամասերում պայքար է ծավալվել հանուն եղած ռեզերվների ավելի արդյունավետ օգտագործման, հանուն աշխատաժամանակի տնտեսման։

Կիևի և նրա մարզի արդյունաբերական ձեռնարկությունները տարեցտարի հումքի և խնայողության հաշվին ավելացնում են գյուղատնտեսության կարիքների համար թողարկվող պլանային արտադրանքի ծավալը։ Բացի այդ, քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունները, կոլեկտիվները վերցրել են մարզի 357 կոլտնտեսությունների և 83 սովխոզների շեֆությունը. օգնում են նրանց 132 անասնաբուծական ֆերմաների շենքեր, մեխանիկական արհեստանոցներ կառուցելու, անասնաբուծական ֆերմաներում աշխատանքները մեքենայացնելու, ֆերմաների ջրամատակարարումը և անասնաբուծական օբյեկտների էլեկտրիֆիկացումն ապահովելու գործում։ Ընթացիկ տարում նրանք օգնության կարգով նորոգել են մոտ 400 տրակտոր, 550 ավտոմեքենա, 150 կոմբայն, ավելի քան 150 շարժիչ, հարյուրավոր գութաններ ու շարքացաններ և գյուղատնտեսական այլ մեքենաներ։ Շեֆ կոլեկտիվները կոլտնտեսականների համար հաճախ գեղարվեստական ինքնագործունեության համերգ են տալիս, օգնում նրանց աշխատանքում։

Տեխնիկական առաջադիմության, յոթնամյակի պլանները ժամկետից շուտ կատարելու համար մղվող պայքարի առաջին շարքերում են կոմունիստական աշխատանքի մրցության մասնակիցները։ Այդ մրցության ընթաց-

քում աճում են նոր մարդիկ, որոնք դառնում են արտադրության լավ կազմակերպիչներ, հմուտ դաստիարակներ, նորի, առաջավորի կրողներ։ Այժմ քաղաքում կոմունիստական աշխատանքի պատվավոր կոչման համար պայքարում են 800 ձեռնարկություններ, հիմնարկներ ու կազմակերպություններ, ավելի քան 26 հազար ցեխեր, տեղամասեր, բրիգադաներ. 135 հազար աշխատավորներ պայքարում են կոմունիստական աշխատանքի հարվածայնի կոչման համար։ Իրենց անձնուրաց աշխատանքով արդեն այդ պատվավոր կոչումն են նվաճել 22 ձեռնարկություն, 790 ցեխ ու տեղամաս, ավելի քան 10 հազար բրիգադա, 56 հազար աշխատավորների շնորհված է կոմունիստական աշխատանքի հարվածայնի կոչում։ Քաղաքի ձեռնարկություններում ստեղծված են կոմունիստական աշխատանքի ավելի քան 400 դպրոցներ։

Իրենց աշխատանքային սխրանքներով մեր քաղաքին մեծ համբավ բերեցին արտադրության առաջավորներ Յուրի Կուցին, Վիկտոր Բախմուտը, Վասիլի Պոյարկոն, Գրիգորի Ցարիկը և շատ ուրիշներ։ Լայնորեն հայտնի է խառատ Վ. Սեմինսկու անունը։ Նա գլխավորում է քաղաքի ռացիոնալիզատորների խորհուրդը և հանդես է եկել արժեքավոր առաջարկությամբ՝ գյուտարարության և ռացիոնալիզացիայի շնորհիվ 7 տարում տնտեսել է 500 մլն. ռ.։

Մեր բանվորական կոլեկտիվներում ծավալվել է ուկրաինական ժամի համար մղվող պայքարը, այն է՝ աշխատանքային վեց ժամում կատարել օրվա առաջադրանքը։ Վերջերս Ձերժինսկու անվան գործարանում և Ռոզա Լյուքսեմբուրգի անվան ֆաբրիկայում ծնունդ առավ մի հիանալի շարժում՝ կիևյան տոկոսը, որի նպատակն է իջեցնել արտադրանքի ինքնարժեքը սահմանված պլանից դուրս։ Մի քանի օրվա ընթացքում կիևյան տոկոսի համար ծավալված մրցությունն ընդգրկեց ոչ միայն մեր մարզի, այլև ռեսպուբլիկայի շատ այլ մարզերի կոլեկտիվներ։ Դժվար է գերագնահատել այս հայրենասիրական նոր նախաձեռնության նշանակությունը։ Նրա ծավալումը կարող է երկրին տալ տասնյակ միլիոն ռուբլի։ Չէ՞ որ միայն մեր քաղաքի արդյունաբերության ու շինարարության մեջ մեկ կիևյան տոկոսը հավասար է 19 միլիոն ռուբլու։

Ծաղկում ու բարգավաճում է հինավուրց Կիևը։ Բոլորի աչքի առաջ փոխվում է Ուկրաինայի մայրաքաղաքի տեսքը։ Անցե՛ք նրա լայն փողոցներով ու հրապարակներով, այցելեք նրա նախկին ծայրամասերը՝ Նիվկին, Օտրադնոյեն, Սիրցան, Դարնիցան և կտեսնեք, թե ինչպիսի հսկայական շինարարություն է կատարվում այնտեղ։ Մայրաքաղաքի ազատագրումից հետո անցած քսան տարում փաստորեն կառուցվել է նախապատերազմյան մեկ ու կես քաղաք՝ 9 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածությամբ։

Հեքիաթային դյուցազնի պես աճում է Կիևը։ Եվ, եթե քաղաքների համար դարերը նրանց պատմության օրերն են, իսկ տարիները՝ ժամերը, ապա կարելի է բանաստեղծի խոսքերով ասել, որ մեր քաղաքը, հիրավի, աճում է «ոչ թե օրեցօր, այլ ժամեժամ»։ Միայն անցյալ տարի նոր բնակարան ստացավ քաղաքի բնակչության մեկ տասներորդ մասը, այսինքն՝ ավելի քան 120 հազար մարդ։ Իսկ այդ հավասար է այնպիսի մի քաղաքի բնակչության թվին, ինչպիսին Ժիտոմիրն է։ Յոթնամյակի տարիներին Կիևի շինարարները շահագործման հանձնեցին արդյունաբերական ձեռնարկությունների ավելի քան 500 հազար քառակուսի մետր արտադրական հրապարակներ, երեք միլիոն



371 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, կառուցված են 77 300 տեղ ունեցող դպրոցական շենքեր և 17 930 տեղ ունեցող մանկական հիմնարկներ։

Այդ նույն ժամանակամիջոցում կառուցվել են՝ մետրոպոլիտենի առաջին հերթի առաջին տեղամասը, սպորտի պալատը, կրկեսի նոր շենքը, Դեսնայի ջրմուղի առաջին հերթը, ավտոկայարանը, գետային կայարանը, կառուցված են տրամվայի և տրոլեյբուսի նոր գծեր, հետիոտն անցման ստորերկրյա ուղիներ։ Քաղաքի գեղեցիկ անկյուններից մեկում կառուցվում է պիոներական նոր պալատ։

Կիևի շինարարների հաջողությունները բացատրվում են, առաջին հերթին, նրանով, որ նրանք կառուցողական աշխատանքները փոխադրել են ինդուստրիալ ռելսերի վրա, արագորեն զարգացրել են խոշոր պանելային-տնաշինարարությունը, օգտագործում են նոր նյութեր, կոնստրուկցիաներ ու դետալներ, արմատավորում շինարարության առաջավոր մեթոդները։ Կիևում գործում են տնաշինարարության երեք կոմբինատ, որոնց ընդհանուր կարողությունը կազմում է տարեկան 460 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։

Մինչև տարվա վերջը կկառուցվի ավելի քան 800 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, և ավելի քան 100 հազար կիևցիներ կստանան նոր բնակարաններ։ Իսկ եթե հաշվի առնենք այն հանգամանքը, որ նոր բնակարան տեղափոխվելուց հետո ազատվում է հին բնակելի տարածության մի մասը, ապա այս տարի նոր բնակարանում կապրի յուրաքանչյուր տասներորդ կիևցին։ Ընթացիկ տարում կավարտվի 17 դպրոցական շենքերի, 62 մանկական հիմնարկների, 860 տեղ ունեցող բուժհիմնարկների, հասարակական սննդի 77 ձեռնարկությունների, 190 խանութների շինարարությունը։

Մեծ աշխատանքներ են կատարվում քաղաքի ինժեներական տնտեսությունը զարգացնելու ուղղությամբ։ Զգալիորեն բարելավվել է ջրամատակարարումը, ավելի մեծ չափեր են ընդունել քաղաքի ջերմաֆիկացման և գազիֆիկացման աշխատանքները։ Տնային տնտեսուհիների համար սովորական են դարձել գազօջախները։ Եթե հաշվենք, թե գազի շնորհիվ քանի տոննա վառելանյութ է խնայվել, ապա կստանանք հետևյալ պերճախոս թվերը՝ 11 միլիոն տոննա Դոնեցի քարածուխ, 7 միլիոն տոննա փայտ, 800 հազար տոննա հեղուկ վառելանյութ։ Այդ ամենը տեղափոխելու համար կպահանջվեին 300 հազար երկաթուղային վագոններ և 20 հազար ցիստեռններ։

Մինչև վերջերս Կիևում մասսայական տրանսպորտի հիմնական տեսակը տրամվայն էր, բայց քաղաքի բարեկարգման հետ մեկտեղ տրամվայի գծերի զգալի մասը, հատկապես քաղաքի կենտրոնում, փոխարինվել է տրոլեյբուսի գծերով։ Նախատեսված է այնպես անել, որ տրամվայներն սպասարկեն քաղաքի այն նոր բնակելի շրջաններին, որոնք հեռու են տրոլեյբուսի և մետրոպոլիտենի գծերից։

Հաջողությամբ է ընթանում մետրոպոլիտենի առաջին հերթի նոր տեղամասերի շինարարությունը։ Մետրոպոլիտենի կառուցողները, մտնելով պետական պլանները ժամկետից շուտ կատարելու համար ծավալված համաժողովրդական մրցության մեջ, Պոլիտեխնիչեսկայա և Բոլշևիկ նոր կայարանները շահագործման հանձնեցին Հոկտեմբերյան մեծ ռևոլյուցիայի 46-րդ և Կիևի ազատագրման 20-րդ տարեդարձի օրը։ Մոտ ապագայում մետրոպոլի-

տենի գիծը քաղաքի կենտրոնական մասը կկապի Դնեպրի ձախափնյա նորակառույցների շրջանի հետ։

Քաղաքի կենտրոնից գնալով ավելի հեռու են ձգվում բարեկարգ ասֆալտե մայրուղիները։ Ընթացիկ տարում մեր ճանապարհաշինարարները կավարտեն Նոր-Շրջանային ճանապարհի, այսպես կոչված, կիևյան օղակի շինարարությունը։ Այդ հնարավորություն կտա պակասեցնելու փոխադրումների հոսքը քաղաքի կենտրոնական մասում և բարելավելու տրանսպորտային կապը նոր բնակելի մասսիվների հետ։

Այժմ ինժեներներն ու ճարտարապետները մշակում են Կիևում միառելս ուղի կառուցելու հարցը, նպատակ ունենալով Բորիսպոլի կենտրոնական օդանավակայանը միացնել կիևցիների ամենասիրած հանգստավայրերից մեկի՝ Տրուխանով կղզու և ապա քաղաքի բնակելի զանգվածներից մեկի՝ Վոսկրեսենսկայա սլոբոդկայի հետ։ Այդ կլինի քաղաքային վերգետնյա տրասսայի առաջին փորձնական տեղամասը։ Մեր քաղաքի բլրոտ ռելիեֆի պայմաններում միառելս ուղին կհանդիսանա բնակելի առանձին զանգվածների և ապագա կիևյան ծովի շրջանում կառուցվող աշխատավորների հանգստի վայրերի կապի ամենահարմար միջոցը։

Մեր քաղաքն անվանում են քաղաք-պարտեզ։ Արդեն այժմ, եթե հաշվի առնենք միայն կառուցապատված տերիտորիան, յուրաքանչյուր կիևցուն բաժին է ընկնում 18 քառակուսի մետր կանաչ տարածություն։ Միայն այս տարվա ընթացքում քաղաքում կտնկվեն 158 հազար ծառ ու 631 հազար թուփ։

1963 թվականին սկսվեց քաղաքի ամենամեծ կանաչ գոտիներից մեկի՝ Գոլոսևի անտառ-զբոսայգու շինարարությունը։ Այն կզբաղեցնի 830 հեկտար տարածություն։ Ժողովրդական տնտեսության նվաճումների ու առաջավոր փորձի ռեսպուբլիկական ցուցահանդեսի շրջանում գտնվող սքանչելի պուրակներում կառուցված են հանգստի տաղավարներ, ինչպես նաև լճակներ։ Նախատեսվում է առաջիկայում կուլտուրայի և հանգստի զբոսայգիներ հիմնել քաղաքի ամեն մի շրջանում։

Շինարարության այդքան մեծ թափը դժվար է պատկերացնել առանց քաղաքի բնակիչների ակտիվ օգնության։ Կիևցիներն իրենց ազատ ժամերին օգնում են իրենց ապագա բնակարանների կառուցման աշխատանքներին. տնկում նոր ծառեր, բարեկարգում բակերն ու փողոցները։

Մեր շինարարների առջև ծառացած են քաղաքի վերակառուցման մեծ խնդիրներ։ Գլխավոր մայրուղիների վրա գտնվող հին, փայտաշեն տները պետք է քանդվեն և նրանց տեղում բարձրանան նոր, բազմահարկ շենքեր։ Առաջիկա տարիներին քաղաքաշինարարության համար հատկանշական կլինի 9—14 և անգամ 16-հարկանի շենքերի կառուցումը։ Դա միանգամայն նոր տեսք կտա քաղաքին և ավելի արտահայտիչ կդարձնի կենտրոնական փողոցների ու հրապարակների ճարտարապետական դեմքը։

Բնակարանային շինարարության ամենագլխավոր հարցը աշխատանքների որակի բարձրացումն է։ Ուկրաինայի մայրաքաղաքի շինարարները մշտապես հիշում են Ն. Ս. Խրուշչովի այն ցուցումը, որ կոմունիզմի կառուցման ընթացքում արտադրանքի որակի անընդհատ բարձրացումը առաջնահերթ տնտեսական-քաղաքական խնդիր է։ Մեր առաջավոր կոլեկտիվները շատ բան են արել շինարարական աշխատանքների որակը բարելավելու ուղղությամբ։



Շատ լավ նախաձեռնություն է ցուցաբերել Կիևքաղշին № 2 տրեստի կոլեկտիվը՝ յուրաքանչյուր բնակարանի համար երաշխիքային պասպորտ տալով նորաբնակներին։ Շինարարական շատ կազմակերպություններ արձագանքել են այդ արժեքավոր նախաձեռնությանը։ Շինանյութերի արդյունաբերության քաղաքային վարչության ձեռնարկությունները ևս պարտավորվեցին թողարկել միայն լավ ու գերազանց որակի արտադրանք։

Մեր հերոս քաղաքի պանծալի շինարարների հարյուր հազարանոց կոլեկտիվն աշխատում է անխոնջ ու անձնուրաց։ Կիևում աճել են շինարարական արտադրության այնպիսի հմուտ վարպետներ, որոնք կարող են իրագործել բոլոր հոյակապ նախագծումները։ Լայնորեն հայտնի են Կիևի անվանի շինարարներ, Սոցիալիստական աշխատանքի հերոսներ Պ. Ստեպանչուկի, Ի. Միշչենկոյի, Վ. Յագոլայի, Ա. Սերոյի, Ա. Մարտիշենկոյի և շատ ուրիշների անունները։

Պարտիան ու կառավարությունը մշտապես հոգ են տանում աշխատավորության հանգստի, նրա առողջության մասին, յուրաքանչյուր սովետական մարդու ներդաշնակ զարգացման մասին։

Կիևի Հոկտեմբերյան շրջանի Օտրադնոյե նորակառույց զանգվածում տարածվում է բուժհիմնարկների մի քաղաք։ Վերջին ժամանակներս նոր պոլիկլինիկաներ ու հիվանդանոցներ են բացվել Մոսկովյան, Պեչորայի, Երկաթուղային շրջաններում։ Մոտ ժամանակներս նոր պոլիկլինիկա կբացվի Նիվկիում։ Եթե 1940 թվականին Կիևի հիվանդանոցներն ունեին 7.200 մահճակալ, ապա այժմ նրանք ունեն 16.000 մահճակալ։

Կիևի 17 բուհերում և 31 տեխնիկումներում սովորում են 120 հազար ուսանող։ Յուրաքանչյուր երրորդ կիևցին սովորում է պարտիական-քաղաքական լուսավորության սիստեմում, ուսումնասիրում է մարքսիզմ-լենինիզմի հիմունքները, կոնկրետ էկոնոմիկան։

Քաղաքի 120 գիտական հիմնարկներում ընդգրկված են ավելի քան յոթ հազար գիտական աշխատող։ Կիևի մի շարք գիտահետազոտական հիմնարկներ առաջատար են դարձել ամբողջ երկրում։ Օրինակ, բիոքիմիայի ինստիտուտը, էլեկտրազոդման Պատոնի անվան, փոշեմետալուրգիայի և մետաղակերամիկայի ինստիտուտները։ Կիևում գործարկված է Ուկրաինայում առաջին ատոմային ռեակտորը, այստեղ ստեղծված է նաև էլեկտրոնային ունիվերսալ մեքենա, որը կարող է մեկ վայրկյանում ութ հազար գործողություն կատարել։ Կիևը մեծ քիմիայի քաղաք է, նրա գիտնականները հաջողությամբ մշակում են պոլիմերների և մոնոմերների պրոբլեմները։

Աննախընթաց աճել են կիևցիների հոգևոր պահանջները։ Թատրոնը, կինոն, թանգարանները դարձել են մեր կենցաղի անբաժան տարրերը։ Ձեռնարկություններն իրենց համար կառուցել են հանգստի պալատներ։ Վերցնենք թեկուզ «Բոլշևիկ», «Արսենալ» գործարանների, երկաթուղայինների կուլտուրայի պալատները։ Քաղաքում գործում են 85 ակումբ և ժողովրդական ստեղծագործության 3 տուն։ Կիևցիներին սպասարկում են 1130 գրադարան։

Կիևը մեր երկրի կուլտուրայի առավել մեծ կենտրոններից մեկն է։ Այստեղ են ստեղծագործում բազմաթիվ գրողներ, նկարիչներ, կոմպոզիտորներ, արվեստի վարպետներ։ Ոգևորված ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումներով, նրանք այժմ աշխատում են ավելի մեծ խանդավառությամբ։

Նրանց համար նշանաբան է դարձել մեր պարտիայի ամենաաղնիվ խնդիրներից մեկը՝ նոր մարդու դաստիարակումը։

Ուկրաինայի մայրաքաղաքի մի խումբ գրողներ վերջերս դիմեցին կուլտուրայի ու արվեստի բոլոր աշխատողներին, կոչ անելով նրանց՝ օգնել բարելավելու աշխատավորության էսթետիկական դաստիարակության ուղղությամբ կատարվող աշխատանքը։ Գրականության ու արվեստի 400 գործիչներ վերցրել են երաժշտական դպրոցների, կերպարվեստի ստուդիաների, ժողովրդական թատրոնների, գեղարվեստական ինքնագործունեության կոլեկտիվների շեֆությունը։ Գրողները, կոմպոզիտորները, նկարիչներն իրենց ստեղծագործական աշխատանքի մասին հաշվետվություն են տալիս բանվորական կոլեկտիվներին։ Վերջերս այդպիսի հաշվետվություններով հանդես եկան գրող Օ. Գոնչարը, բանաստեղծ, Մ. Ռիլսկին, կոմպոզիտոր Կ. Դանկեվիչը, ժողովրդական նկարիչ Վ. Կասյանը։

Կիևի բնակչության կենցաղային սպասարկման համար կառուցված է առևտրական ձեռնարկությունների և սպասարկման զանազան տեսակի հաստատությունների լայն ցանց։ Քաղաքում գործում են տասնյակ հարյուրավոր նոր խանութներ։

Ուկրաինայի մայրաքաղաքի կենտրոնում պահպանվել է ճարտարապետական մի հին հուշարձան՝ Ոսկե դարպասները։ Մի ժամանակ այդտեղով են մտել Կիև։ Իսկ այժմ կիևցիները կարող են հպարտանալ իրենց քաղաքի նոր դարպասներով՝ ավտո և գետային կայարաններով։ Իսկ շուտով կավարտվի քաղաքի օդային դարպասների՝ Բորիսպոլի օդանավակայանի շինարարությունը։

Այդ բոլոր դարպասները միշտ էլ լայնորեն բաց են ձեզ համար, թանկագին բարեկամներ։ Մենք ուրախությամբ ցույց կտանք ձեզ մեր քաղաքը, Դնեպրի վրա կառուցված նրա գեղեցիկ կամուրջները։ Եվ դրանցից վերջինը՝ նավահանգստի վրայով անցնող կամուրջը, որը կառուցված է նավաշինարարների խնդրանքով։

Մրցելով երևանցիների հետ, կիևցիները ձգտում են աշխատել ավելի լավ, իրենց բոլոր ուժերը, իրենց ողջ եռանդը նվիրաբերել մեր մեծ իդեալների իրականացմանը։ Մրցության մեջ ձեռք բերած հաջողություններն ավելի են ոգևորում մեր աշխատողներին և նրանց մղում աշխատանքային նորանոր սխրանքների, լայն հեռանկարներ են բացում կոմունիստական շինարարության ավելի արագ ընթացքի համար։

Ղեկավարվելով և ուղղություն տալով մասսաների քաղաքական ու արտադրական բարձր ակտիվությանը, պաշտպանելով սոցիալիստական մրցության ընթացքում ծնունդ առնող բոլոր նոր ու առաջավոր երևույթները, քաղաքի պարտիական կազմակերպությունները աշխատավորների ուշադրությունը կենտրոնացնում են կոնկրետ խնդիրների լուծման վրա, խթանում մասսաների ստեղծագործական նախաձեռնությունը և մոբիլիզացնում են նրանց՝ հաջողությամբ ստեղծելու կոմունիզմի նյութատեխնիկական բազան։

Երևանի և Կիևի աշխատանքային մրցականչը մեր ժողովուրդների եղբայրական միասնության գրավականն է, այն մարմնավորում է կյանքի պես հավերժ ու գեղեցիկ այդ քաղաքների աշխատավորների բարեկամությունը։

# ՔԱՂԱՔ-ԵՂԲԱՅՐՆԵՐ

## Ա. ԿՈԲԼԱՏԱՁԵ

Վրաստանի կոմպարտիայի Բաթումիի քաղկոմի առաջին քարտուղար



Ես մի վրացի, իսկ դու հայ ես մի,
Բայց մենք երկուս էլ եղբայր ենք հիմի.
Երկուսս էլ զավակ նույն հողի, ջրի,
Ե՛վ նույն բնության, և՛ նույն լեռների։

Վրաց մեծ բանաստեղծ Ակակի Ծերեթելու այս հիանալի խոսքերը, որ նա ուղղել էր Գ. Սունդուկյանին, լավ են բնորոշում վրաց առաջավոր հասարակության շատ տարիներ համակած գլխավոր գաղափարը։

Լենինյան պարտիայի դրոշի ներքո տարեցտարի ամրապնդվում է վրաց և հայ ժողովուրդների անխախտ բարեկամությունը, ժողովուրդներ, որոնք սոցիալիստական ազգերի համերաշխ մեծ ընտանիքում, կողք-կողքի կառուցում են ամբողջ մարդկության լուսավոր ապագան՝ կոմունիզմը։

Ժողովուրդների բազմադարյա հոգևոր եղբայրությունը մեր օրերում դարձել է նաև աշխատանքային համագործակցություն, որի կոնկրետ արտահայտությունն է Բաթումի և Կիրովական քաղաքների աշխատավորների բարեկամությունը։

Այդ քաղաք-եղբայրների բարեկամությունը ձևավորվել է վաղուց և արդեն դարձել է մի սքանչելի տրադիցիա, որը և ամրապնդվել է Բաթումիի աշխատավորների նախաձեռնությամբ ծնունդ առած սոցիալիստական մրցությամբ՝ ձեռնարկությունների, կառույցների, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի միջև։

Արտադրական սերտ բարեկամական կապեր են հաստատված մրցության նախաձեռնողների՝ երկու քաղաքների մեքենաշինական գործարանների կոլեկտիվների միջև, Կիրովականի ճշգրիտ հաստոցների և Բաթումիի «Էլեկտրոկար» գործարանների ու այլ ձեռնարկությունների կոլեկտիվների միջև։

Մրցության ուժը նրա մասսայականության ու հրապարակայնության մեջ է։ Ամեն տարի այդ երկու քաղաքներից մեկում հավաքվում են նրանց ներկայացուցիչները, որպեսզի համատեղ ի մի բերեն ձեռք բերած հաջողու-

թյունները, որոշեն իրենց հետագա կոնկրետ խնդիրներն ու անելիքները։

Այս հոդվածում ես կցանկանայի պատմել այն մասին, թե Բաթումիի աշխատավորներն ինչպես են պայքարում իրենց ստանձնած պարտավորությունների կատարման համար, աշխատանքային ինչպիսի հաջողություններով են դիմավորում Վրաստանի կոմպարտիայի 1963 թվականի դեկտեմբերին բացվելիք XXII համագումարը։

Բաթումիի արդյունաբերական ձեռնարկությունները գերակատարեցին յոթնամյակի չորրորդ տարվա՝ 1962 թվականի պլանները, երկրին տալով 2,8 միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք, այն է՝ 190 լվացքի մեքենա, 48 էլեկտրասայլակ, 2650 տրանսֆորմատոր, սննդի արդյունաբերության զանազան ճյուղերի 18 մեքենաներ, 1150 տոննա ձուկ և այլն։

Մեր քաղաքի աշխատավորները հաջողությամբ են կատարում նաև այս տարվա, յոթնամյակի հինգերորդ տարվա ավելի ծավալուն պլանները։ Բաթումիի մեքենաշինական գործարանն իր ինն ամսվա պլանը կատարել է 102,6, «էլեկտրոկար» գործարանը՝ 102,7, կարի ֆաբրիկան՝ 104,8 տոկոսով։ Եվ պատահական չէ, որ հենց այդ ձեռնարկություններն են գլխավորում սոցիալիստական մրցությունը։ Այդ կոլեկտիվների համար մեծ խթան է հանդիսանում նրանց եղբայրական բարեկամությունը և գործարար մրցությունը կիրովականցիների հետ։ Իրենց առաջադրանքները զգալիորեն գերակատարել են նավաշինական, ծխախոտի ֆերմենտացիոն, էլեկտրատեխնիկական, ցինկապատման և կաթի գործարանները, ծխախոտի, կոշկի և ճկած կահույքի ֆաբրիկաները, հացի ու մսի կոմբինատները և այլ ձեռնարկություններ։

Քաղաքի արդյունաբերությունը յուրացրել է արտադրանքի նոր տեսակների՝ դիզելային վառելանյութի, զանազան բժշկական պրեպարատների, թեյի և սննդի արդյունաբերության մեքենաների, էլեկտրասայլակների, ցենտրաֆուգների և այլ գործիքների ու ապրանքների թողարկումը։

Աշխատանքային մեծ հաջողությունների հասավ շինարարական և տրանսպորտային կազմակերպությունների կոլեկտիվների մեծ մասը։ Առաջավորների թվում են՝ № 1 և № 2 ավտոտրանսպորտային գրասենյակների վագոնային դեպոյի, № 5 տրեստի շինարարության մեքենայացման վարչության և այդ տրեստի արտադրական կոմբինատի կոլեկտիվները։ Բաթումիի օդանավակայանը առաջինը ռեսպուբլիկայում նվաճեց կոմունիստական աշխատանքի ձեռնարկության պատվավոր կոչումը։

Բաթումին Սև ծովի մերձափնյա ամենագեղեցիկ քաղաքներից մեկն է։ Նրա մերձարևադարձային կլիման և աշխարհագրական հարմարավետ դիրքը քաղաքը դարձրել են աշխատավորների հանգստի ամենասիրելի վայրերից մեկը։ Բաթումին մեր մեծ հայրենիքի հարավային դարպասն է։ Ամեն օր քաղաքի ծովային նավահանգիստն են մտնում աշխարհի գրեթե բոլոր երկրների դրոշները կրող նավեր։ Բուռն թափով ծաղկում ու բարգավաճում է Բաթումին։ Կառուցվում են նոր բնակելի թաղամասեր, բարեկարգվում են քաղաքի ծայրամասերը, ընդլայնվում կուլտուր-լուսավորական հիմնարկների ցանցը, ավելանում են կանաչ զանգվածները։ Բաթումցիները սիրում են իրենց քաղաքը և բարեկարգում այն։ Հասարակայնությունը ջերմորեն մասնակցում է այդ ուղղությամբ ձեռնարկվող բոլոր միջոցառումներին, վերածելով իր քաղաքը ծովափնյա մարգարտի։

Մեր քաղաքի յուրաքանչյուր բնակիչ համոզված է, որ մեր այդ հաջողու-



թյուններն ուրախացնում են կիրովականցիներին, նա մշտապես զգում էր իր հայ բարեկամների ընկերական օգնությունն ու քաջալերանքը։

Արդյունաբերության մեջ, տրանսպորտում և կառույցներում ձեռք բերած հաջողությունները վկայում են, որ քաղաքի պարտիական կազմակերպությունները ճիշտ են հասկացել տնտեսության ղեկավարման գործում աշխատավորական լայն մասսաների ներգրավման խոշոր նշանակությունը։

Տնտեսական շինարարության խնդիրների լուծման ասպարեզում կենարար մեծ ուժ են ձեռք բերել հասարակայնության լայն մասնակցության այնպիսի նոր ձևեր, ինչպիսիք են՝ մշտապես գործող արտադրական խորհրդակցությունները, տեխնիկական առաջադիմության հանձնաժողովները, արտադրական կոմիտեները, պարտիական-պետական վերահսկողության կոմիտեին աջակցող խմբերը, կոնստրուկտորական, տեխնոլոգիական և տնտեսագիտական հասարակական բյուրոները։

Աշխատանքի կոմունիստական այս և մյուս ծիլերը, որոնք գուրգուրանքով ու ստեղծագործաբար զարգացնում են Բաթումիի ու Կիրովականի պարտիական կազմակերպությունները, նպատակ ունեն մարդկանց մեջ դաստիարակել հասարակական պարտքի վսեմ զգացմունքներ, այն բանի գիտակցումը, որ աշխատանքն է մարդու առաջնահերթ կենսական պահանջմունքը։

Այդ բանը շատ լավ երևում է Բաթումիի «էլեկտրոկար» գործարանի և Կիրովականի ճշգրիտ հաստոցների գործարանի արտադրական բարեկամության օրինակով։

«էլեկտրոկար» գործարանի պարտիական կազմակերպությունը, կենսագործելով ՍՄԿՊ XXII համագումարի պատմական որոշումները, մշակել և իրականացրել է մի ամբողջ շարք միջոցառումներ, որոնք ուղղված են ձեռնարկության տեխնիկական հագեցվածության մակարդակը բարձրացնելու նպատակին։ Այստեղ արդյունավետ աշխատանք են կատարում նոր տեխնիկայի արմատավորման և աշխատանքի արտադրողականության բարձրացման գծով ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկող պարտիական հանձնաժողովները։ Համեմատաբար կարճ ժամանակամիջոցում այդ հանձնաժողովների օգնությամբ գործարանում շահագործման հանձնվեցին 72 նոր, կատարելագործված հաստոցներ, մոդեռնացվեցին գոյություն ունեցող ութ հին հաստոցները. մեխանիկական-հավաքման ցեխում կոմպլեկտավորված է մի սարքավորում տեխնոլոգիական ցիկլի համար, կատարելագործված են հիդրավլիկ ամբարձիչներ ունեցող էլեկտրասայլակները, արմատավորված են ավելի քան 80 ռացիոնալիզատորական առաջարկություններ։ Այդ բոլոր միջոցառումները հնարավորություն տվին առանձին տեղամասերում և ցեխերում աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 25—35 տոկոսով, իսկ ամբողջ գործարանում միջին հաշվով՝ 27,5 տոկոսով։

Ահա այդ մասին ուրախությամբ հաղորդեցին Կիրովականի իրենց ընկերներին «էլեկտրոկար» գործարանի աշխատողները, իրենց նամակում պատմելով, թե ինչպես են իրականացվել այդ նորամուծությունները։

Կարճ ժամանակից հետո Կիրովականից ստացվեց պատասխան-նամակ.

«Թանկագին բաթումցի բարեկամներ։ Կիրովականի ճշգրիտ հաստոցների գործարանի կոլեկտիվը եղբայրական ողջույն է հղում ձեր գործարանի կոլեկտիվին և նոր հաջողություններ մաղթում մեր հայրենիքի բարօրության համար կատարած աշխատանքում։ Ձեր նամակը նույն օրն ևեթ ընթեր-

ցեցինք կոլեկտիվի ընդհանուր ժողովում։ Մրցության մեջ հաջողություն ենք ձեռք բերել նաև մենք։ Մեր գործարանի կոլեկտիվը առաջին տեղն է նվաճել Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության խորհրդի ձեռնարկությունների միջև ծավալված սոցիալիստական մրցության մեջ»։

Կիրովականից ստացվող ամեն մի այդպիսի բարի լուր սրտանց ուրախացնում է Բաթումիի արդյունաբերության աշխատողներին։

Վերջերս «էլեկտրոկար» գործարանում եղավ Կիրովականի աշխատավորների պատվիրակությունը։ Հյուրերը դիտեցին գործարանը, ծանոթացան ձեռնարկության կոլեկտիվի գործունեությանը, գործարանի ռացիոնալիզատորների իրականացրած նորամուծություններին, ինչպես նաև մանրամասն ծանոթացան պարտիական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների աշխատանքներին։ Կիրովականցիներն իրենց հերթին հաղորդեցին իրենց աշխատանքի փորձը։ Հայ բարեկամները գործարանի աշխատողներին հրավիրեցին Կիրովական և, իհարկե, առաջին հերթին ճշգրիտ հաստոցների գործարանը։ Այժմ «էլեկտրոկար» գործարանի ադմինիստրացիան և պարտիական կազմակերպությունը պատրաստվում է այդ բարեկամական այցին։ Պատվիրակության մեջ կմտնեն առաջավոր բանվորներ, բրիգադավարներ, վարպետներ, ինժեներներ, պարտիական և կոմերիտական կազմակերպությունների ղեկավարներ։

Համոզված ենք, որ այդ կլինի շատ օգտակար հանդիպում։ Կիրովականցիները և բաթումցիները միմյանցից կսովորեն աշխատանքի ավելի պրոգրեսիվ մեթոդներ, կսովորեն արտադրության կուլտուրան և աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու եղանակներ։

Մեր երկու քաղաքների այդ բարեկամության ու համագործակցության մեջ, ինչպես մի կաթիլ ջրում, խտացված ձևով արտացոլված է պարտիայի լենինյան ազգային քաղաքականությունը, որը երջանկություն ու բարեկեցիկ կյանք է բերում մեր մեծ երկրի բոլոր ժողովուրդներին։

Բոլոր բաթումցիները սրտանց ուրախանում են, երբ լսում են Կիրովականի աշխատավորների աշխատանքային սխրանքների մասին։

Մենք ուրախությամբ իմացանք, որ Կիրովականի արդյունաբերությունը յոթնամյակի չորս ու կես տարվա արտադրանքի թողարկման պլանը կատարել է 103 տոկոսով, որ յոթնամյակի սկզբից մինչև 1963 թվականի հուլիսի մեկը պլանից դուրս թողարկվել է 6,4 միլիոն ռուբլու արտադրանք։

Կիրովականը մեծ քիմիայի քաղաք է, և բաթումցիներն իրենց հայ բարեկամների հետ մեկտեղ ցնծությամբ դիմավորեցին այն լուրը, որ արդեն գործարկվել են մեր հայրենիքի մեծ քիմիայի հսկաներից մեկը՝ Կիրովականի արհեստական մանրաթելի գործարանը և ջերմաէլեկտրակայանի I հերթը։

Քաղաք եղբայրների մրցությունը շարունակվում է։ Այն օրեցօր ավելի կծավալվի ու կամրապնդվի։ Երկու քաղաքների աշխատավորների մրցությունն ու բարեկամությունը գրավականն է այն բանի, որ նրանք հաջողությամբ կկատարեն յոթնամյակի առաջադրանքները, որ թե՛ բաթումցիները և թե՛ կիրովականցիներն իրենց արժանի ավանդը կմուծեն կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում։

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ՀԱՂԹԱՀԱՐԵԼՈՎ ԴԺՎԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Գարնան վերջին ամիսն էր։ Անձրևաբեր ամպերն արդեն երկու ամիս է ինչ կախվել էին երկնքից. Արարատյան դաշտի բարեբեր հողը գերխոնավությունից գորշացել, սևացել էր։

Մթագնած էր գյուղացու հոգին։ Մի քանի օրում կարկտահարվեցին զգալի տարածությամբ ցանքեր, խաղողի ու պտղատու այգիներ։ Հողը չէր կարողանում ներծծել անձրևաջրերը, լեռներում տեղացող հորդ անձրևներից բարձրանում ու ափերից դուրս էին գալիս Ազատ և Վեդիչայ գետերը, ավերում մոտակա ցանքատարածությունները, վնաս պատճառում գյուղերին։

Ի լրումն այդ ամենի խաղողի այգիներում երևաց «միլդիուն», որը հայ շինականի համար մի ժամանակ անհաղթահարելի ծանր չարիք էր, ժանտախտին հավասարազոր։ Դրա համար էլ ժողովուրդն այն անվանում է «չոռ»։ Անողոք և խարդախ է խաղողի այգիների այդ սնկային հիվանդությունը։ Հարկավոր էր կանխել դրա տարածումը, խաղողի վազերը պատել պղնձարջասպի լուծույթի կապտափայլ «զրահով», որին չի կարողանում մոտենալ «միլդիուն»։

Սակայն համարյա ամեն օր տեղացող անձրևները սրսկումից անմիջապես հետո լվանում-տանում էին պղնձարջասպի շերտը, ի դերև հանում կատարվածը։ Բնությունը կարծես ձեռնոց էր նետել հողի աշխատավորին, մարտի հրավիրել նրան։ Այդպիսի պայմաններում սկսվեց հողի աշխատավորի պայքարը բնական արհավիրքների դեմ, հանուն բամբակի, բանջարեղենի և գյուղատնտեսական մյուս կուլտուրաների բերքի։

Արտաշատի արտադրական վարչությունում գյուղատնտեսական էկոնոմիկայի առաջատար ճյուղը խաղողագործությունն է։ Շուրջ 8000 հեկտար խաղողի այգիներ ամեն տարի ծանրաբեռնվում են արևաշող ողկույզներով։ Ահա թե ինչու բնականաբար պայքարի ծանրությունը փոխադրվեց այգիները։ Ամեն օր ավտոմաքս սրսկիչ ապարատներով խաղողի այգիներում աշխատում էին ավելի քան 3000 մարդ, օգտագործվում էին բազմաթիվ ուրիշ սրսկիչ մեքենաներ։ Ոմանք, այդ թվում մի քանի փորձված մասնագետներ, անհուսալի էին համարում այն, գտնում էին, որ ստեղծված պայմաններում հնարավոր չէ այլևս պահպանել բերքը, փրկել անգամ դրա որոշ մասը։ Կանաչուտի, Յամանջալուի, Շահումյանի, Լուսակերտի և մի քանի այլ կոլտնտեսություններում բերքի զգալի մասի կորստի պատճառը, թերևս, առաջին հերթին այդ տնտեսությունների ղեկավարների՝ պայքարի արդյունավետության նկատմամբ ունեցած թերահավատությունն էր։

Այս տեսակետից «միլդիուի» դեմ տարվող պայքարը որոշ առումով ունեցավ նաև հոգեբանական բնույթ։

Այդ օրերին պարտիական կազմակերպությունների գլխավոր հոգսը պայ-

քարի կազմակերպումն էր, իրենց ուժերի նկատմամբ մարդկանց վստահություն ներշնչելը։ Աշխատավորության բացարձակ մեծամասնությունը, չնայած ստեղծված ծանր վիճակին, հավատում էր բերքը փրկելու հնարավորությանը։ Մարդիկ աշխատում էին արևածագից մինչև մայրամուտ, ոչ ոք չէր մտածում հանգստի մասին։

Ս. Մ. Կիրովի անվան սովխոզում, որը վարչության ամենախոշոր խաղողագործական տնտեսությունն է, կազմակերպվեց երկհերթ աշխատանք, Արմաշի, Սուրենավանի ու Դվինի սովխոզներում տղամարդկանց հետ ավտոմաքս էին վերցրել և կանայք։

Այդ պայքարի ամենաթեժ օրերին վարչության կոլտնտեսություններում ու սովխոզներում լայնորեն կիրառվեց Մրգավան գյուղի կոլտնտեսության ավտովարորդ Ժորա Հարությունյանի ռացիոնալիզատորական առաջարկությունը։ Նրա ստեղծած հնարամիտ սարքով ավտոմատացվեց այգիների բուժման ամենածանր և ամենաաշխատատար պրոցեսը՝ ավտոմաքսերի լիցքավորումը։ Ժորային մտահոգում էր այն հանգամանքը, որ կոլտնտեսականը օրը 20—30 անգամ ստիպված էր լինում ձեռքի մխոցի օգնությամբ լիցքավորել ավտոմաքսը, այդ պրոցեսի վրա ծախսելով ոչ միայն շատ ուժ ու էներգիա, այլև աշխատանքային օրվա համարյա կեսը։ Յուրաքանչյուր անգամ ապարատի լիցքավորման համար պահանջվում էր 7—10 րոպե, որից հետո կոլտնտեսականն ստիպված էր լինում մի քանի րոպե հանգստանալ։ Մինչդեռ այգիներում մոլեգնում էր «միլդիուն»։ Կոլտնտեսության երիտասարդ մեխանիզատորը փորձեց ավտոմաքսները լիցքավորել «Զիս» ավտոմեքենայի կոմպրեսորի օգնությամբ։ Այդ նրան հաջողվեց։ Արդյունքը հիանալի էր։ Ավտոմաքսի լիցքավորման համար արդեն պահանջվում էր ընդամենը 3—5 վայրկյան և այդ անում էր մեքենան։ Կոլտնտեսականը քիչ էր հոգնում, այդ էլ իր դրական ազդեցությունն էր ունենում բուժման որակի վրա։ Ժ. Հարությունյանի նորամուծությանը ծանոթացնելու նպատակով Մրգավանի այգիներ հրավիրվեցին արտադրական վարչության բոլոր կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարները, ինժեներներն ու տրակտորային բրիգադների բրիգադավարները։

Հաջորդ օրը համապատասխան սարքավորումներ ստեղծվեցին մյուս տնտեսություններում։ Կոլտնտեսականներն ու սովխոզների բանվորները գոհունակությամբ ընդունեցին այդ նորամուծությունը։ Բայց Ժ. Հարությունյանի առաջարկության կենսագործումը կապված էր որոշ դժվարությունների հետ։ Մի շարք կոլտնտեսություններում «ԶԻՍ—150» մեքենաներ չկային։ Բացի այդ մեկ մեքենան չէր հասցնում սպասարկել բոլոր բրիգադներին, առանձին դեպքերում անհնար էր լինում մեքենան տրամադրել միայն բուժման նպատակով։ Հայգյուղտնտտեխնիկայի Արտաշատի և Վեդու բաժանմունքներում շտապ պատրաստվեցին տասնյակ շարժական կոմպրեսորներ, այդ նպատակին հարմարեցնելով խուզի ագրեգատների շարժիչները։

Նովրզլուի և Բերքանուշի կոլտնտեսություններում ավտոմաքսերի լիցքավորման համար սկսեցին օգտագործել խտացված օդով լի բալոններ։ Մեկ բալոնը, որի արժեքը մի քանի կոպեկ է միայն, լիցքավորում է ավելի քան 100 ավտոմաքս։ Այդ մեթոդը եղավ ամենաարդյունավետը և տարածվեց։ Ունենալով մի տասնյակ բալոն, կոլտնտեսությունը կամ սովխոզը կարող էր կազմակերպել սրսկիչ ապարատների լիցքավորումը բոլոր բրիգադներում։

Երկու ամիս տևեց պայքարը։ Նրա ծավալի և բնույթի մասին են խոսում



հետևյալ փաստերը. եթե սովորաբար խաղողի այգիները 2—3 անգամ էին բուժում «միլդիուի» դեմ, ապա այս տարի համարյա ամենուրեք տրվել է 9—10 բուժում։ Եթե նախորդ տարիներում այդ նպատակով ծախսվում էր 120—150 տոննա պղնձարջասպ, այս տարի օգտագործվել է ավելի քան 900 տոննա։

Բայց «միլդիուն» խաղողագործի միակ «հակառակորդը» չէր։ Ամռան ամիսներին մինչև բերքահավաքը պայքար էր տարվում նաև «օիդիում» հիվանդության դեմ, որը պակաս վտանգավոր չէ։ Փակչելով արդեն ձևավորված ու հասունացած ողկույզի վրա, «օիդիումը» աչքիդ առաջ քեզնից խլում է այն բերքը, որ քրտինքով ես պահպանել ու աճեցրել։

Իհարկե, խաղողի բերքի ավելացման համար ծավալված պայքարում գտնվեցին նաև թույլ օղակներ։ Առանձին կոլտնտեսություններում ու սովխոզներում ուշացումով սկսվեց բուժումը, քիչ ուշադրություն հատկացվեց որակին։

Լավ այգիներ ունի Լուսակերտի կոլտնտեսությունը և խաղողագործության հիանալի տրադիցիաներ։ Մի քանի տարի առաջ լուսակերտցիք գտնվում էին առաջավորների շարքում, խաղողի բերքատվությամբ չէին զիջում շատ շատերին։

Այս տարի այլ է վիճակը։ Դեռևս գարնան գյուղատնտեսական աշխատանքների ժամանակ կոլտնտեսության գործերը լավ չէին։ Թուլացել էր աշխատանքային կարգապահությունը, առանձին կոլտնտեսականներ անհարգելի պատճառով խուսափում էին աշխատանքից։ Կոլտնտեսության ղեկավարությունը, նրա նախագահ ընկ. Ո. Գրիգորյանը պատշաճ վերաբերմունք չցուցաբերեցին վտանգավոր երևույթների նկատմամբ, չկարողացան ճիշտ գնահատել ստեղծված վիճակը։ Ցանքատարածությունների մասնակի կարկտահարությունից հետո շատերը թևաթափ եղան, ընկրկեցին դժվարությունների առաջ և հենց այդ օրերին մասսայաբար բռնկվեց «միլդիուն»։ Հարկավոր էր մոբիլիզացնել բոլոր ուժերը, անհապաղ ոտքի հանել ամենքին։ Միայն վճռական պայքարի կազմակերպման ու ծավալման միջոցով հնարավոր կլիներ փրկել բերքը, իսկ բերք կար, եղածը այնքան էլ վատ չէր։ Կոլտնտեսության վարչությունը, պարտիական կազմակերպությունն այդ ամենավճռական պահին խուճապի մատնվեցին, չկարողացան կազմակերպել աշխատավորներին, լուծել աշխատանքային կարգապահության ամրապնդման հարցերը, բարձրացնել բրիգադավարների, օղակավարների, բոլոր կոլտնտեսականների պատասխանատվությունը բերքի պաշտպանության գործում։ «Միլդիուն» մի քանի օրում մեծ ավերածություններ գործեց։ Հետևանքն այն եղավ, որ խաղողի այգիների մեծ մասում բերքն ամբողջությամբ փչացավ՝ 95 հեկտար բերքատու այգիներից հավաքվեց և պետությանը հանձնվեց միայն 47 տոննա խաղող, կամ յուրաքանչյուր հեկտարից՝ 5 ցենտներ։

Հիվանդությունների դեմ անբավարար պայքար կազմակերպելու հետևանքով խաղողի ցածր բերք ստացան Մխչյանի, Շահումյանի, Մրգանուշի, Ն. Դվինի, Այգեստանի և մի շարք այլ կոլտնտեսություններ։ Մասնավորապես աններելի է Ն. Դվինի կոլտնտեսության կրած վնասը, քանի որ այն հայտնի էր իր խաղողագործության բարձր կուլտուրայով, աշխատանքի կազմակերպման և կարգապահության լավագույն տրադիցիաներով։

Մեր շատ կոլտնտեսությունների փորձը ցույց տվեց, որ նույնիսկ խաղողագործության համար այսպիսի անբարենպաստ տարում հնարավոր է բարձր

բերք ստանալ, եթե հիվանդությունների դեմ տարվող պայքարը համառ է, հետևողական ու ծավալուն։

Այդ տեսակետից հատկանշական է Քաղցրաշենի կոլտնտեսության օրինակը։ Այս տարի խաղողի այգիների յուրաքանչյուր հեկտարից այն ստացավ 130 ցենտներ բերք և պետությանը վաճառեց 1600 տոննա խաղող։ Գտնվելով միևնույն բնակլիմայական գոտում, ունենալով խաղողի միևնույն սորտերը, աշխատանքը և այգիների բուժումը լավ կազմակերպելու շնորհիվ քաղցրաշենցիք կարողացան պահպանել բերքը, հասնել հիանալի հաջողության։ Կոլտնտեսության նախագահ Կարլեն Խուդավերդյանը, մասնագիտությամբ գյուղատնտես, պայքարի ընթացքում դրսևորեց իրեն որպես փայլուն կազմակերպիչ, հանդես բերելով նպատակին հասնելու հաստատակամություն։

Այս տարվա պայմաններում համեմատաբար լավ բերք ստացան Խալիսայի, Այգեզարդի, Ն. Ջրաշենի, Բ. Վեդու, Նոր կյանքի, Փ. Վեդու կոլտնտեսությունները, Կիրովի անվան և Դվին սովխոզները։

Արտադրական վարչությունում մթերվել է ավելի քան 27 000 տոննա խաղող։ Դա, իհարկե, Արտաշատի համար համեստ թիվ է, զգալիորեն պակաս անցած տարվա ցուցանիշներից։ Սակայն, եթե նկատի ունենանք խաղողի ամբողջ բերքին սպառնացող ռեալ վտանգը, պետք է նշել, որ կոլտնտեսականների, սովխոզների բանվորների, մեր մասնագետների ջանքերն ապարդյուն չանցան, որ այնուամենայնիվ բերքի որոշակի մասը պահպանվեց։

Խաղողի բերքի պահպանության համար ծավալված պայքարի կազմակերպիչներն ու ոգևորողները կոլտնտեսությունների և սովխոզների պարտիական կազմակերպություններն էին։ Մեծ Վեդու կոլտնտեսության պարտկազմակերպության բոլոր անդամներն անձամբ մասնակցում էին բուժման աշխատանքներին։ Այդպիսի վիճակ գոյություն ուներ նաև Ս. Կիրովի անվան սովխոզում, Այգեզարդի, Փ. Վեդու, Նոր կյանքի և շատ այլ կոլտնտեսություններում։

Արտադրական վարչության պարտկոմը ուշի ուշով հետևում էր կոլտնտեսություններում և սովխոզներում այգեբուժման աշխատանքների վիճակին, ժամանակին բացահայտում այս կամ այն տնտեսությունում նկատվող թերությունները, բացերն ու սխալները, օգնում արագությամբ հաղթահարելու դրանք։ Ստեղծված իրադրության պայմաններում անհրաժեշտ էր բարձրացնել բոլոր աշխատողների, առաջին հերթին տնտեսության ղեկավարների ու պարտիական կազմակերպությունների քարտուղարների պատասխանատվությունը։

Բնությունը քիչ դժվարություններ չէր ստեղծել նաև բամբակագործների համար։ Գարնանը անընդմեջ տեղացող անձրևների հետևանքով կոլտնտեսությունների զգալի մասում ձգձգվեց ցանքսը։ Որոշ կոլտնտեսություններում բամբակը ցանեցին հունիսի առաջին կեսին։ Մոտ 450 հեկտար բամբակի ցանք ակտավորվեց, և այդ տարածությունը կարկտահարության ու հեղեղումների պատճառով վարեցին։ Բացի այդ ամռան ամիսներին ջերմաստիճանի ցածրացման հետևանքով դանդաղեց բամբակենու վեգետացիան։ Ստեղծվեց դժվարին կացություն։ Մոտ 4000 հեկտար տարածության բամբակենու պլանտացիաներից կարող էինք ոչինչ չստանալ։ Արտադրական վարչությունը և պարտկոմը մի շարք միջոցառումներ ձեռնարկեցին ագրոտեխնիկայի կիրառման միջոցով բամբակենու վեգետացիան արագացնելու ուղղությամբ։ Ամենից առաջ անհրաժեշտ էր ժամանակին և բարձր որակով կատարել մշակության աշխատանքները, ստեղծված պայմաններին համապատասխան սնուցել ու ջրել բամ-



բակենին։ Մշակության աշխատանքների հաջող կազմակերպմանը մեծ չափով նպաստեց այն, որ կոլտնտեսությունների զգալի մասում բամբակի ցանքը կատարվել էր քառակուսի բնային եղանակով։ Այդ եղանակով ցանվել է մոտ 2181 հեկտար բամբակենի։ Ամենախոշոր բամբակացան կոլտնտեսություններում՝ Արարատում, Շիրակլուում, Մեծ Վեդիում, Ավշարում և շատ այլ տնտեսություններում բամբակենու գրեթե բոլոր պլանտացիաները ցանված էին քառակուսի-բնային եղանակով. այդ հնարավորություն էր ընձեռում ամենուրեք կիրառել երկկողմանի մշակություն, որը մեծ չափով բարձրացնում է աշխատանքի արտադրողականությունը, կրճատում աշխատանքային ծախսումները և, որ ամենակարևորն է ընՅացիկ տարվա համար, հնարավոր էր դառնում արագ, առանց ուշացումների կատարել մշակությունը, արագացնել բույսի վեգետացիան։

Այս ասպարեզում ևս չկարողացանք խուսափել լուրջ թերություններից։ Կոլտնտեսությունների մի մասում (Բաղրամյան, Ազատավան, Բուրաստան և այլն) բամբակենու առանձին պլանտացիաներում չկանոնավորվեցին պարարտացման և ջրելու աշխատանքները, որակով չկազմակերպվեց ծերատումը։

Չնայած ձեռնարկված միջոցառումներին, այնուամենայնիվ բամբակի բերքահավաքն սկսվեց սովորականից ավելի քան մեկ ամիս ուշ։ Հատկանշական է, որ արտադրական վարչությունում բամբակի բերքահավաքն սկսվեց հոկտեմբերի 20-ին, մինչդեռ նախորդ տարվա այդ օրն արդեն կատարվել էր բամբակի մթերման պլանի 50 տոկոսը։

Դաշտում աճել էր հիանալի բերք։ Բոլոր կոլտնտեսություններում խնդիր դրվեց բացված բամբակը հավաքել նույն օրը։ Չնայած անբավարար բացվածությանը, առաջին տասնօրյակում յուրաքանչյուր օր ապահովվում էր պլանի 1,5 տոկոսի աճը։ Հետագայում բերքահավաքի տեմպն զգալիորեն արագացավ։ Արտաշատի բամբակագործների խնդիրն է, չնայած կլիմայական դժվարություններին, բամբակի հումքի վերջին փաթիլն իսկ հավաքել և հանձնել պետությանը։

Մեր արտադրական վարչության կոլտնտեսություններում ու սովխոզներում բանջարաբուծությունն իր որոշակի տեղն ունի։ Գտնվելով մերձքաղաքային գոտում, ունենալով հիանալի հնարավորություններ, Արտաշատի բանջարաբույծները պարտավորվել են տարեցտարի ավելացնել բանջարեղենի արտադրությունը, ապահովել մայրաքաղաքի բնակչությանը թարմ բանջարեղենով։ Առանձին կոլտնտեսություններում, չնայած ցանքի զգալի ուշացմանը, հնարավոր եղավ աճեցնել պոմիդորի, սոխի, բադրջանի, պղպեղի բարձր բերք։ Այդ տեսակետից առանձնապես աչքի ընկան Մասիսի, Փ. Վեդու, Արտաշատի, Շիրակլուի, Ծաղկաշենի կոլտնտեսությունների բանջարաբույծները։

Արտադրական վարչությունում այս գյուղատնտեսական տարում հավաքվեց ու պետությանը հանձնվեց մոտ 19.000 տոննա բոստանա-բանջարանոցային մթերքներ, զգալիորեն ավելի շատ, քան նախորդ, անհամեմատ ավելի բարենպաստ տարում։

Այնուամենայնիվ բոստանա-բանջարանոցային կուլտուրաների գծով մթերումների պլանը վարչությունում, ամբողջությամբ վերցված, թերակատարվեց։ Այդ գանում մեծ մեղք ունեն մեր հիմնական բանջարաբուծական տնտեսությունները՝ Մ. Կալինինի անվան և Արարատի սովխոզները, որոնք խիստ կեր-

պով թերակատարեցին բանջարեղենի, ձմերուկի ու սոխի արտադրության և հանձնման պլանները։

Կալինինի անվան սովխոզը բանջարանոցային մթերքների հանձնման պլանը կատարեց 13,9, ձմերուկինն ու սոխինը՝ 0,8 տոկոսով։ Այդ տնտեսության ղեկավարների (դիրեկտոր ընկ. Ջ. Խաչատրյան) և ագրոպերսոնալի անճարակության հետևանքով ձգձգվեցին և խիստ անորակ կատարվեցին ցանքի ու մշակության աշխատանքները, պայքար չծավալվեց վնասատուների ու հիվանդությունների դեմ, անբավարար աշխատանք տարվեց բերքի պաշտպանության ուղղությամբ։ Դրությունը բարվոք չէ նաև Արարատի սովխոզում։ Միայն այդ երկու տնտեսությունները պետությանը չտվեցին ավելի քան 3280 տոննա բանջարա-բոստանային մթերքներ։

Իհարկե, այդ տնտեսություններում ստեղծված վիճակը չի կարող լրջորեն չանհանգստացնել պարտկոմին և արտադրական վարչությանը։ Անհրաժեշտ կլինի խորապես ուսումնասիրել ստեղծված վիճակի պատճառները, վերանայել ղեկավար կադրերը և օգնել այդ տնտեսություններին՝ հաջորդ գյուղատնտեսական տարում դրությունը շտկելու, պլանները հաջողությամբ կատարելու։

Արտադրական վարչության կոլտնտեսություններն ու սովխոզներն ընթացիկ տարում զգալի չափով ավելացրին հացահատիկի արտադրությունը։ Ժամկետից շուտ կատարվեց հացահատիկի մթերման պլանն ու լրացուցիչ առաջադրանքը։ Պետությանը վաճառվեց 22.000 ցենտներ հացահատիկ։ Հացահատիկի բալանսում հետևողականորեն ավելանում է եգիպտացորենի տեսակարար կշիռը։ Առանձին կոլտնտեսություններ (Մխչյանի, Շիրազլուի, Ծաղկաշենի և այլն) եգիպտացորենի ցանքատարածությունների յուրաքանչյուր հեկտարից ստացան 60—90 ցենտներ հատիկի միջին բերք։

Համարյա բոլոր կոլտնտեսություններում լայնորեն կիրառվում է եգիպտացորենի ամառային ցանքը։ Կոլտնտեսություններում ու սովխոզներում այս տարի 820 հեկտարից երկու անգամ բերք ստացվեց։

Ղեկավարվելով ջրովի հողերում հացահատիկի արտադրությունն ավելացնելու վերաբերյալ Ն. Ս. Խրուշչովի ցուցումներով, արտադրական վարչության կոլտնտեսություններն ու սովխոզները միջոցառումներ են մշակում եկող գյուղատնտեսական տարում հացահատիկի ցանքատարածություններն ընդլայնելու և բերքատվությունը բարձրացնելու ուղղությամբ։ Բարձր որակով կատարվեց աշնանացանը։ Բոլոր տնտեսությունները գարնանացանի համար ապահովված են սերմացուով։ Արտադրական վարչությունում, չնայած ստեղծված լուրջ դժվարություններին, հնարավոր եղավ կատարել պտուղների մթերման առաջադրանքը։ Անհամեմատ ավելի նշանակալից են մեր անասնաբույծների հաջողությունները։

Արտաշատի արտադրական վարչությունը ռեսպուբլիկայի խոշորագույն անասնաբուծական վարչություններից է։ Մեծ է նրա տեսակարար կշիռը մասնավորապես կաթի, մսի, բրդի համախառն արտադրանքում։ Գյուղատնտեսական տարվա առաջին ամիսներից վարչության կոլտնտեսություններում ու սովխոզներում մրցություն ծավալվեց անասնաբուծական մթերքների արտադրությունն զգալիորեն ավելացնելու համար։ Արդեն մայիս-հունիս ամիսներին պարզ դարձավ, որ կաթի արտադրությունն ավելացնելու վերաբերյալ ստանձնած պարտավորությունը հնարավոր է հաջողությամբ կատարել։ Հունիսի կեսերին Մեծ Վեդու կոլտնտեսության անասնաբույծները հանդես եկան հիանալի



նախաձեռնությամբ։ Ուսումնասիրելով և հաշվարկելով իրենց հնարավորությունները, նրանք կոնկրետ պարտավորություններ ստանձնեցին ամռանարոտային շրջանում կաթի արտադրությունն զգալի չափով ավելացնելու մասին։

Մեծ վեդիցիների նախաձեռնությունը լայն արձագանք գտավ վարչության բոլոր կոլտնտեսություններում ու սովխոզներում։ Հեռագնաց արոտներում անասնաբույծների սոցիալիստական մրցությունը գլխավորելու համար ստեղծվեցին պարտկոմի և արտադրական վարչության օպերատիվ երկու խմբեր, որոնք տեղում կոնկրետ աշխատանք էին տանում ստանձնած պարտավորությունների կատարումն ապահովելու ուղղությամբ։

Մրցության ընթացքը պարբերաբար քննարկվում էր անասնաբույծների համատեղ խորհրդակցություններում։ Արոտների ռացիոնալ օգտագործման, անասունների խնամքի բարելավման շնորհիվ հուլիս-սեպտեմբեր ամիսներին, նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, կաթի արտադրությունն ավելացավ մոտ 10.000 ցենտներով։ Ճիշտ կազմակերպվեց մսացու գլխաքանակի գիրացումը, ավելացան մսի արտադրության հնարավորությունները։

Նոյեմբերի 1-ի դրությամբ կաթի արտադրությունը, նախորդ տարվա համեմատությամբ, ավելացել է 15,2, մթերումները՝ 28,1 տոկոսով։ Ժամկետից շուտ կատարվեցին մսի, ձվի ու բրդի վաճառքի և հանձնման տարեկան պլանները։ Մինչև դեկտեմբերի 15-ը կկատարվի կաթի մթերումների տարեկան պլանը։

Մեր տնտեսություններն լայն հնարավորություններ ունեն անասնաբուծության բոլոր ցուցանիշների գծով նախատեսված առաջադրանքները հաջողությամբ կատարելու համար։

Կոլտնտեսություններում ու սովխոզներում կուտակվել է մոտ 40.000 տոննա խոտ, կամ 6000 տոննայով պլանից ավելի. պատրաստված է ավելի քան 43.000 տոննա եգիպտացորենի ընտիր սիլոս, ամբարված է զգալի քանակությամբ կերի ճակնդեղ. բոլոր անասնաբուծական ֆերմաները կոմպլեկտավորված են իրենց աշխատանքը սիրող մարդկանցով, ապահովված են մասնագետներով, վերանորոգված ու պատրաստ են անասնաշենքերը։ Ստեղծված են բոլոր նախադրյալները առաջիկա գյուղատնտեսական տարում ավելի նշանակալից հաջողությունների հասնելու համար։

Արարատյան դաշտավայրի կոլտնտեսությունների ու սովխոզների համար բնությունը շատ փորձություններ էր նախապատրաստել, շատ խոչընդոտներ էր ստեղծել այս տարի։ Բայց որքան էլ համառ էր բնությունն իր տարերքով, նա չկարողացավ հաղթահարել կոլտնտեսականների ու սովխոզների բանվորների կամքը, հաղթանակեց կազմակերպվածությունը, պայքարի կորովը, հաղթանակեց մարդը։

Կոլտնտեսությունների ու սովխոզների պարտիական կազմակերպությունները կարողացան հաջողությամբ գլխավորել աշխատավորության պայքարը դժվարությունների հաղթահարման, գյուղատնտեսական կուլտուրաների մշակության և մյուս աշխատանքների կազմակերպման, հնարավորությունների մաքսիմալ օգտագործման համար։ Պարտկոմը ստիպված եղավ գյուղատնտեսական տարվա կեսերին Նորաշենի, Գետաշենի, Ենգիջայի, Կանաչուտի, Ոստանի կոլտնտեսությունների ղեկավարներին փոխարինել կազմակերպչական

ձիրք ու կարողություն ունեցող մասնագետներով, ամրապնդելու պարտիական ղեկավարությունը մի քանի ուրիշ տնտեսություններում։ Այժմ անհրաժեշտ միջոցառումներ են իրականացվում ետ մնացող կոլտնտեսությունների ղեկավարությունն ամրապնդելու, նրանց էկոնոմիկայի զարգացման հետ կապված մի շարք հարցեր առաջիկայում լուծելու ուղղությամբ։

Արտաշատի պարտիական կազմակերպությունը Հայաստանի կոմպարտիայի XXIII համագումարը դիմավորում է որոշակի հաջողություններով։ Բայց մեր կազմակերպության յուրաքանչյուր անդամ գիտե, որ այդ հաջողությունները կարող էին անհամեմատ ավելի մեծ լինել, եթե ցուցաբերվեր ավելի մեծ կազմակերպվածություն, տնտեսավարման հմտություն ու հետևողականություն։ Հաշվի առնելով այս տարվա դասերը, կրկին վերլուծելով կատարված աշխատանքը՝ Արտաշատի կոմունիստները կրկնապատկված եռանդով կպայքարեն համագումարի առաջադրանքները պատվով կատարելու համար։

ՍՏ. ՎԱՐԴԱՆՅԱՆ
ՀԿՊ Արտաշատի արտադրական վարչության
պարտկոմի քարտուղար

## ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

Նոր մարդու գիտական աշխարհայացքի ձևավորումը, նրա գաղափարական ճիշտ դաստիարակումը հանդիսանում է պարտիական կազմակերպությունների կարևորագույն խնդիրներից մեկը։ «Նոր մարդու ձևավորումը,— ասել է Ն. Ս. Խրուշչովը,— տեղի է ունենում ոչ միայն պարտիայի, սովետական պետության, արհմիությունների, կոմերիտմիության դաստիարակչական աշխատանքի, այլ հասարակության ամբողջ կացութաձևի՝ արտադրության եղանակի, բաշխման ձևերի, կենցաղային սպասարկման, հասարակական-քաղաքական գործունեության, իրավական նորմերի ու դատական պրակտիկայի ազդեցության ներքո։ Անհրաժեշտ է օգտագործել տնտեսական, սոցիալ-կենցաղային, քաղաքական, իրավաբանական բոլոր լծակները մարդկանց կոմունիստական գիտակցությունը զարգացնելու և բուրժուական հոգեբանության ու բարոյականության մնացորդներն արմատախիլ անելու համար»։

Այսպիսով կոմունիզմ կառուցողի գաղափարական դաստիարակման համար պահանջվում են գործադրել ավելի ներգործուն, ավելի ճկուն ու արդյունավետ ձևեր, մեթոդներ։

Հենց այդպիսին են սկզբնական պարտիական կազմակերպություններին առընթեր գաղափարական հանձնաժողովները, որոնք կյանքի թելադրանքով ստեղծվեցին ՍՄԿՊ XXII համագումարից անմիջապես հետո։ Այդ հանձնաժողովների գործունեությունը ցույց է տալիս, որ գտնված է աշխատավորների շրջանում տարվող քաղաքական-մասսայական աշխատանքի կենսունակ ու օգտակար եղանակներից մեկը։

Ընթացիկ տարվա սկզբներին գաղափարական հանձնաժողով կազմակերպվեց նաև մեր՝ Երևանի ժամացույցի գործարանում, որի նախնական քայլերի ու գործունեության առաջին արդյունքների մասին ցանկանում եմ պատմել ամսագրի էջերում։



Մեր հանձնաժողովի 18 անդամներ բաժանված են ըստ առանձին խմբերի և զբաղվում են գաղափարական աշխատանքի որոշակի բնագավառով։

Այդ խմբերից մեկը, որը ղեկավարում է դիրեկտորի տեղակալ, պարտիական աշխատանքի փորձ ունեցող ընկ. Գ. Աբրահամյանը, զբաղվում է ագիտացիոն և պրոպագանդիստական աշխատանքի կազմակերպման հարցերով։ Գոհունակությամբ պետք է նշել այդ խմբի դրական գործունեությունը։ Հանձնաժողովն իր կազմակերպման սկզբնական շրջանում հանձնարարեց խմբին ուսումնասիրել ագիտացիոն աշխատանքների դրվածքը գործարանում և ներկայացնել կոնկրետ հանձնարարականներ աշխատանքը բարելավելու նպատակով։ Եվ պետք է ասել, որ խումբը բավականին խնամքով ու հանգամանորեն ուսումնասիրեց վերոհիշյալ հարցը և այդ ասպարեզում բացահայտեց լուրջ թերություններ։ Հանձնաժողովում քննարկեցին ուսումնասիրության արդյունքները և մշակվեցին կոնկրետ միջոցառումներ։

Իրական վիճակը պարզելուց հետո, մենք դիմեցինք գործնական քայլերի, նպատակ ունենալով աշխուժացնել ու արդյունավետ դարձնել ագիտատորների գործունեությունը։ Ագիտացիոն-մասսայական աշխատանքում գոյություն ունեցող թերություններից մեկն այն էր, որ ագիտատորների մեծ մասը չուներ քաղաքական աշխատանքի անհրաժեշտ փորձ և օգնության լուրջ կարիք էր զգում։ Անհրաժեշտ եղավ հրավիրել ագիտատորների սեմինար պարապմունք, որտեղ հանդես եկավ խմբի ղեկավար Գ. Աբրահամյանը. նա, ելնելով իր երկարամյա փորձից, արժեքավոր մեթոդական խորհուրդներ տվեց սեմինարի մասնակիցներին։ Ագիտատորների այդ հավաքը գործնական ու սրտաբաց մի զրույց էր փորձված աշխատողի և սկսնակ ու երիտասարդ ագիտատորների միջև։

Այժմ գործարանում հանձնաժողովի նախաձեռնությամբ հաճախ են կազմակերպվում նման հավաքներ ու զրույցներ, որոնք հետապնդում են մի նպատակ՝ օգնել մարդկանց տիրապետելու ագիտացիոն աշխատանքի արվեստին, ընդհանրացնելու ու տարածելու այդ ասպարեզում կուտակված առաջավոր փորձը։

Մի այլ հավաքում քննության առնվեցին ագիտատորների անելիքները արտադրանքի որակի բարելավման գործում։ Վերոհիշյալ թեմայի ընտրությունը բխում էր արտադրության կենսական պահանջներից։ Բանն այն էր, որ տարվա սկզբներին մեր գործարանի կոլեկտիվը պատվերներ էր ստացել մի շարք արտասահմանյան երկրներից, այդ թվում 100 հազար հատ ժամացույցի պատվեր Անգլիայից, որտեղ գտնվում են «Սմիտ» և «Վեստ-քրոքս» ժամացույցի արտադրության խոշոր ֆիրմաները։ Կարճ ասած, մեր գործարանի թողարկած արտադրանքը պետք է մրցեր անգլիական այդ ֆիրմաների և կապիտալիստական մյուս երկրների ժամացույցի գործարանների արտադրանքի հետ, որոնք իրենց արտադրական փորձով ու հմտությամբ հայտնի են աշխարհում։

Գաղափարական հանձնաժողովն օգնեց պարտիական կազմակերպությանը՝ ագիտացիոն-մասսայական աշխատանքը նպատակամղելու արտադրանքի որակի բարելավմանը, բարձրացնելու կոլեկտիվի յուրաքանչյուր աշխատողի պատասխանատվությունը արտասահմանյան պատվերները բարձր որակով կատարելու համար։ Եվ պետք է գոհունակությամբ նշել, որ կոլեկտիվը պատվով կատարեց իր պարտավորությունը՝ արտասահմանյան ավելի քան 26 երկրներ ուղարկվեցին գործարանի թողարկած լավագույն զարթեցուցիչները։

Անգլիական մամուլը բարձր գնահատական տվեց երևանյան ժամացույցին, նրա արտաքին տեսքին ու ճշգրիտ աշխատանքին։

Գաղափարական հանձնաժողովն առանձնացրել է մի խումբ, որ կոմունիստ Մ. Գրիգորյանի ղեկավարությամբ մշտապես հետևում է գործարանի և ցեխային պատի թերթերի գործունեությանը։ Մի ժամանակ գործարանային ժամագործ շաբաթաթերթը կանոնավոր լույս չէր տեսնում, երբեմն նրանում հրապարակվում էին անբովանդակ, ընդհանուր բնույթ կրող նյութեր, ընթացք չէին տրվում զետեղված քննադատական հատ ու կենտ թղթակցություններին։ Եվ, ինչպես պետք էր սպասել, թերթը զրկվել էր ընթերցողից։

Պարտբյուրոյի օգնությամբ խումբը կարգավորեց շաբաթաթերթի աշխատանքը։ Ամենից առաջ վերընտրվեց խմբագրական կոլեգիայի կազմը, այն համալրվեց նոր, ձեռներեց ուժերով։ Այժմ ոչ միայն կանոնավորվել է ժամագործի հրատարակությունը, այլև այն դարձել է բովանդակալից, լավ է ձևավորվում նրա ամեն մի համարը։ Խմբի աջակցությամբ ժամանակին ընթացք են տրվում թերթի քննադատական ելույթներին։

Ներկայումս կանոնավոր կերպով հրապարակվում են նաև ցեխային պատի թերթերը։ Գործարանի բոլոր ցեխերում լույս տեսնող երգիծական թերթերի էջերում խարազանվում են աշխատանքային կարգապահությունը խախտողները, խոտանարարներն ու ծույլերը։

Գործարանային և ցեխային պատի թերթերի խմբագրական կոլեգիաներին օգնելու նպատակով, գաղափարական հանձնաժողովն անց է կացրել սեմինար պարապմունք, որտեղ նրանց պարզաբանվել է, թե ինչպես կազմել ու խմբագրել նյութերը, ձևավորել թերթը, աշխատել թղթակցական ակտիվի հետ և այլն։ Մեր հանձնաժողովի ուշադրությունից չի վրիպել նաև գործարանային ռադիո հանգույցը, որը հանգստի ժամերին կոլեկտիվի համար կազմակերպում է ռադիոհաղորդումներ։ Մեզ չէր կարող գոհացնել ստեղծված վիճակը։ Սովորաբար այդ հաղորդումներն իրենցից ներկայացնում էին միայն երաժշտական համարներ կամ լավագույն դեպքում այն կազմված էր լինում փոքր բժշկական զրույցից, ներգործարանային հայտարարություններից։

Վերահսկողության տակ առանք ռադիոհաղորդումները։ Կազմվեց ռադիոհաղորդումների ամենօրյա բազմաբովանդակ ծրագիր, ըստ որի տրվում են ներգործարանային նորություններ, լավագույն աշխատողների աշխատանքային փորձի նկարագրում, փոքրիկ զրույցներ քաղաքական, տեխնիկական, բժշկական թեմաներով, գրական նյութեր, գիտության ու տեխնիկայի նորություններ և այլն։ Երբեմն ռադիոյի միջոցով սուր քննադատության են ենթարկվում արտադրական կարգապահություն խախտողները, խոտանարարներն ու պլան չկատարողները։ Հաճախ ռադիոյով հանդես են գալիս մեր առաջավոր բանվորները, լավագույն ագիտատորներն ու պրոպագանդիստները։

Հանձնաժողովի մյուս խումբը, որը գլխավորում է Ռ. Բաղալյանը, զբաղվում է դասախոսական աշխատանքի կազմակերպման հարցերով։ Նրա գործադրած ջանքերով բոլոր ցեխերում ու բաժիններում ամեն ամիս՝ նախատեսված պլանի համաձայն, կազմակերպվում են հետաքրքրական զեկուցումներ ու դասախոսություններ քաղաքական, միջազգային կյանքին վերաբերող, գիտատեխնիկական, բարոյական և ուրիշ թեմաներով։ Այս գործում ուշագրավն այն է, որ դասախոսության թեման ընտրելիս խիստ հաշվի ենք առնում ունկնդիրների ցանկություններն ու պահանջները։ Եվ, պետք է ասել, որ այն լավ է



ընդունվում, առաջ բերելով մտքերի աշխույժ փոխանակություն, բազմաթիվ ու բազմատեսակ հարցեր։

Գործարանային գաղափարական հանձնաժողովն զբաղվում է նաև կոմունիստների և անկուսակցականների քաղաքական կրթության կազմակերպման գործով։ Մենք հաճախակի ներկա ենք լինում քաղխմբակների պարապմունքներին, մեթոդական օգնություն ցույց տալիս պրոպագանդիստներին, հետևում հաճախումներին։ Երբեմն կազմակերպում ենք պրոպագանդիստների աշխատանքի փորձի փոխանակում, հավաքներում լսում ու քննարկում լավագույն պրոպագանդիստների ելույթները։

Գաղափարական հանձնաժողովը չի ապավինում միայն իր անդամներին, այլ իր գործունեությանը լայնորեն մասնակից է դարձնում գործարանի շատ կոմունիստների, կոմերիտականների ու անկուսակցական ակտիվիստների և, առաջին հերթին՝ ինժեներա-տեխնիկական աշխատողներին։ Մենք օգնում ենք պարտբյուրոյին ու ցեխային պարտկազմակերպություններին, որպեսզի մեզ մոտ արդյունավետ լինի գաղափարական աշխատանքը, այն ազդի մարդկանց սրտի ու հոգու վրա, նրանց մոտ առաջ բերի լավ աշխատելու ձգտում։

Ուզում եմ բերել մի օրինակ, որն ակնառու կերպով ցույց է տալիս մեր մարդկանց բարձր գաղափարայնությունն ու հումանիզմը։

Հավաքման ցեխի բանվոր Միշա Կարապետյանը մի քանի տարի առաջ իր ցանկությամբ հեռացավ գործարանից։ Քաղաքում կատարած հանցավոր արարքի համար նա դատապարտվեց ազատազրկման։ Պատիժը կրելուց հետո նա եկավ մեզ մոտ, խնդրելով իրեն վերստին ընդունել գործարան։ Կոլեկտիվը, հավաքման ցեխի ադմինիստրացիան ու հասարակական կազմակերպությունները ձեռք մեկնեցին Միշային, նրա դաստիարակությունը վերցրին իրենց ձեռքը։ Ցեխի կոլեկտիվը զբաղվեց իր ընկերոջ դաստիարակման գործով, որն այժմ դարձել է լավագույն աշխատող ու մասնակցում է կոմունիստական աշխատանքի մեծ շարժմանը։ Այն բրիգադան, որտեղ աշխատում է Մ. Կարապետյանը, պայքարում է կոմունիստական աշխատանքի բարձր կոչմանն արժանանալու համար։ Նման դեպքերը եզակի չեն գործարանում։

Հանձնաժողովն իր աշխատանքով նպաստում է ծավալելու կոմունիստական աշխատանքի շարժումը ոչ միայն անհատների մոտ ու առանձին բրիգադներում, այլև ցեխերում, տեղամասերում ու ամբողջ գործարանում։ Մի շարք բրիգադներ, տեղամասեր ու ցեխեր արդեն արժանացել են կոմունիստական աշխատանքի պատվավոր կոչմանը, իսկ գործարանի ողջ կոլեկտիվը պայքարում է և հույս ունի մոտ ժամանակներում արժանանալու կոմունիստական աշխատանքի ձեռնարկության կոչմանը։

Չի կարելի ասել, որ գաղափարական հանձնաժողովի աշխատանքում ամեն ինչ լավ է. մեր գործունեության մեջ կան թերություններ, չլուծված, պարզաբանման կարոտ հարցեր։ Այս տեսակետից դեռևս վատ է գաղափարական հանձնաժողովների փորձի փոխանակումը։ Դժբախտաբար մեր մամուլում դեռևս քիչ է լուսաբանվում այս կամ այն հանձնաժողովի աշխատանքի ուսանելի փորձը։

Մեր աշխատանքի փորձով համոզվել ենք, որ գաղափարական հանձնաժողովները հանդիսանում են պարտիական կազմակերպությունների, նրանց բյուրոների լավագույն օգնականները։ Նրանք գաղափարական աշխատանքի կազմակերպման կոլեկտիվ ուժերի ու միջոցների մոբիլիզացման, նոր մար-

գու դաստիարակման լավագույն ձև են։ Անհրաժեշտ է գաղափարական աշխատանքի այս լավագույն ձևը ավելի զարգացնել ու ներդնել բոլոր կոլեկտիվներում։

Վատ չէր լինի կազմակերպել առաջավոր պարտիական կազմակերպությունների գաղափարական հանձնաժողովների լավագույն փորձի փոխանակում ու տարածում։

Այդ գործում մեզ կարող են մեծ օգնություն ցույց տալ ռեսպուբլիկական թերթերը, ինչպես նաև «Լենինյան ուղիով» ամսագիրը։

Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ
Երևանի ժամացույցի գործարանի գլխավոր ինժեներ, պարտբյուրոյին առընթեր գաղափարական հանձնաժողովի նախագահ

## ՊՏՂԱԲԵՐ ԴԱՐՁՆԵՆՔ ԱՂՈՒՏԱՅԻՆ ՀՈՂԵՐԸ

Մեր ռեսպուբլիկայում, հատկապես Արաքսի ձախ ափին, աղակալած հողերի մեծ տարածություն կա, որը դարեր շարունակ մնացել է անմշակ. մարդն անզոր է եղել օգտվել դրանից, այն ի սպաս դնել հասարակությանը։ Այժմ, երբ արդեն պայմաններ կան (առաջնակարգ գյուղատնտեսական տեխնիկա, քիմիական նյութեր) աղակալած հողերը պտղաբեր դարձնելու, ժամանակն է՝ ինչպես հարկն է զբաղվել տնտեսական կարևոր նշանակություն ունեցող այդ հարցով։

Երևանի հողագիտության և ագրոքիմիայի գիտահետազոտական ինստիտուտը արդեն որոշակի գործ է կատարել աղակալած և ալկալի հողերը մշակելու եղանակը գտնելու ուղղությամբ։ Աղակալած այն հողերը, որոնք պարունակում են հիմնականում չլուծվող աղեր, կարելի է աղազրկել միմիայն քիմիական մեթոդով՝ թթվույտով լվանալով։ Իսկ այն հողերը, լինեն դրանք խիտ թե թույլ աղակալած, որոնք պարունակում են լուծելի աղեր, կարելի է աղազրկել սովորական քաղցրահամ ջրով լվանալով։ Ընդ որում լվացումը պետք է կատարել մեծ նորմայով՝ 35—40 խմ. 1—հեկտար հողին, այն ժամանակ, երբ ստորերկրյա գրունտային ջրերի մակարդակը ցածր է։

Դրա համար անհրաժեշտ է, որ տվյալ վայրի կոլեկտորա-դրենաժային ցանցը գործի նորմալ, անարգել, այնպես, որ հողի լվացումից հետո աղաջուրը անընդհատ հոսի դրենաժների և կոլեկտորների միջով։ Դրա համար անհրաժեշտ է, որ կոլեկտորներն ու դրենաժները մեկը մյուսից 1—1,5 մետրով խոր լինեն, որպեսզի ստեղծվի թեքություն, և աղաջրերը ազատ հոսեն։

Այսպիսի մեթոդ կարող է գործադրել ամեն մի տնտեսություն, որի տերիտորիայում գտնվում են լուծվող աղերով աղակալած հողեր։ Մեր սովխոզում կա ավելի քան 1200 հեկտար աղակալած հողային տարածություն, որը գտնվում է Արազդայանի տափաստանի հյուսիսային մասում։

1961 թվականից սկսած փորձեր են արվում աղակալած հողերը պտղաբեր դարձնելու։ Դրանց տվյալների հիման վրա մենք համոզվեցինք, որ այդ բոլոր աղակալած հողերը պարունակում են հիմնականում լուծելի աղեր, իսկ



ավելի քան 700 հեկտարը թույլ աղակալած հողեր են։ Մեր սովխոզի աղակալած հողերի տերիտորիայում արդեն կառուցված է կոլեկտորա-դրենաժային ցանց։

Դեռ 1961 թվականին տարբեր տեղամասերում կարգի գցեցինք կոլեկտորա-դրենաժային ցանցը և նույնիսկ ոչ լրիվ լվացման պայմաններում հասանք հիանալի արդյունքի՝ առաջին իսկ տարին ցանված տարբեր կուլտուրաներից բերք ստացանք. առաջին տեղամասից ստացանք 220, երկրորդից՝ 150 ցենտներ եգիպտացորենի կանաչ զանգված։ Մեր կարծիքով առաջին տարվա համար այն գոհացուցիչ արդյունք էր։ 1962 թվականի աշնանը երկրորդ լվացումից հետո լվացված հողերի որոշ մասում նորից ցանք կատարեցինք, այս անգամ գարի՝ առվույտի ենթացանքով (աշնանացան). 1963 թվականի հունիսին ամեն մի հեկտարից ստացանք 14,7 ցենտներ գարի, մեկ տոննա ծղոտ, երկու անգամ հնձեցինք առվույտը, հավաքելով յուրաքանչյուր հեկտարից 30—40 ցենտներ խոտ։

Այս տարի մենք ավելի ծավալեցինք պայքարը աղուտ հողերի յուրացման համար, մշակեցինք մոտ հարյուր հեկտար տարածություն։ Այս գործում մեզ մեծ չափով աջակցեց Հայկական ՍՍՌ գյուղատնտեսական մթերքների արտադրության և մթերումների մինիստրությունը։ Առանձին հողամասերում ցանեցինք շաքարի ճակնդեղ, եգիպտացորեն և բոստանա-բանջարանոցային (ձմերուկ, սոխ, բողկ), կուլտուրաներ։ Ճակնդեղի ցանքատարածությունների յուրաքանչյուր հեկտարից ստացանք միջին հաշվով 250 ցենտներ բերք, վատ չէր նաև բոստանա-բանջարանոցային կուլտուրաների բերքը։ Աղուտ հողերի յուրացման վրա ծախսեցինք տասը հազար ռուբլի, ստանալով ավելի քան 17 հազար ռուբլու արդյունք։

Մենք որոշել ենք 1964 թվականին ցանք կատարել 250 հեկտարի վրա, իսկ արդեն փորձարկված 22 հեկտար տարածության վրա տնկել այգիներ։ Անհրաժեշտ է 2—3 տարվա ընթացքում իրացնել աղակալած հողերը՝ ժամանակակից սովետական առաջավոր գյուղատնտեսական գիտության և տեխնիկայի միջոցով։

Մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսական մթերքների և մթերումների մինիստրությունը և Արտաշատի արտադրական վարչությունը չպետք է անտեսեն մեր կատարած աշխատանքը և խորհուրդ տան ու օգնեն աղակալած հողեր ունեցող տնտեսություններին՝ իրացնելու դրանք։

Ինչպես հայտնի է, բոլոր տնտեսություններում բանվորական ուժն ու մեքենայական սարքավորումը ուշ աշնանը, ձմռանը և վաղ գարնանը ազատ են, հենց այդ ժամանակն էլ ամենից հարմար է աղակալած հողերի մելիորատիվ աշխատանքների համար։

Աղակալած հողերի իրացման առավելությունը, համեմատած մյուսների, օրինակ՝ ղռերի և քարային հողերի հետ, կայանում է նրանում, որ բոլոր աղակալած հողերը գտնվում են հարթավայրերում, որոնք ջրվում են ինքնահոս կերպով և լիովին ապահովված են ոռոգման ջրով։ Իսկ այդ մեծ նշանակություն ունի այն բանի համար, որ կարճ ժամանակում հնարավոր կլինի իրացնել և հետագայում օգտագործել հողը, կիրառելով մասսայական մեխանիզացիա, որը հնարավոր չէ ղռերում և ժայռոտ հողերում։ Մեր փորձը ցույց է տալիս, որ հարթավայրային հողերում կարելի է ավելի լայն մասշտաբով մեքենայաց-

նել աշխատանքները, քան քարքարոտ հողերում, իսկ դրա շնորհիվ ստացված բերքի ինքնարժեքն էլ այստեղ ավելի ցածր է լինում։

Մեր Հայգյուղտեխնիկայի սիստեմում կազմակերպվել է մելեորատիվ հատուկ տրեստ, որն, անշուշտ, վճռական գործ կկատարի աղուտային հողերը յուրացնելու գործում։ Մեր կարծիքով, այդ տրեստը չպետք է զբաղվի կոլտնտեսությունների ու սովխոզների հողային տարածություններում եղած փոքր զանգվածների յուրացմամբ։ Այն պետք է հիմնականում զբաղվի աղակալած հողերի խոշոր մասսիվների յուրացմամբ։ Պետք է պլանավորել այնպես, որ այդ իրացված հողերի բազայի վրա կազմակերպվեն բարձր տեխնիկայով հագեցված նոր տնտեսություններ՝ կոլտնտեսություններ, սովխոզներ։ Իսկ կոլտնտեսությունների և սովխոզների տերիտորիաներում եղած աղուտային հողերի փոքր մասսիվների յուրացմամբ թող զբաղվեն կոլտնտեսություններն ու սովխոզները։ Մելեորատիվ տրեստի այսպիսի աշխատանքը կտա ավելի բարձր արդյունք։

Մանրամասն ուսումնասիրելով ամբողջ Արազդայանի տափաստանի աղակալած հողերը և համոզվելով, որ հնարավոր է դրանք լիովին իրացնել, գտնում ենք.

Հայաստանի ջրային տնտեսության մինիստրության օգնությամբ 1,5—2 մետրով խորացնել Արազդայանի աղուտային հողերի գլխավոր կոլեկտորը այնպես, որ ջուրը մնացած կոլեկտորներից և դրենաժներից ազատ հոսի դեպի գլխավոր կոլեկտորը. ամբողջ տափաստանում ստեղծել ընդհանուր կոլեկտորա-դրենաժային ցանց։

Մոտակա տարիներին գլխավոր կոլեկտորի ծայրին կառուցել վայրկյանում 2 խմ. հզորությամբ ջրհան կայան, որը կգործի մեծ մասամբ գարնանը, երբ Արաքսի ջրի մակարդակը բարձրանում է, և սկսում հոսել դեպի գլխավոր կոլեկտորը։ Այդ ջրհան կայանի միջոցով էլ հողի լվացումից ստացված աղաջուրը կթափվի Արաքս գետը։

Անհրաժեշտ է ուսումնասիրել և դիֆերենցել բոլոր աղակալած հողերը, ելնելով աղի աստիճանից և աղերի կազմից և միայն դրանից հետո աղազրկել հողերը վերը նշված որևէ եղանակով։ Գործի այսպիսի դրվածքը կլինի առավել նպատակահարմար և ճիշտ։

Պետք է արագ կարգավորել Արազդայանի տափաստանում և Արարատյան դաշտավայրում կառուցված բոլոր կոլեկտորները, իսկ հետագայում կառուցել ուղղաձիգ ջրհան կայաններ, որոնք հնարավորություն կընձեռեն ամբողջությամբ դուրս շպրտել աղաջրերը։

Մեր սովխոզի ամբողջ կոլեկտիվը ավելի եռանդուն կերպով կաշխատի, որպեսզի մեկ-երկու տարուց հետո «Արմաշ» սովխոզը իրոք դառնա օրինակելի սովխոզ։

Ս. ՎԱՐԴԱՆՅԱՆ
Արմաշի սովխոզի դիրեկտոր, գյուղատնտես

# ՊԱՏԱՍԽԱՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ

## ՄԱՐԴԸ ԵՎ ԱՇԽԱՏԱՆՔԸ

**Կիրովականից բանվոր Ս. Մանուկյանը հարցնում է. սոցիալիստական ռևոլյուցիայի շնորհիվ աշխատանքը ինչպիսի՞ նոր, որակական հատկություններ է ձեռք բերում: Պատասխանում ենք այդ հարցին:**

Աշխատանքը մարդկային հասարակության հիմքն է, նրա բոլոր հարստությունների աղբյուրը։ Ապրելու և զարգանալու համար հասարակությունը պետք է մշտապես նյութական բարիքներ արտադրի։ Նա ոչ մի օր չի կարող դադարել արտադրելուց, այնպես, ինչպես չի կարող դադարել սպառելուց։

Աշխատանքը մարդու ներդաշնակ ու բազմակողմանի զարգացման գլխավոր միջոցն է, նրա բոլոր հոգեկան և ֆիզիկական ունակությունների, մարդկային գիտակցականության ստեղծագործական հզորության առաջացման ու զարգացման նյութական հիմքը։ Մարդու աշխատանքային գործունեությունը տեղի է ունենում որոշակի արտադրական հարաբերությունների ժամանակ, որոնք իրենց հետքն են թողնում աշխատանքի բնույթի վրա։ Դրա համար էլ աշխատանքը միշտ կոնկրետ է, ունի պատմականորեն որոշակի ձև, իր հատուկ բնույթը և կազմակերպությունը։

Տարբեր հասարակական-տնտեսական ֆորմացիաների ժամանակ աշխատանքը հանդես է գալիս տարբեր ձևերով և արտահայտում այս կամ այն դարաշրջանի հասարակական-տնտեսական հարաբերությունների էությունը։ Նախնադարյան-համայնական հասարակարգի ժամանակ գոյություն ուներ ընդհանուր, կոլեկտիվ աշխատանք և արտադրության միջոցների ու աշխատանքի արդյունքների հանրային սեփականություն։ Այս հասարակարգում դեռևս չէր շահագործվում ուրիշի աշխատանքը։ Սակայն մարդը գտնվում էր կիսավայրենի վիճակում, նա գերի էր բնության ուժերին։ Ի տարբերություն նախնադարյան համայնական հասարակարգի, մարդու աշխատանքը բոլոր դասակարգային, անտագոնիստական հասարակական-տնտեսական ֆորմացիաներում ենթարկվել է կատաղի շահագործման։ Աշխատանքի շահագործումն իր գագաթնակետին է հասնում կապիտալիզմի ժամանակ։

Աշխատանքի բաժանումը բուրժուական հասարակության մեջ հրեշավոր ձևեր է ընդունում։ Կապիտալիզմը խեղում, այլանդակում է մարդուն թե՛ հոգեպես և թե ֆիզիկապես։ Մարդը դառնում է մեքենայի կցորդը։ Եթե ստրկատիրության ու ֆեոդալիզմի ժամանակ աշխատանքի կարգապահությունը պաշտպանվում էր մահակի զորությամբ, ապա կապիտալիզմի ժամանակ այն հենվում է վարձու աշխատողներին սոված պահելու կարգապահության վրա։ Աշխատանքը կապիտալիզմի ժամանակ փոխանակ կյանքի առաջին պահանջ-

Առաջին ստախանովականները դարձան Ի. Ի. Գուդովը՝ դազգահաշինության, Ա. Խ. Բուսիգինը՝ ավտոմոբիլաշինության, Ն. Ս. Սմետանինը՝ կոշիկի արդյունաբերության, Ս. Վ. և Մ. Ի. Վինոգրադովները տեքստիլ արդյունաբերության, Պ. Ֆ. Կրիվոնոսը՝ երկաթուղային տրանսպորտի, Պ. Ն. Անգելինան, Մ. Դեմչենկոն, Պ. Ի. Կավարդակը, Ֆ. Ի. Կոլեսովը և ուրիշներ՝ գյուղատնտեսության մեջ։

Նորարարների շարժումն այդ տարիներին՝ աշխատանքի բարձր արտադրողականության համար մղվող պայքարի մի նոր էտապ էր մասսաների սոցիալիստական մրցության մեջ։ Այն հիմնվում էր նոր, առաջնակարգ տեխնիկայի և բարձր գիտելիքներով զինված կադրերի վրա, որոնք տիրապետել էին դրան՝ «թամբել տեխնիկան»։ Այդ ինչ-որ սովորական շարժում չէր, այլ ազդարարում էր, որ Սովետական Միությունն արդեն թևակոխել է սոցիալիզմի կառուցման դարաշրջանը։

Միայն սոցիալիզմի ժամանակ աշխատանքը դարձավ մարդու կյանքի բարգավաճման աղբյուրը։ Գնալով այն սկսեց վերածվել ստեղծագործական և հաճելի մի պրոցեսի։ Այստեղ խոշոր դեր է խաղում մարդկանց այն համոզումը, որ իրենք աշխատում են իրենց համար, իրենց նմաններից կազմված հասարակության համար։

Հայրենական մեծ պատերազմի ավարտից հետո Մոսկվայի «Կալիբր» գործարանի վարպետ Ն. Ռոսսիյսկու նախաձեռնությամբ ծավալվեց շարժում ամբողջ ցեխերի և ձեռնարկությունների կոլեկտիվ ստախանովյան աշխատանքի անցման համար։ Ժողովրդա-տնտեսական խոշոր նշանակություն ունեցավ նորարարներ՝ Պ. Բիկովի, Գ. Բորտկևիչի և ուրիշների՝ մետաղի արագընթաց հատման անցնելը։ Կրասնոխոլմսկի տեքստիլ կոմբինատի ենթավարպետ Ա. Չուտկիխի նախաձեռնությամբ սկսվեց շարժում գերազանց որակի արտադրանքի թողարկման համար։ Լայնորեն տարածվեց Մոսկվայի «Փարիզյան կոմունա» կոշիկի ֆաբրիկայի կոմերիտական բրիգադայի բրիգադավար Լ. Կորաբելնիկովայի առաջարկությունը՝ թեթև արդյունաբերության մեջ հումքի և նյութերի կոմպլեքսային խնայողության համար։ Մեծ թափ ստացավ Ն. Մամայի նախաձեռնությամբ ծավալված շարժումը՝ յուրաքանչյուր բանվոր ամեն օր պետք է գերակատարի պլանային առաջադրանքը՝ տա արտապլանային արտադրանք. ամբողջ երկրով մեկ տարածվեց Ա. Կոլչինի նախաձեռնությունը՝ աշխատանքի արտադրողականության աճի, նոր տեխնիկայի ներդրման ու նյութերի լավ օգտագործման հաշվին իջեցնել ածխի արտադրանքի յուրաքանչյուր տոննայի, յուրաքանչյուր միավորի ինքնարժեքը։ Այդ շարժումներից յուրաքանչյուրի մեջ կա այսօրվա կոմունիստական աշխատանքի բրիգադաների հերոսական աշխատանքի մասնիկը։

Մեծ նախաձեռնությունից մինչև կոմունիստական աշխատանքի բրիգադները սովետական ժողովուրդն անցավ տասնամյակների պայքարի բովով՝ նորարարների մի շարք սերունդների փորձի տարածման ու արմատավորման միջոցով։ Կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչմանն արժանանալու համար ծավալված այսօրվա ազնիվ պայքարում մենք տեսնում ենք աշխատանքային մրցության բարձրագույն ձևը։ Կոմունիստական աշխատանքի կոլեկտիվները պայքարում են հանուն բարձր արտադրողական և բարձրորակ աշխատանքի, արտադրական առաջադրանքների գերակատարման և աշխատանքի ավելի լավ կազմակերպման, նոր տեխնիկայի ներդրման ու կատարելագործման, առաջավոր տեխնոլոգիայի և ռացիոնալիզատորության ու գյուտարարության զարգացման, հումքի և նյութերի խնայողության, արտադրանքի ինքնարժեքի իջեցման։

Կոմունիստական բրիգադայի կոչմանն արժանանալու համար ծավալված սոցիալիստական մրցության շարժումը ծնունդ առավ 1958 թվականին և դարձյալ նույն առաջավոր կոլեկտիվում՝ Մոսկվա-Կազան երկաթուղու Մոսկվա-Սորտիրովոչնայա դեպոյում, այնտեղ, ուր ծնվեց կոմունիստական առաջին շաբաթօրյակը 1919 թվականին։ Արդեն, 1961 թվականի վերջերին կոմունիստական աշխատանքի կոլեկտիվների և հարվածայինների կոչմանն արժանանալու համար ծավալված մրցությանը մասնակցում էին մոտավորապես 20 միլիոն մարդ։ 800 ձեռնարկություն և 192 հազար բրիգադա նվաճեցին կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի պատվավոր կոչում։ 3 միլիոնից ավելի բանվորներ, ինժեներներ և տեխնիկներ արդեն արժանացել են կոմունիստական աշխատանքի հարվածայնի պատվավոր կոչման։

***

Ի տարբերություն 30-ական թվականների հարվածայինների և ստախանովյան շարժումների, մրցության նոր տեսակը միայն մարդկանց աշխատանքային գործունեությունը չի ընդգրկում։ 60-ական թվականների հարվածայինները ձգտում են ո՛չ միայն աշխատել, այլև ապրել կոմունիստաբար։ Նրանք ցանկանում են աշխատել ու սովորել, որի համար անխոնջ կերպով կատարելագործում են իրենց արտադրական որակավորումը, տիրապետում մարքսլենինյան տեսությանը, բարձրացնում իրենց հանրակրթական և կուլտուրական մակարդակը, մշակում նոր մարդու լավագույն հատկությունները, որպեսզի թե՛ հոգեպես և թե ֆիզիկապես, դառնան բազմակողմանի զարգացած քաղաքացիներ, օրինակ հանդիսանան կենցաղի ու վարվեցողության մեջ, սրբությամբ կատարեն իրենց հասարակական պարտքը։

Աշխատանքը սոցիալիստական պետության մեջ դարձել է մարդու դիրքորոշման հիմքը, նրա ճանաչման գլխավոր չափանիշը։ Մեր երկրում հաստատուն կերպով կիրառվում է յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին ըստ աշխատանքի սկզբունքը։ Այդ նշանակում է, որ բարիքների բաշխումը կախված է աշխատանքի քանակից ու որակից, որը ծախսվում է յուրաքանչյուր աշխատավորի կողմից հասարակական արտադրության մեջ։ Նա, ով աշխատում է շատ և լավ, նա էլ ստանում է հասարակական աշխատանքի արդյունքի շատ մասը։ Սպառումը ոչ ըստ աշխատանքի, հասարակությունից ավելի շատ պոկելու ձգտումը հատուկ են պարազիտային տարրերին, անօրինական են և հակահասարակական։

Մեր երկրում կոմունիզմի կառուցման բոլոր խնդիրները լուծվում են աստիճանաբար։ Այդ նկատի ունենալով է հենց ՍՄԿՊ ծրագիրը նշում, որ «Առաջիկա տասնամյակում (1961—1970 թվականներ) Սովետական Միությունը, ստեղծելով կոմունիզմի նյութատեխնիկական բազան, բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի թողարկմամբ կգերազանցի կապիտալիզմի առավել հզոր ու հարուստ երկրին՝ ԱՄՆ-ին. նշանակալի չափով կբարձրանան աշխատավորների նյութական բարեկեցությունն ու կուլտուր-տեխնիկական մակարդակը, բոլորի համար կապահովվի նյութական առատություն. բոլոր

կոլտնտեսությունների ու սովխոզները կդառնան բարձր արտադրողական և բարձր եկամտաբեր տնտեսություններ. հիմնականում կբավարարվի սովետական մարդկանց՝ բարեկարգ բնակարան ունենալու պահանջը, կանհետանա ծանր ֆիզիկական աշխատանքը. ՍՍՌՄ-ը կդառնա ամենակարճ աշխատանքային օրվա երկիր։

Երկրորդ տասնամյակի շնորհիվ *(1971—1980 թվականներ)* կստեղծվի կոմունիզմի նյութատեխնիկական բազան, որն ամբողջ բնակչության համար կապահովի նյութական և կուլտուրական բարիքների առատություն. սովետական հասարակությունն ընդհուպ կմոտենա ըստ պահանջմունքների բաշխման սկզբունքի իրականացմանը. տեղի կունենա աստիճանական անցում դեպի մեկ միասնական համաժողովրդական սեփականություն։ Այսպիսով, ՍՍՌՄ-ում հիմնականում կկառուցվի կոմունիստական հասարակարգ» *(ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 486—487)*։

*Ե՛վ սոցիալիզմի, և՛ կոմունիզմի ժամանակ ընդհանուր պահանջ է աշխատել իրենց ուժերի և ունակությունների լրիվ չափով։ Բայց այդ պահանջի բովանդակությունը կոմունիզմի ժամանակ տարբեր է, որովհետև աշխատողի բոլոր ընդունակությունների զարգացման անհրաժեշտ պայմաններն այստեղ ավելի լրիվ չափով կապահովվեն, քան սոցիալիզմի ժամանակ։ Կոմունիզմի բարձր փուլում կապահովվի մարդկանց մտավոր ու ֆիզիկական կարողությունների բազմակողմանի զարգացումը։ Հասարակությունը կհասնի զարգացման այնպիսի բարձր կուլտուր-տեխնիկական մակարդակի, որի ժամանակ կանհետանան ֆիզիկական և մտավոր աշխատանքի միջև եղած տարբերությունները, նրանք կվերածվեն մարդու գործունեության տարբեր ձևերի միայն, տեղի կունենա նրանց միաձուլում։*

*Գոյություն ունեցող տնտեսական պայմանները կոմունիզմի ժամանակ թույլ կտան կենսագործելու յուրաքանչյուրին՝ ըստ պահանջմունքի բաշխման սկզբունքը, բոլոր մարդիկ կապահովվեն նյութական և կուլտուրական արժեքների արտադրության համար գործունեության ձևի ազատ ընտրությամբ, ըստ իրենց ընդունակությունների բազմակողմանի զարգացման և լավագույն գործադրման։*

*Աշխատանքը կվերածվի առաջին կենսական պահանջմունքի այն ժամանակ, երբ հասարակության բոլոր անդամները կամավոր կերպով կաշխատեն հասարակության համար իրենց ստեղծագործական ուժերի լրիվ չափով։ Կըկերտվի կոմունիզմի հոյակապ շենքը, և կիրականանա մեծ Լենինի հանճարեղ կանխատեսումը այն մասին, որ «Կոմունիստական աշխատանքը... անվճար աշխատանք է հասարակության օգտին, մի աշխատանք, որ կատարվում է ո՛չ թե որոշակի պարհակ կրելու համար, ո՛չ թե որոշ մթերքներ ստանալու իրավունքի համար, ո՛չ թե նախապես սահմանված և օրինականացված նորմաներով, այլ կամավոր աշխատանք, նորմաներից դուրս աշխատանք, մի աշխատանք, որը տրվում է վարձատրությունը նկատի չունենալով, առանց վարձատրության պայմանների, մի աշխատանք, որը կատարվում է ընդհանուրի օգտին աշխատելու սովորությամբ և ընդհանուրի օգտին աշխատանքի անհրաժեշտության նկատմամբ գիտակից (արդեն սովորություն դարձած) վերաբերմունքով, մի աշխատանք, որը պահանջմունք է առողջ օրգանիզմի համար» (Երկեր, հ. 30, էջ 661)։*

*Գնալով ավելի ցայտուն են երևում նորի, կոմունիստականի ծիլերը՝ աշ-*



*խատանքի բնույթի, արտադրության աշխատողների փոխհարաբերությունների մեջ։ Գլխավորն այն է, որ աշխատավորների ավելի ու ավելի լայն խավերի համար է սովորություն դառնում գիտակցաբար, իրենց ուժերի ներածին չափով, ըստ ընդունակությունների աշխատելը։ Արդեն հիմա սովետական բազմաթիվ մարդկանց համար աշխատանքը դարձել է ո՛չ միայն վաստակի միջոց, այլ հասարակական կոչում, բարոյական պարտք։ Հիշենք Վալենտինա Գագանովայի և նրա հազարավոր հետևորդների օրինակը, որոնք բոլորովին էլ շահադիտական նպատակներով չեն առաջնորդվում, երբ հոժարակամ առաջավոր տեղամասից անցնում էին և այսօր էլ անցնում են ետ մնացող տեղամասը։ Նրանք առաջնորդվում են կոմունիզմի կառուցման վեհ գործի նկատմամբ բարձր գիտակցականությամբ և գաղափարական նվիրվածությամբ։*

*Կարելի է չտարակուսել, որ ժամանակի ընթացքում կյանքն առաջ կքաշի սոցիալիստական մրցության, բարեխիղճ ու անձնվեր աշխատանքի նորանոր կատարյալ ձևեր, որոնց նախատիպերն են այսօրվա լուսարձակները, հարուստ հեկտարի նախաձեռնողները, փարոսները և ուրիշներ։ Կոմունիզմի կառուցման համար պահանջվում են մեծագույն ջանքեր, ուժերի գերագույն լարում։ Առանց աշխատանքի չի կարող լինել ծաղկուն հասարակություն, մարդկային կյանքի բարօրություն ու երջանկություն։ Հենց այդ տեսակետից էլ միանգամայն տեղին են հնչում Ն. Ս. Խրուշչովի խոսքերը՝ «Կոմունիզմը և աշխատանքը անբաժանելի են։ «Ով չի աշխատում, նա չի ուտում» մեծ սկզբունքը գործելու է նաև կոմունիզմի օրոք, իրականում դառնալու է սրբազան սկզբունք բոլորի համար։ Մարդը գեղեցիկ ու փառավոր է իր աշխատանքով, իր գործերով, նրանով, ինչ նա ստեղծել է, ինչ կերտել է։ Աշխատանքի մեջ են դրսևորվում մարդկանց ընդունակություններն ու տաղանդները, մարդու հանճարը, աշխատանքի մեջ է մարդկության անմահությունը» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 145)։*

***

*Կոմունիստական պարտիան ու սովետական կառավարությունը աշխատանքի մարդկանց շրջապատել են ամենօրյա ուշադրությամբ ու հոգատարությամբ։ Սովետական իշխանության տարիներին կառավարությունն ստեղծել է լավագույն աշխատանքի խրախուսման բարոյական ու նյութական ձևեր։ Աշխատանքի մարդկանց շքանշաններով և մեդալներով պարգևատրելը նշանակում է նրանց աչքի ընկնող հաջողությունների ճանաչման աշխատանքի մեջ, տնտեսական ու կուլտուրական շինարարության գործում, նշանակում է նրանց աշխատանքային գործունեության, անբասիր աշխատանքի, նախաձեռնության և արիության իսկական գնահատում։ Լավագույն բանվորների, կոլտնտեսականների, մասնագետների, տնտեսավարների, առաջավոր գործարանների ու ֆաբրիկաների, լավագույն սովխոզների ու կոլտնտեսությունների անունները հայտնի են դարձել ամբողջ երկրին։*

*1956 թվականին Սովետական կառավարությունը որոշում ընդունեց Լենինյան մրցանակների վերականգնման մասին։ Լենինյան մրցանակը պարգևատրման բարձրագույն ձևն է, այն շնորհվում է արտադրության, գիտության, տեխնիկայի և կուլտուրայի բնագավառներում առավել աչքի ընկնող աշխատանքների համար։ Կարևոր նշանակություն ունի նաև խրախուսման այնպիսի*

*ձևը, ինչպիսին միութենական և ռեսպուբլիկական արվեստի ու գիտության գործիչների պատվավոր կոչումների շնորհումն է, որը նշանակում է պարգևատրված անձանց պետական ճանաչում և արտահայտում է նրանց աչքի ընկնող ծառայությունները սովետական ժողովրդին։*

*Բարոյական բնույթի խրախուսանքների հետ մեկտեղ պարտիան և կառավարությունը մեծ ուշադրություն են հատկացնում նաև նյութական պարգևներին, որպիսիք տրվում են արտադրության նորարարներին, գյուտարարներին, տեխնիկական կատարելագործության և ռացիոնալիզատորական առաջարկության հեղինակներին։ Դրանք խթանում են աշխատանքի նկատմամբ նոր, կոմունիստական վերաբերմունքի մասսայական արմատավորմանը։*

*Այժմ կոմունիստական աշխատանքի շարժմանը մասնակցում են Սովետական Միության ավելի քան 23 միլիոն աշխատավորներ։ Կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի բարձր կոչման համար պայքարում են 37 հազար ձեռնարկություններ, կառույցներ ու սովխոզներ։ Երկու հազարից ավելի ձեռնարկություն, 38 հազար ցեխ, տեղամաս, ֆերմա, 360 հազար բրիգադա, որոնք միավորում են 4 միլիոն բանվորներ, արժանացել են կոմունիստական բրիգադայի կոլեկտիվի կոչման։ 2 միլիոն 300 հազար բանվորներ, որոնք չեն մտնում արտադրական բրիգադաների մեջ, արժանացել են կոմունիստական աշխատանքի հարվածայնի կոչման։*

*Հայաստանում կոմունիստական աշխատանքի կոլեկտիվների և հարվածայինների մրցությանը մասնակցում են մոտ 131 հազար մարդ։ Կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչման համար պայքարող 5672 բրիգադաներից 1349-ը, 829 ցեխերի, ֆերմաների, բաժինների ու տեղամասերի կոլեկտիվներից 160-ը և 32 հազար բանվոր-ծառայողներից, ինժեներա-տեխնիկական աշխատողներից 7371-ը արժանացել են այդ կոչման։*

*Ամբողջ աշխարհում կոմունիզմի մեծ գաղափարների հաղթանակի, խաղաղության, աշխատանքի, ազատության, հավասարության, բոլոր ժողովուրդների եղբայրության և երջանկության համար անհրաժեշտ է աշխատել նոր ձևով, նոր բովանդակությամբ, կենսագործելով ՍՄԿՊ Ծրագրում նշված կոմունիստական հասարակարգի մարդու բարոյական կոդեքսը։*

Կ. ՂԱԶԱՐՅԱՆ

# ՄԵՐ ՕՐԵՐԻ ՄԱՐԴԻԿ

Հ. ՄԿՐՏՉՅԱՆ

## ՆՈՐ ՄԱՐԴԿԱՆՑ ՄՈՏ

**Մամուլում** տպագրված է Սպիտակի գյուղական արտադրական վարչության Սարահարթ գյուղի կոլտնտեսականների դիմումը, որում ասված է, թե իրենց մոտ արդեն հինգերորդ տարին է, ինչ վերացել են հակահասարակական արարքները, և կոչ են անում ռեսպուբլիկայի աշխատավորությանը՝ պայքարի դուրս գալ՝ երկրում իսպառ վերացնելու հակահասարակական երևույթները:

Ես գնում եմ Սարահարթ հավատի և որոշ անհավատության ներհակ խոհերով: Ո՞վ գիտե, մարդիկ երբեմն հենց սնափառությունից դրդված, հավելագրումներ են անում տնտեսության մեջ: Այդ հայտնի է իբրև աչքակապություն: Գուցե սարահարթցիներն էլ «հավելագրում» են անում կենցաղի ու հոգեբանության ասպարեկում: Ի՞նչ կա որ:

Հայաստանի կոմունիստական պարտիայի Սպիտակի գյուղական արտադրական կոմիտեում ինձ պատմում են, որ հակահասարակական երևույթների վերացման շնորհակալ աշխատանքը գլխավորում է Սարահարթի կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը, որը բավական մեծ է՝ հիսունվեց հոգի, որոնցից քառասունը շարքային աշխատողներ են: Դրանով չի սահմանափակվում գյուղի կոմունիստների թիվը: Դպրոցն ունի իր առանձին պարտիական կազմակերպությունը: Մոտ հարյուր կոմունիստ և ութսունվեց կոմերիտական: Այո, անշուշտ, խոշոր ուժ է գյուղում:

Հետկետե ինձ համար ավելի կարմանալի նորություններ են պարզվում: Սպիտակի շրջանում Սարահարթն ամենաասկավահող գյուղն է: Բնությունը խիստ ժլատ է եղել այդ գյուղի նըկատմամբ, և նրանց տնտեսական միջոցները շատ սահմանափակ են: Թեև գյուղը բաղկացած է չորս հարյուր տնտեսությունից, բայց ունի ընդամենը 550 հեկտար վարելահող, որի մի մասը քարքարոտ հողեր են, 700 հեկտարը խոտհարք ու արոտավայր, որ փռվում են մինչև ամպաղբացի լեռնակատարները.

Մեկանում ընդունված է ասել, որ մարդն իր վերմակի չափով պիտի մեկնի ոտքը: Հակառակ դրան սարահարթցիները մրցության մեջ են մըտել հողային լայն հնարավորություն ունեցող Հարթագյուղի հետ:

Ճանապարհին անցնում է շքեղ այգու միջով, որ ձգվում է ձորով մեկ: Լանջերին նույնպես պտղատու ծառեր են տնկված: Դրանց մեծ մասը խնձորենիներ են ու տանձենիներ: Հնավանդ ուռիները, որոնք Փամբակի ձորի միակ կարդն էին, տեղ-տեղ երևում են միայն գետափին: Ինձ ավելի կարմացնում է բանջարանոցը, որտեղ փարթամորեն աճել են պոմիդորի թփերը: Որքան ինձ հայտնի է, Փամբակի ձորում պոմիդոր չի լինում:

— Զարմանալի է,— ասում եմ ես:

— Ի՞նչը,—հարցնում է իմ ուղեկից Ակարիկը:

— Պոմիդորը:

— Մեկ մոտ մոտ, մեծ, լավ պոմիդորներ են լինում: Միայն պոմիդորը չէ: Ա՛յ, եթե մեր խընձորը տեսնե՛ք:

— Հասնո՞ւմ է:

— Էն էլ ինչպե՞ս... Սարահարթի կոլտնտեսությունը տասնյակ տոննաներով խնձոր է վաճառում մեր քաղաքներին: Ափսոս, այս տարի բերքը պակաս է,— ասում է Ակարիկը, որ իբրև պարտիական կոմիտեի աշխատող, «ի պաշտոնե» լավ ծանոթ է Սարահարթի գործերին, մանավանդ որ մի քանի տարի ուսուցչություն է արել այդ գյուղում:

— Լավ են մշակել,— նայելով շուրջս՝ ասում եմ ես:

— Էս տարվա անձրևները մեկ շատ վնաս տվին: Գետը բարձրացավ, լցվեց ձորը, տեղ-տեղ երկաթուղագիծն էլ ողողվեց: Վոլգայի չափ եան էր դարձել Փամբակը: Հեղեղը քանդեց ամեն պատ ու պատնեշ, քշեց տարավ ամբողջ

նում է անլուծելի: Ո՞վ գիտե, գուցե ուրիշներն էլ կարձագանքեն այդ բանավեճին: Եվ խմբագրությունն իր խոսքը կասի այդ ծանրակշիռ հարցի առթիվ *: Սարահարթցիների դիմումն այդ խնդրին խոշոր նշանակություն է տալիս:

— *Չէ որ մարդ ամենից առաջ դաստիարակվում է ընտանիքում: Նրա բնավորության թե՛ լավ, թե՛ վատ հատկանիշներն սկզբնավորվում են ընտանիքում, հետևաբար, անհրաժեշտ է ընտանիքը դարձնել համերաշխ, միաձույլ, ամուր և օրինակելի* — ասված է դիմումում: Այս բոլորից հետո չի կարելի եզրակացնել, թե Սարահարթում վերացել են ամեն տեսակ կոնֆլիկտներն ու գժտությունները: Այդ կարծիքին չեն նաև իրենք: Իրողությունն այն է, որ ամբողջ գյուղում այժմ չկա մեկը, որ անաշխատ ապրի: Հինգ տարի է, որ ոչ ոք դատի չի տրվել: Եվ սարահարթցիները հիմքեր ունեն հայտարարելու, որ իրենց գյուղում վերացել են հակահասարակական երևույթները: Սակայն կյանքը կենդանի ու բարդ պրոցես է և իր հակասություններն ունի. որքան մարդ, այնքան բնավորություն, միայն թե այստեղ չեն թողնում, որ առանձին կոնֆլիկտներն ու գժտությունները դառնան հակահասարակական երևույթ և, իմ կարծիքով, Սարահարթի ընկերների հաջողության գաղտնիքն այն է, որ նրանք ճանաչում են ամեն մեկին և զբաղվում յուրաքանչյուրի ճակատագրով: Ստեղծվել է այնպիսի հասարակական միջավայր ու հոգեբանություն, որ հակահասարակական երևույթ չի հանդուրժում:

— Ա՛յ, մեր բրիգադավարներից Լիպարիտ Բարիկյանը վատ աշխատող չէ, բայց կոպիտ մարդ է, մի քիչ էլ բոշբողպ է: Մի օր սրա գլուխը մի քիչ տաք է լինում, գնում է, տեսնում, որ սելվորը շատ է բարձել և սայլի առեղը կարող է կոտրվել, հայհոյում է սելվորին, որ հասակավոր, հարգարժան մարդ է: Ծերունու հարսը, Սինամարը, որ ճակնդեղագործ է, միջամտում է: Լիպարիտը սրան էլ է հայհոյում: Իսկ կնոջը հայհոյելը մեզանում շատ ամոթ է: Այդ օղակավարուհու ամուսինն էլ ուսուցիչ է գյուղում: Սա եկավ թե՝

— Կնոջս պիտի ազատեք բրիգադայից, կամ էլ Լիպարիտը պիտի ազատվի, նա ծուռ աչքով է նայում կնոջս:

— Ո՞վ գիտե, գուցե ամուսինը իրավացի էր: Դա լուրջ հարց էր: Լիպարիտը կոմունիստ է, և մենք այդ հարցը քննության առանք պարտբյուրոյում: Պարզվեց, որ Լիպարիտի արարքը կոպտություն է և ուրիշ ոչինչ չկա: Սայլն, իրոք, կարող էր կոտրվել, և Լիպարիտը հիմք ուներ վախենալու, որովհետև մի քանի օր առաջ կոտրվել էր: Բայց մենք Լիպարիտին նկատողություն արինք և ասացինք, որ եթե նա նորից այդպես վարվի, կհեռացվի: Օղակավարուհուց ներողություն խնդրեց: Լիպարիտն զգուշացավ: Անուշ խոսքին ի՞նչ է եղել: Իսկ կոպտությունից կարգապահություն չի ստեղծվի: Պաշտոնով մարդը ավելի համբերատար պետք է լինի:

Իմ զրուցակիցները երկուսն էլ խոսքաշեն մարդիկ են: Նրանց զրույցը հետաքրքրական է և ուսանելի: Նրանք ոչ դիպլոմավոր մանկավարժներ են և ոչ էլ հոգեբաններ: Սակայն մարդկային լավ հոգի ունեն, մեծ փորձ և դա պարզ երևում է նրանց պատմածներից: Վ. Ջանայանն անհանգիստ նայում է ժամացույցին: Հիմա նրանց աշխատանքի ամենաեռուն ժամանակն է, իսկ ես զբաղեցնում եմ:

— Չե՞ք ուզենա մոտիկ դաշտը գնանք և տեսնենք մեր ճակնդեղագործներին: Էսօր մեր ճակընդեղի դաշտը փոշոտում են: Գնանք տեսնենք գործն ինչպես է գնում: Թեպետ մերոնք լավ են աշխատում, բայց դե աչք տալն էլ լավ է: Տնտեսատերը մի քիչ կասկածամիտ կլինի: Ասում են գործի դիր, բայց ետևից գնա,— ասում է Ջանայանը:

— Ինչո՞ւ չէ, գնանք: Ա՛յ, դուք խոսում էիք Բավական Գրիգորյանի մասին, ես այնտեղ կըտեսնե՞մ նրան:

— Այո՛, Բավականը վաղ առավոտյան գնում է դաշտ և վերադառնում է ուշ երեկոյան:

Մենք դուրս ենք գալիս գրասենյակից: Հրապարակում ոչ ոք չկա: Միայն վարորդ Ռազմիկն է սպասում իր մեքենայի մոտ: Գյուղը դատարկ է, միայն մի քանի պառավ կանայք բուրդ են լվանում առվի մեջ, թոռնիկները պորտաբաց ու ոտաբոբիկ խլրտում են նրանց շուրջը՝ ջրի մեջ:

Սարահարթի ճակնդեղի դաշտը գյուղի ներքևումն է և թեք իջնում է դեպի ձորափ: Ճակընդեղը փարթամորեն աճել է, միայն թե կարկուտը ծակոտել է թփերը: Իսկ հեղեղումների հետքերը չեն երևում: Տեղ-տեղ «կարկատաններ» կան, որոնք մի քիչ ցածր են դեռ. կուլտիվացիա են կատարել և ամբողջ դաշտը մաքուր է: Թվում է, թե Սարահարթում մոլախոտ չի աճում: Դաշտում միայն կանանց խմբեր են աշխատում:

— Ա՛յ, դա Բավական Գրիգորյանի օղակն է, —ասում է Վ. Ջանայանը և թեք իջնում դեպի դաշտ: Բարձրահասակ, նրբակազմ մի կին ջոկվում է ընկերուհիներից, որոնք շարունակում են աշխատանքը և ընդառաջում է նախագահին:

— Էս էլ մեր Բավականը,— ասում է Վ. Ջանայանը, և մենք ծանոթանում ենք:

Ջանայանն ուշադիր ստուգում է ճակնդեղի

---

* *Հաշվի առնելով հարցի կարևորությունը, խմբագրությունը կանդրադառնա առանձին հոդվածով:*



թփերը: Բավականը ժպտում է քթի տակ: Սակայն թափանցող, խելացի աչքերում կարծես ինչ-որ վիշտ է թաքնված, և ժպիտը չի ծավալվում: Միջին տարիքի կին է, մազերին արծաթե փոշի է իջել արդեն: Ժամանակն իր կնիքն է դրել նրա դեմքին:

— Կարծես թե հասցնում է, հա՛,—ասում է Ջանայանը, հայացքով չափելով դաշտը:

— Մի լրացուցիչ սնուցում էլ է պետք, ընկեր Ջանայան,—նկատում է Բավականը:

— Լա՛վ, կանենք:

Արզումանը գնում է փոշոտումն ստուգելու:

— Ասում են, որ հեղեղումները ձեզ շատ վընաս են տվել, ցանքսը ետ է ընկել, իսկ ձեր պարտավորությունը բավականին մեծ է, կկատարվի՞,— հարցնում եմ ես:

— Այո՛, շատ մասը կրկնացանք ենք արել, բայց դե չարչարվում ենք, որ կատարվի: Լրացուցիչ սնուցումներ ենք տվել և ասես թե ճակընդեղը լսում է մեզ: Ճիշտ է, մեր պլանը հեկտարից 333 ցենտներ է, բայց մենք խոստացել ենք 420 ցենտներ տալ:

— Այդքանի կհասնի՞:

— Հույս ունեմ, որ կհասնի, և բերքատվությունը չենք իջեցնի, հիմա որ արդեն վախենալու բան չկա:

— Ձեզ մոտ դրանից ավելի բերք տվող կա՞:

— Այո՛, Ազնիվ Վարդերեսյանն անցյալ տարի հեկտարից ստացել է 470 ցենտներ:

— Դուք, որ այդքան զբաղված եք, ինչպե՞ս եք ժամանակ գտնում հասարակական աշխատանքների համար, ընկեր Բավական:

— Մարդ որ ուզենա, ամեն ինչի ժամանակ կգտնի:

— Ինչպես երևում է, ընտանիքում օգնողներ շատ ունեք, ի՞նչ գործի է ձեր ամուսինը:

Բավականն ինչ-որ ցնցվում է և խոնարհում գլուխը:

— Բավականն ամուսին չունի, նրա ամուսինը զոհվել է հայրենական պատերազմում,— ասում է Ջանայանը:

Ես, որ ոչինչ չէի հարցրել Բավականի մասին, միամտորեն երևի դիպա դեռ չսպիացած վերքին, անհարմար վիճակումն էի: Տհաճ լռություն ստեղծվեց: Բարեբախտաբար ընկերուհիները կանչեցին Բավականին: Երևի ագրոնոմը ինչ-որ բան էր հարցնում:

Ավելի լավ է, որ Բավականի մասին պատմեն ուրիշները: Չէ՞, որ շատ գործեր, որոնց մասին խոսում էին Ջանայանն ու Արզումանը, լուծվել են Բավականի մասնակցությամբ ու միջամտությամբ: Նա հայտնի հասարակական աշխատող է, պարտբյուրոյի քարտուղարի առաջին տեղակալ, շրջանային կոմիտեի պլենումի անդամ, գյուղսովետի նախագահի տեղակալ և պարտիական պետական վերահսկողության կոմիտեին աջակցող խմբի նախագահ, շատ-շատերի սրտակից բարեկամն ու ընկերը: Նրա ընկերուհին՝ Ազնիվ Վարդերեսյանը, որ հեկտարից ստացել է 470 ցենտներ ճակնդեղ, գլուխը կախ միայն իր գործին է. նրա ու Բավականի օղակները մրցում են միմյանց հետ:

Սակայն իմ խնդիրն այլ է: Բավական Գրիգորյանն ինձ հետաքրքրում է ավելի շուտ իբրև հասարակական աշխատող, իբրև մարդ ու կոմունիստ, որ այդպես սրտի մոտ է ընդունում ամեն մեկի վիշտը: Երբ Բավականն ընդունվում էր պարտիայի շարքերը, և նրան հարցնում են, թե ինչու է մտնում պարտիայի մեջ, նա պատասխանում է.

— Ամեն մի ազնիվ աշխատավոր պիտի կոմունիստ լինի: Եվ ես դիմում տվի այն ժամանակ, երբ համոզվեցի, որ իմ աշխատանքով ու բնավորությամբ արժանի եմ կոմունիստ դառնալու:

Ազնվությունն ու աշխատասիրությունը Բավականի համար կոմունիստի բնավորության հիմնական գծերն են, և նա մարմնավորում է այդ գծերը: Թեև ինքը դժբախտ է եղել կյանքում, բայց աշխատել է ուրիշի երջանկության համար: Դա էլ երջանկություն է:

Ջանայանը ճանապարհին պատմում է նրա մասին: Բավականը տասնութ տարեկան էր, որ սիրեց ու ամուսնացավ իրենց համագյուղացի Հմայակ Սիմոնյանի հետ: Երիտասարդ ամուսինները երջանիկ էին: Բայց նրանց երջանկությունը շատ կարճատև եղավ: Վրա հասավ Հայրենական մեծ պատերազմը, ամուսինը գնաց ռազմաճակատ: Նրա գնալուց հետո նորահարսը ճակընդեղագործ դարձավ: Բավականը շուտ-շուտ նամակներ էր ստանում: Մի օր էլ հերթական նամակի փոխարեն ստացվեց ամուսնու մահվան լուրը: Դեռատի կինը սգաց, սևեր հագավ, բայց և չկտրեց հույսը:

«Քի՞չ դեպքեր են եղել, երբ սև թուղթը ստացվել է, բայց մարդը կենդանի է մնացել թշնամու թիկունքում կամ մի ուրիշ տեղ և մահվան թըղթին հետևել է նրա նամակը»,—մտածում էր Բավականը. քանի գնաց այդ հույսն ինքն իրեն մեծացավ: Երիտասարդ կինն այդպես էլ մնաց ամուսնու տանն ու սպասեց սիրած տղային:

Տարիներ անցան, պատերազմը վերջացավ, զինվորները տուն վերադարձան, շատ կորածներ գտնվեցին, բայց Հմայակից՝ ոչ մի լուր: Բավականն արդեն անվանի ճակնդեղագործուհի էր, երեխա էլ չուներ: Ուզողներ եղան, ընկերուհիները խորհուրդ տվին ամուսնանալ:

— Չեմ կարող, ես դեռ շատ եմ սիրում նրան: Ո՞վ գիտե, գուցե էնպիսի տեղ է ընկել, որ նամակ գրել չի կարողանում,— պատասխանում է

Բավականը և սպասում... Տասը տարի հետո Բավականը վերադարձավ հոր տունը, եղբոր մոտ, երբ վիշտն ու տարիներն արդեն շաղ էին դրել մազերին:

Պատմածի տպավորության տակ լուռ քայլում ենք դեպի գյուղ, ամեն մեկս իր մտքերի հետ:

— Ձեր մյուս առաջավոր աշխատողներին չե՞մ կարող տեսնել:

— Մենք վատ աշխատող չունենք. այդ հաշվով բոլորին պիտի տեսնեք,— կես-կատակ, կես-լուրջ պատասխանեց Ջանպոլյանը:

— Այդ լավ է, իհարկե, բայց լավից լավն էլ կա:

— Այո՛, մենք շատ լավերն էլ ունենք, որոնք, ափսո՛ս, հեռու են, սարում: Ա՛յ, մեր հովիվներից Ավետիք Կասեմյանը չորս հարյուր ոչխարից ստացել է չորս հարյուր գառ, ոչ մեկը չի սատկել, ամեն մի ոչխարից ստանում է երեք ու կես կիլոգրամ բուրդ: Իսկ պլանը երկու կիլոգրամ յոթ հարյուր գրամ է: Թեև երիտասարդ հովիվ է Ավետիքը, բայց շատ լավ է հասկանում իր գործը: Լավ էլ նվագում է: Երվանդ Սիմոնյանը հին, վաստակավոր հովիվ է: Արդեն հիսունհինգ տարեկան մարդ է: Ամբողջ ընտանիքով ֆերմայում են. կինը, հարսը, տղան աշխատում են և ոչ մի օր պարապուրդ չեն տվել. անցյալ տարի 2500 աշխօր ունեին: Անվանի կթվորուհիներ ունենք, ինչպես՝ Այնիվ Պապոյանը, Բուրաստան Հովսեփյանը, Ամալյա Սուքիասյանը, Գեղեցիկ Ամոյանը, ամեն մի կովից նրանք ստանում են 2200 կիլոգրամ կաթ: Ունենք 200 կով, հարյուր հեկտարին տասնչորս գլուխ, իսկ շրջանի միջինը 9 կով է: Մեր նախրապահ Վարթևան Սարգսյանն էլ լավ աշխատող է: Սրանք բոլորն էլ յայլաղումն են՝ Բապումի սարերում: Ես կարող եմ շատերին թվել մեր առաջավոր աշխատողներից, որոնք միշտ էլ հավելյալ վարձատրություն են ստանում իբրև պարգև: Այ, վաղը մեր սարում հնձվորի տոնն է տոնվելու, գնանք սարը, և շատերին կտեսնեք այնտեղ:

Պայմանավորվում ենք Ջանպոլյանի ու Գալըստյանի հետ, առավոտյան գնալ սարը՝ Ճերմակ աղբյուր, որի անունով էլ կոչվում է Սարահարթի լեռնային այդ հանդամասը:

Զրուցելով մտնում ենք գյուղ, որին գուցե և նախանձեն Արարատյան դաշտում: Հին տուն չկա, բոլորն էլ տուֆից կառուցված գեղեցիկ առանձնատներ են պարտեզների մեջ, ուր փարթամորեն աճել են խնձորենին ու տանձենին: Դատարկ գրպանով այդպիսի տներ չեն շինվի: Սարահարթցիներն առաջներում միայն կարտոֆիլ էին ցանում: Այժմ էլ պարտեզներում կարտոֆիլ կա, տեսակ-տեսակ կանաչեղեն: Դժվար էր երևակայել, որ խնձորը կարող է բնակություն հաստատել Բապումի սարերում, արծիվների բըների մոտ: Սակայն խնձորենին մեր ժողովրդի սիրած ծառն է և որտեղ էլ բնակվի հայը, իր հետ տանում է այն:

Ուշագրավ են Սարահարթի տները և իմ խընդրանքով մտնում ենք մի քանի տուն: Լուսավոր, սիրուն շենքեր, երկու կամ երեք սենյականոց բնակարաններով, ներքնատնով, ապակեպատ պատշգամբով... Գոմը, որ առաջներում տանը կից էր լինում, այժմ թաքնված է պարտեզի խորքում, քողարկված ծառերով: Տունն էլ փոքրիկ ցանկապատով բաժանված է պարտեզից: Ի տարբերություն մեր քաղաքային շենքերի, պատշգամբները լայն են և մինչև ուշ աշուն սարահարթցիները նախաճաշում ու ճաշում են իրենց ապակեպատ ճաշարաններում, որ պարտեզի վրա է: Տուն մտնելիս մոռանում ես, որ գյուղում ես: Սենյակները մաքուր են, ներկված, հողի հատակ գոյություն չունի, և հատակն ու առաստաղները շատ ավելի կոկիկ են, որովհետև այստեղ վարպետները մեծ մասամբ տնից են: Կահավորումն էլ չի տարբերվում մեր քաղաքի բնակարաններից: Բոլոր տներում հնչում են ռադիոբարձրախոսները, իսկ թերթեր ամենքն են ստանում: Համոզվում եմ, որ գյուղում բնակարանային հարցը լավ է լուծվում, և ամեն մեկը բնակարանը կառուցում է ըստ իր պահանջի, իր ճաշակին համապատասխան:

— Եթե ուզենան, մի օրվա մեջ մի մեծ շենք կկանգնեցնեն,— ասում է Ջանպոլյանը:

Սարահարթում այդպիսի շենքեր շինվում են: Միջնակարգ դպրոցի շենքն ավարտվում է արդեն, կոլտնտեսությունը կառուցելու է հացի փուռ, բաղնիք, հիվանդանոց: Նախագահի տունը ոչնչով չի տարբերվում մյուս կոլտնտեսականների տներից:

Մյուս օրը առավոտ վաղ գնացինք Ճերմակ աղբյուր: Ճանապարհին անցնում էր Գոզարան գյուղի մոտով: Զարմանալի բան, իրար սահմանակից այդ երկու գյուղերի ցանքադաշտերը բոլորովին նման չեն իրար:

— Գոզարանի կոլտնտեսությունն ինչքա՞ն ճակնդեղ է ստանում հեկտարից:

— 175—180 ցենտներ:

— Չէ՞ որ դուք հարևաններ եք, հողն էլ նույնն է:

— Իսկ մարդիկ նույնը չեն: Էս տարի նոր նախագահ ունեն. նրանց գործերը կարծես թե լավանում են,— պատասխանում է ուղեկիցս:

Ռազմիկը մեքենան տանում է գայլի շավիղներով: Ամեն տեղ ծաղիկ է ու կանաչ: Անձրևները, որ այնքան փորձանք են բերել գյուղի գլխին, լեռնահովիտները զարդարել են ծիածանի գույներով: Թվում է, կախարդական մի գորգ է փըռված Բապումի փեշերից մինչև ամպածրար լեռնակատարները: Մենք լեռներում ենք, ամպերի տակ: Վաղ առավոտյան ամպերը Ճերմակ աղբյուրի ձորից բարձրանում են դեպի լեռնակատարները, իրիկնապահին նորից ցած իջնում աղբյուրի վրա: Արևը ոսկի է մաղում ծաղիկների վրա, որոնց առէջքների մեջ ննջում են մեղուները, հովը բերում է նոր հնձած խոտի բուրմունք: Լսվում է մեղուների դժգոհ բզզոցը, որոնք վըրկվում են իրենց ծաղկե ճոճքերից: Գերանդիները օձերի պես ֆշշում են խոտի մեջ ու հնձած խոտը տխուր սվվոցով պառկում է թաց գետնին:

— Հե՛յ, հե՛յ, պըրծեք, հա՛, օրը ճաշ դառավ,— գոչում է մեկը վերևից:

Ահա վճիտ, Ճերմակ աղբյուրը, որ խոտ ու ծաղկի միջով թավալվում է ներքև: Աղբյուրի մոտ օջախներ են վառվում և ահագին կաթսաներում կերակուրներ են պատրաստվում լեռնային այդ յուրօրինակ տոնախմբության համար: Իրավացի էր Ջանպոլյանը՝ ասելով թե գյուղի իսկական տիտամարդիկ այստեղ են: Գերանդի իսկական տղամարդու գործ է: Եվ հըքաշելն իսկական տղամարդու գործ է: Եվ հընուց ի վեր հնձվորն է մարմնավորում հողի աշխատավորին: Ջուր էր կարմանքս ճակնդեղի դաշտում միայն կանանց տեսնելուս համար: Հեռվից լսվում է սիրահարված հնձվորի սրտառ պարար երգը.

Քանի վուր ջանիմ, յար, քի ղուրբանիմ,
աբա ի՞նչ անիմ...

Զիլ, հաճելի ձայնով երգում է մեկը ձորում:

— Ահա և մեր ակումբի տղաները, նրանք ըմվագելու են այսօր,— ցույց տվեց նախագահը վրաններից մեկի մոտ խմբված տղաներին:

— Հ՛ե, հե՛-հե՛, հե՛յ,—գոչում են հնձվորները թափ առնելով, և գերանդիները սուրում են լեռնալանջերում, երգի ուղեկցությամբ: Մրցման վերջին ժամերն են: Խոտհունձն ավարտվում է: Ողնձաղեմ, ջղուտ մի տղամարդ, առաջ ընկած, գերանդիով լայն լաս է բաց անում:

— Դե՛, տղերք, ոտն արեք, քիչ մնաց, հա,— ճորդորում է նա: Դա կոմունիստ Պավել Գևորգյանն է: Խմբի մյուս թևում հնձում է բարձրահասակ, ամրակազմ, շեկլիկ մի տղամարդ. Դմիտըր Գալստյանն է. դրանք Սարգիս Մարկոսյանի բրիգադայի հայտնի հնձվորներն են. հնձում են օրական կես հեկտարից ոչ պակաս: Մյուսները ետ չեն մնում նրանցից Միայն ետ գալիս ըրանք մեկ-մեկ սրբում են ճակատների քրտինքը, և գերանդիները նորից շարժվում են իրենց հատուկ ռիթմով: Աշխատանքի պոեզիան համակել է նաև մեզ, և կանգնած դիտում ենք: Ամեն մի բրիգադա ունի իր լավագույն հնձվորները. III բրիգադայում Պետրոս Քերոբյանն է, Վաղարշակ Պապոյանը, Իսկանդար Պալոյանը, IV-ում՝ Հաջիբաբ Քոթանջյանի բրիգադայում, Գարեգին Խումարյանը, Վարպդատ Փիլոյանը, Հովհաննես Կիրակոսյանը: Պատանիներ էլ կան շեկ աղվամազով, որ ետ չեն մնում մեծերից: Եվ իրավացի է նախագահը՝ վատ աշխատող չունեն:

— Շաբա՛շ,— գոչում է Պավելը:

Հունձն ավարտվում է նաև մյուս բրիգադաներում: Մարդիկ լվացվում են Ճերմակ աղբյուրի սառնորակ ջրով և իսկույն գործի անցնում: Օջախների մոտ խորովածի շամփուրները դրվում են կրակին: Մյուսները կանաչի վրա սեղան են պատրաստում: Կանայք չկան: Երաժիշտները պարեղանակ են նվագում, մի քանիսը պարում են: Թվում է, թե սրանք քիչ առաջվա հնձվորները չեն: Կաթսաներին հսկում է Պավելը, իսկ մի քանի անհամբերներ հացն ու պանիրը փաթաթած ուտում են այնպիսի ախորժակով, որ ամենակուշտ մարդն էլ կքաղցածանա:

Ճաշկերույթներ շատ եմ տեսել, բայց այս մեկն ուրիշ է: Ճաշկերույթի են նստել աշխատանքում հաղթողները. Սարահարթն այս տարի պիտի հավաքի 520 տոննա խոտ, բայց հավաքում է 800 և շրջանում առաջինն է ավարտում խոտհունձը:

Մասնակցում են նաև Սպիտակի պարտիական կոմիտեի քարտուղար Զիլիմ Հովսեփյանը՝ բարձրահասակ, գեղեցիկ մի տղամարդ, շրջանային սովետի գործկոմի նախագահը, ժուռնալիստներ կան «Սովետական Հայաստան» թերթից... Սեղանի շուրջը մարդիկ շատ են մտերմանում, կրուցում են, կատակում:

Մեկ իբրև հյուրերի հրավիրում են նաև մյուս սեղաններից: Եվ այս պարզ, աշխատանքի մարդիկ ո՛չ միայն հերոսաբար աշխատել գիտեն, այլև հիանալի ուրախանալ...

Մրցող բրիգադաները գինու թասերը ձեռքներին խմում են միմյանց կենացը, սեղանները հետըզհետե մեծանում են: Յուրօրինակ այս սեղանի մի ծայրը մնում է Ճերմակ աղբյուրի մոտ, մյուսը հասնում մինչև ներքին սառնեն:

Հաճելի է, իհարկե, այսպիսի սեղանին նստելը, բայց ուշ է արդեն: Շնորհակալություն ենք հայտնում հյուրասիրության համար և պատրաստվում հեռանալ: Մեկ ճամփու են դնում լիքը թասերով: Երգիչը երգում է.

Ուստի՞ գուքաս, ղարիբ բըլբուլ...

Մենք հեռանում ենք, և դեռ երկար ժամանակ մեկ ուղեկցում է հնձվորների տոնին ոգի ու շունչ տվող սիրո մեծահանճար քերթողի սրտահույզ երգը:

*1963 թ. սեպտեմբեր, Սարահարթ*

| | | |
|---|---|---|
| պուբլիկայի պարտիական կազմակերպությունների խնդիրները | 8 | 3—33 |
| ԹԵԼՈՒՆՑ Ա.— Գիտությունը և արտադրողական ուժերը սոցիալիստական հասարակարգում | 4 | 21—31 |
| ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ.— ՍՄԿՊ ծրագիրը՝ պլանավորումը կատարելագործելու մասին | 1 | 29—37 |
| ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ.— Ժողովրդատնտեսական պլանների կոորդինացումը պլանավորման բարձր էտապ է | 7 | 76—84 |
| ԹՈՒՐՇՅԱՆ Հ.— Մարդանի խնամյալները | 4 | 32—44 |
| ԻԳԻԹԽԱՆՅԱՆ Մ.— Սոցիալիստական գաղափարախոսության հումանիզմը | 1 | 11—18 |
| ԼԱԼԱՅԱՆ Ա.— Սովետական իրավագիտության զարգացման համար | 1 | 38—46 |
| ԼՅՈՒԼԻԿՅԱՆ Ա.— Սպորտը մասսաներին | 9 | 66—73 |
| ԽԱՉԱՏՐՅԱՆ Ռ.— Տիգրան Իսմիյան | 1 | 84—89 |
| ԽՏՐՅԱՆ Հ.— Մարդասիրական հարաբերություններ | 6 | 19—27 |
| ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ս. Կ.— Կաթնային անասնաբուծության կարևորագույն պրոբլեմը | 11 | 27—34 |
| ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ Ա.— Աշխատանքի բաժանման նոր տիպ | 4 | 55—64 |
| ՀԱԿՈԲՅԱՆ Հ.— Հակասությունները արևմտյան բլոկում | 3 | 39—46 |
| ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Գ.— Բարձրացնել պլանավորման գիտական մակարդակը | 3 | 9—16 |
| ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ Ն.— Հակակոմունիզմը գաղութարարների զենքն է | 12 | 25—35 |
| ՂԱԶԱՐՅԱՆ Կ.— Մարդը և աշխատանքը | 12 | 79—86 |
| ՂԱՐԻԲՅԱՆ Գ.— Հասարակական սպառման ֆոնդերի սոցիալ-տնտեսական բովանդակությունը | 11 | 35—42 |
| ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Լ.— Գիտական հիմնարկների կոմունիստների խնդիրները | 4 | 45—54 |
| ՄԱՐԴՈՅԱՆ Ա.— Սովխոզները դարձնել շահութաբեր | 7 | 85—91 |
| ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Հ.— Պարտիական և պետական վերահսկողության լենինյան սկզբունքները | 3 | 17—26 |
| ՄԵԼԻՔՅԱՆ Մ.— Լենինյան հանճարի արգասիքը | 5 | 37—43 |
| ՄԵԼՔՈՆՅԱՆ Լ.— Բարելավել սոցիալական ապահովության վիճակը | 11 | 43—49 |
| ՄԻՆԱՍՅԱՆ Ա.— Դիալեկտիկական մատերիալիզմը և ժամանակակից ատոմիստիկան | 5 | 17—26 |
| ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս.— Արտադրողական աշխատանքը սոցիալիզմի ժամանակ | 10 | 28—37 |
| ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ Վ.— Ժամանակի ճշմարտությունը | 7 | 48—61 |
| ՄՈՒՐԱԴՅԱՆ Բ.— Նախ և առաջ հանրային շահերը | 9 | 18—29 |
| ՆԻԿՈՂՈՍՅԱՆ Մ.— Անդրկովկասի բոլշևիկների պայքարը սովետներում | 3 | 93—98 |
| ՇԱՔԱՐՅԱՆ ՀՐ.— Բարոյական գործոնի դերը կոմունիզմի կառուցման էպոխայում | 11 | 18—26 |
| ՊԵՏՅԱՆ Հ.— Դիֆերենցիալ ռենտան սոցիալիզմի ժամանակ | 3 | 47—53 |
| ՊԵՏՐՈՍՅԱՆ Հ.— Արտաաշխատանքային ժամանակը և դրա օգտագործման ռացիոնալացումը | 9 | 60—65 |
| ՍԱՐԳՍՅԱՆ ԳՐ.— Մեր գրականության ոգեշնչողն ու ղեկավարը | 7 | 38—47 |
| ՍԱՐԳԻՍՈՎ Բ. Ե.— Գիտության զարգացումը և տեխնիկական առաջադիմությունը | 2 | 17—24 |
| ՍԻՄՈՆՅԱՆ ԱՐ.— Ժողովրդի էսթետիկական դաստիարակությունը | 10 | 38—47 |
| ՌԻԴՈՒՄՅԱՆ Կ.— Լենինիզմն ու դոգմատիզմը հակոտնյաներ են | 10 | 9—17 |
| ՔՈՉԱՐՅԱՆ Ս.— Կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու պատմական անխուսափելիությունը | 1 | 19—28 |
| Հայրենիքի խիզախ բազեները | 2 | 77—81 |
| Օգտակար բանավեճ | 12 | 45—52 |


## ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ


| | | |
|---|---|---|
| ԱԲՐԱՀԱՄՅԱՆ Ա.—Հասարակական հիմունքները գաղափարական աշխատանքում | 10 | 67—72 |
| ԱԼԵՔՍԱՆՅԱՆ Ա.— Տիրապետել պրոպագանդելու արվեստին | 6 | 59—64 |
| ԱՆԱՆՅԱՆ Ջ.— Մեր համալսարանը | 2 | 46—50 |
| ԱՎԵՏԻՔՅԱՆ Վ.— Զարգացնել արտադրությունը | 1 | 56—58 |
| ԳԱՍՈՅԱՆ Ա.— Ունկնդիրների ակտիվության պայմանները | 2 | 51—52 |
| ԳՐԻԳՈՐՅԱՆ Լ.— Կինոն և հասարակական գիտությունների դասավանդումը | 3 | 72—75 |





| | | |
|---|---|---|
| ԶԱՔԱՐՅԱՆ Ա.— Ամեն մի ղեկավար պրոպագանդիստ | 3 | 67—71 |
| ԶՈՒՐԱԲՅԱՆ Մ.— Նոր խնդիրներին համապատասխան | 3 | 58—63 |
| ԹՈՐՈՄԱՆՅԱՆ Ն.— Կառուցել ժամանակին, որակով և էժան | 3 | 63—67 |
| ԹՈՒՄԱՆՅԱՆ Խ.— Զարգացնել հեռանկարային ճյուղերը | 3 | 54—58 |
| ԻԿԻԼԻԿՅԱՆ Հ.— Կյանքի կոչել բոլոր ռեզերվները | 8 | 63—69 |
| ԽՈՋՈՅԱՆ Կ. — Լավագույն պրոպագանդիստը | 11 | 70—73 |
| ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ա.— Գաղափարական հանձնաժողովի աշխատանքի փորձից | 12 | 72—76 |
| ՀԱԿՈԲՅԱՆ Ա.— Գործողության մեջ դնել բոլոր ռեզերվները | 1 | 58—63 |
| ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Դ.— Կոմերիտմիության ուժը պարտիական ղեկավարության մեջ է | 2 | 42—46 |
| ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ Դ.— Նախ և առաջ էկոնոմիկան | 11 | 56—63 |
| ՄԱՆՈՒՉԱՐՅԱՆ Ա.— Ուժեղացնել աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակությունը | 10 | 73—77 |
| ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Գ.— Մասսաների լայն մասնակցությամբ | 7 | 92—97 |
| ՄԿՐՏՉՅԱՆ Ա.— Պարտիական կոմիտեն և սկզբնական պարտկազմակերպությունները | 11 | 50—56 |
| ՊԵՏՐՈՍՅԱՆ ՔՐ.— Ետ մնացող տնտեսությունները հասցնել առաջավորներին | 10 | 59—66 |
| ՍԱՐԳՍՅԱՆ ԱՆԴՐ., ԵՂԻԱԶԱՐՅԱՆ Ջ.— Աշխատում են նոր ձևով | 6 | 64—70 |
| ՍԱՐԳՍՅԱՆ Վ.— Հանրակացարանը դաստիարակության օջախ է | 11 | 63—70 |
| ՍԱՖԱՐՅԱՆ Խ.— Չօգտագործված ռեզերվներ | 9 | 90—92 |
| ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա.— Նոր հաջողությունների համար | 1 | 56—64 |
| ՍՈՒԼԹԱՆՈՎ Ջ.— Պարտիական կոմիտեի տեսուչ կազմակերպիչը | 6 | 71—75 |
| ՎԱՐԴԱՆՅԱՆ ՍՏ.— Հաղթահարելով դժվարությունները | 12 | 65—72 |
| ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս.— Պտղաբեր դարձնենք աղուտային հողերը | 12 | 76—78 |
| ՏԵՐՅԱՆՑ Ա.— Կենսագործում ենք քննադատական դիտողությունները | 8 | 70—72 |
| ՓԱՆՈՍՅԱՆ Գ.— Բարձրացնել մշտական հանձնաժողովների դերը | 2 | 52—55 |
| Պարտիական օրգանների հաշվետվություններն ու ընտրությունները | 9 | 87—89 |


## ՌՍԴԲՊ II ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ 60-ԱՄՅԱԿԸ


| | | |
|---|---|---|
| ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ Մ.— Ամենաժողովրդականը | 7 | 19—28 |
| ՋԱՐՈԲՅԱՆ ՅԱ.— Վսեմ նպատակի մեծ ուղիներով | 7 | 9—18 |
| ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ.— ՌՍԴԲՊ II համագումարը և բոլշևիկյան կազմակերպությունների ձևավորումը Անդրկովկասում | 7 | 29—37 |
| ՊՉՈԼԻՆ Վ. Գ.— Մասսաների հետ պարտիայի կապերի ամրապնդումն ու զարգացումը (1953—1962 թթ.) | 6 | 41—58 |
| ՍՏԵՊԱՆՈՎ Վ.— Լենինի ստեղծածը | 6 | 28—40 |


## ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ՀԱՐՁԱԿՈՂԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԸ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՀԱՂԹԱՆԱԿԻ ԳՐԱՎԱԿԱՆՆ Է


| | | |
|---|---|---|
| ԱՍԼԱՆՅԱՆ Հ.— Հակամարքսիզմի ձախորդությունները | 9 | 30—41 |
| ԿԻՐԱԿՈՍՅԱՆ Ջ.— Գաղափարական աշխատանքի հիմքը մասսաների քաղաքական կրթությունն է | 8 | 43—51 |
| ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Վ.— Բարեկամությունը մեծ ուժ է | 8 | 52—56 |
| ՄԵՀՐԱԲՅԱՆ Բ.— Խաղաղ գոյակցությունը և գաղափարական պայքարը | 8 | 34—42 |
| ՈՍԿԱՆՅԱՆ Հ.— Որ մեր մարդիկ լինեն գաղափարական, գեղեցիկ | 8 | 57—62 |
| ՎԱՐԴԱՆՅԱՆ Ռ.— Առաջնորդների հեղինակության հարցը մարքսիզմի հայեցակետով | 9 | 42—51 |
| Գրական ժառանգության հարցի առթիվ | 9 | 52—59 |


## ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ


| | | |
|---|---|---|
| ԱՃԻՃՅԱՆ Ջ.— Կոմունիզմի կառուցման ակտիվ մասնակիցները | 5 | 82—86 |
| ԱԼԱՎԵՐԴՅԱՆ Մ.— Շինարարության մեքենայացումը բարձրացնել նոր խնդիրների մակարդակին | 8 | 73—79 |

ԹԱԲԱՅԱՆ Ս.— Բարելավել բանվորական ժամանակի օգտագործումը . . 3 76—82
ԴԱՐԲԻՆՅԱՆ Գ.— Կարևոր մի պրոբլեմ . . . . . . . . 5 75—81
ԵՂԻԱԶԱՐՅԱՆ Ջ.— Կարգավորել կապիտալ շինարարության պլանավորումը կոլտնտեսություններում . . . . . . . . . 8 79—81
ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Գ.— Արդյունավետ օգտագործել տեխնիկան և սարքավորումները 6 76—82
ԹԵՎՈՍՅԱՆ Ս.— Տեխնիկական առաջադիմության ուղիով . . . . 4 65—71
ԹԵՎՈՍՅԱՆ Ս.— Քիմիական արդյունաբերության զարգացման հեռանկարները . 10 78—84
ԻՍԱԲԵԿՅԱՆ Հ.— Բնակարանային շինարարության նոր ուղիներ . . . 10 85—93
ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Ս.— Կարգավորել և կատարելագործել աշխատանքի նորմավորումը . . . . . . . . . . . . 1 65—73
ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ Ա.— Ճիշտ օգտագործել հողային ֆոնդը . . . . 11 81—84
ՂԱԶԱՐՅԱՆ Ս.— Ուխարարուծության զարգացման օգտավետ մեթոդ . . 3 78—86
ՂՈՒԿԱՍՅԱՆ Ա.— Սոցիալիստական սեփականության երկու ձևերի մերձեցման մասին . . . . . . . . . . . . 2 56—62
ՄԿՐՏՉՅԱՆ Մ.— Մեծ ուշադրություն հասարակական սննդին . . . 11 74—80
ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս.— Մարտունեցիներն առաջ են ընթանում . . . 4 72—79
ՆԵՐԿԱՐԱՐՅԱՆ Վ.— Բարձր պահել աշխատանքային կարգապահությունը . 6 83—89
ՍԻՄՈՆՅԱՆ Խ.— Երրորդ բնագիծը գրավված է . . . . . . 2 62—66

## ՆԱՄԱԿՆԵՐ ԵՎ ԹՂԹԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ

ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Գ.— Սեմինարավարը . . . . . . . 5 91—93
ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ ԱՐՏ.— Մի նամակի հետքերով . . . . . . 6 104—109
Բոլորիս հարազատ գործը . . . . . . . . . 11 94—100

## ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ

ԳԱԼՈՅԱՆ Գ.— «Աշխատանքի ազատագրության» խումբը և Ռուսաստանի ռևոլյուցիոն շարժումները . . . . . . . . . . 9 93—100
ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Ս.— Ժողովուրդների եղբայրության և հումանիզմի երգիչը . 10 48—58
ՆԵՐԿԱՐԱՐՅԱՆ Վ.— Մարտերի բովով . . . . . . . . 8 82—89
ՊԱՊՅԱՆ Թ.— Ռևոլյուցիային զինվորագրվածը . . . . . . 7 62—68

## ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏԻՆ

ՋՅՈՒԼԻԿՅԱՆ Ա.— Մարդկության առաջադիմության փարոսը . . . 4 80—89
ՄԿՐՏՉՅԱՆ Ա. Ա.— Պետական մոնոպոլիստական կապիտալիզմը ԱՄՆ-ում . 11 85—93
ՍՆԵԳՈՎ Ա. Վ.— Էջեր պարտիայի պատմությունից (1917 թ. մարտ-ապրիլի սկիզբը) . . . . . . . . . . . . 5 53—74
ՌԻԴՈՒՄՅԱՆ Կ.— Հանուն բանվոր դասակարգի շահերի միասնության . . 1 74—83

## ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՎԵՏԵՐԱՆՆԵՐԸ

ՍԱՐՈՅԱՆ Է.— Ականավոր մարքսիստ-հրապարակախոսը . . . 2 89—94
ՎԱՐԴԱՆՅԱՆ ԱՂ.— Բոլշևիկյան մամուլի ասպետը . . . . . 5 94—98

## ՄԵՐ ՕՐԵՐԻ ՄԱՐԴԻԿ

ԱՐԵՎՅԱՆ Գ.— Շամլուղցիները . . . . . . . . . 2 82—85
ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ Ա.— Մեր Ազգուշը . . . . . . . . 2 86—88
ՂԱԶԱՐՅԱՆ ՀՐԱՉՅԱ— Անձնվեր պահապանը . . . . . . 3 99—103
ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս.— Առաջավոր բնագծում . . . . . . . 8 90—95
ՄԿՐՏՉՅԱՆ Հ.— Նոր մարդկանց մոտ . . . . . . . 12 87—95



## ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐՈՒՄ

ՍԱՐԳՍՅԱՆ Վ.— Դնեստրի գեղածիծաղ ափերին . . . . . 3 87—92

## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ

ԼԱԼԱՅԱՆՑ Գ.— Ազատության ճանապարհով . . . . . . 6 97—103
ՊԱՊՅԱՆ Ս.— Բոննը խաղաղության թշնամի է . . . . . . 9 101—106
ՎԱՐԴԱՆՅԱՆ Կ.— Իրաքյան Քրդստանը բոցերի մեջ: Ռասիզմը մոլեգնում է 8 96—105
Աշխարհի տարբեր ծայրերից . . . . . . . . 8 101

## ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԵՎ ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ ԼԻԴԵՐՆԵՐԸ

Ֆիդել Կաստրո Ռուս, Ջոն Գոլլան, Յանոշ Կադար . . . . 6 90—96
Վլադիսլավ Գոմուլկա . . . . . . . . . 12 96—98

## ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

ԴԱՐԲԻՆՅԱՆ Հ.— Սխալ մտածելակերպի վերականգնման փորձ . . . 9 107—112
ԴԱԼԼԱՔՅԱՆ Կ.— Հաջող նախաձեռնություն . . . . . . 2 105—108
ԹԵՎՈՍՅԱՆ Ա.— Լուրջ հետազոտություն . . . . . . 12 100—104
ԹԵՎՈՍՅԱՆ Ա., ՀՈՎՍԵՓՅԱՆ Վ.— Լուրջ հարված աբստրակցիոնիզմին . 8 102—105
ԹՈՒԹԽԱԼՅԱՆ Մ.— Ասք մեծ մտքի ու սրտի տեր մարդու մասին . . 7 108—112
ԹՈՒԹԽԱԼՅԱՆ Մ.— Կոմունիզմը ժողովուրդների խաղաղությունն ու երջանկությունն է . . . . . . . . . . . 1 108—112
ԿԻՐԱԿՈՍՅԱՆ Ջ.— Կարևոր ուսումնասիրություն . . . . . 2 99—104
ՂԱԶԱՐՅԱՆ Հ.— Գիրք փառապանծ կոմունիստի մասին . . . . 3 109—112
ՄԱԶՄԱՆՅԱՆ Մ.— Ռևոլյուցիոն երկու պատմվածքի մասին . . . 5 99—105
ՄԱՆԱՍԵՐՅԱՆ Ն.— Խրախուսելի քայլ . . . . . . . 11 105—106
ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Վ.— Գոհացնող աշխատություն . . . . . 11 101—104
ՅԱՎՐՈՒՆՑ ՀՐ., ՄԵԼՔՈՒՄՅԱՆ Ռ.— Արտառոց սխալներով . . . 8 110—
ՊԵՏՐՈՍՅԱՆ Մ.— Երաժշտությունը կինոյում և հեռուստատեսությունում . 2 109—112
ՍԱՀԱԿՅԱՆ Թ.— Աթենքի գրադարան մատենաշարի մասին . . . 10 100—107
ՍԱՐՈՅԱՆ Է.— Մարդկանց ապրելու իրավունքը սրբազան է . . . 8 106—109

## ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՎ ԲԱՆԱՎԵՃ

«Փաստաթղթերը հրատարակել գիտական բարեխղճությամբ» գրախոսականի առթիվ . . . . . . . . . . . . 4 90—96
Հավակնոտ ինքնարդարացում . . . . . . . . . 4 97—108

## ԱՐՏԱՀԱՅՏՎՈՒՄ ԵՆ ՄԱՆԿԱՎԱՐԺՆԵՐԸ

ԱՂԱՄԻՐՅԱՆ Ա.— Փաստեր և խոհեր . . . . . . . 3 106—107
ԳԱՍՊԱՐՅԱՆ ՀՐ.— Իմ նկատառումները . . . . . . . 1 100—103
ԵՍԱՅԱՆ Գ.— Մանկավարժությունը ստեղծագործական աշխատանք է . 1 106—107
ԽՈՒԴՈՅԱՆ Ս.— Պատասխան մեր ընդդիմախոսներին . . . . 7 98—102
ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Ա.— Ուսուցչի ինքնուրույնության համար . . . 1 103—105
ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Ս.— Հուզող հարցեր . . . . . . . 1 105—106
ՀԱՍԱՍՅԱՆ Ռ.— Այո՛, ուսուցչին չպետք է կաշկանդել . . . . 3 107—108
ՀՈՎՍԵՓՅԱՆ Վ.— Մեկ առաջարկություն . . . . . . 3 108
ՄԽԻԹԱՐՅԱՆ Հ.— Չի կարելի համաձայնել . . . . . . 4 109—111
ՍԱՐԳՍՅԱՆ Մ.— Ուսուցիչների խոսքը . . . . . . . 6 110—111
ՍՏԵՓԱՆՅԱՆ Ռ.— Համամիտ չեմ . . . . . . . . 4 111—112
ՉԱՐՈՍՅԱՆ Գ.— Բարձրորակ կադրեր՝ ահա ելքը . . . . . 3 104—105

## ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԿՅԱՆՔԸ


ԱՎԵՏԻՍՅԱՆ Ս.— Տիեզերքի անվերջության մասին . . . . . . 1 90—99
ՂԱԼՈՒՄՅԱՆ Է. Մ., ՄԱԼԽԱՍՅԱՆ Ժ. Ս.— Ռադիոակտիվ իզոտոպների դերը տեխնիկական առաջադիմության գործում . . . . . 5 87—90
ՍՎՈՐԵՆ Ռ.— Տեսողությունը մատների ծայրին: Դեպի մարս . . . 2 95—98
ՖՐԱՆԿ Գ. Մ.— Կենդանի բջջի մոլեկուլները . . . . . . 10 94—99
ՖՐԱՆԿ Գ. Մ.— Կենդանի բջջի մոլեկուլները . . . . . . 11 107—112


## ԸՆԹԵՐՑՈՂԻ ԱՄԲԻՈՆ


ԱՍԱՏՐՅԱՆ Ջ.— Արգասաբեր սիրո պատմությունը . . . . . . 10 108—112
ՀԱՅՐՅԱՆ Ա.— Բժշկի խոհերը . . . . . . . . . 7 103—107
ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Թ.— Լայն տեղ տալ առաջավոր փորձին . . . . 5 106—107
ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆ Ա.— Իմ ցանկությունները . . . . . . 5 107
ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս.— Օգնել պրոպագանդիստին . . . . . . 5 107
ՎԱՐԴԱՆՅԱՆ ԱԴ.— Բարձր պահել ինտերնացիոնալիզմի դրոշը . . 5 106


## ՊԱՏՄՈՒՄ ԵՆ ՄԵՐ ԲԱՐԵԿԱՄՆԵՐԸ


ԲՈՏՎԻՆ Ա.— Համագործակցության կենարար ուժը . . . . 12 53—60
ԿՈԲԼԱՏԱՁԵ Ա.— Քաղաք-եղբայրներ . . . . . . . 12 61—64


## ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ


ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ.— Օրվա հրատապ հարցը . . . . . . . 5 108—112
Առաջին քայլերը . . . . . . . . . . 12 104—106
Մեր նյութերի հետքերով . . . . . . . . . 4 112
11 112
Պարտիական խրոնիկա . . . . . . . . . 6 112
8 111—112
«Լենինյան ուղիով» ամսագրում 1963 թ. զետեղված հոդվածների ու նյութերի ցանկ . . . . . . . . . 12 107—112





ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱԴԱՅԱՆ Ծ. Պ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԿԻՐԱԿՈՍՅԱՆ Ա. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԱՐԳՍՅԱՆ Վ. Հ.

Թողարկիչ՝ Ա. ՅԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ջ. ԱՎԱԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք, հեռ. 2-02-24
Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении тел. 2-02-24

ՎՖ 05275 Պատվեր 3109 Տիրաժ՝ 9020 Գինը 25 կոպ.

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 27/XI 1963 թ.:

Հայկական ՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան:


# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՎԱՆՆԱՆԵՐԻ ԳԻԾ

Քիշինյովի «Վիբրոպրիբոր» գործարանի մի խումբ կոնստրուկտորներ և տեխնոլոգներ մշակել են ծրագրային կառավարման գալվանական գիծ, որը բաղկացած է 66 վաննայից: Այնտեղ կատարվում է 16 օպերացիա՝ նիկելապատում, ցինկապատում, արծաթազօծում, կլայեկում, անոդացում և այլն: Գիծը ավտոմատացված է: Տրվում է ծրագիրը, միացվում ռելեական ղեկը և մեխանիկական հինգ «ձեռք» սկսում են շարժվել՝ վաննաների մեջ ընկղմելով և այնտեղից հանելով գետալներով լի թմբուկները: Ռելեական սարքը շարքից դուրս գալու դեպքում ավտոօպերատորները փոխադրվում են կոճակային կառավարման: Բոլոր պրոցեսները ղեկավարում է մեկ մարդ:

## ՄԻԿՐՈՋԵՐՄԱԿԵՆՏՐՈՆ

Այն տներում, ուր չկա տաք ջրի կենտրոնացված մատակարարում, օգտագործվում է մի գործիք, որին կոնստրուկտորները կոչել են ռուչեյկա: Այն դրվում է խոհանոցում կամ լողասենյակում և միացվում ջրատար խողովակին ու էլեկտրահոսքին: Գործիքն աշխատում է հետևյալ սկզբունքով. սկզբում բացում են ձախ կափույրը և ջուրը լցվում է ջրամբարը (ռեզերվուարը), այնուհետև գործիքը միացնում են էլեկտրական հոսանքին, իսկ կափույրը ժամանակավորապես փակում, մինչև որ ջուրը պահանջվող չափով տաքանա: Ջուրը տաքացնում է ջրամանի հատակում գտնվող խողովակաձև էլեկտրաէլեմենտը: Ավտոմատիկ ռելեն հնարավորություն է տալիս ջուրը տաքացնել մինչև ցելսիուսի 90—95 աստիճան: Երբ ջուրը տաքանում է, ձախ կափույրը նորից բացում են: Սառը ջուրը նորից սկսում է լցվել ջրամանի հատակի մասը, ուր գտնվում է ջեռուցիչ էլեմենտը, իսկ սառը ջրից սեղմվող տաք ջուրը բարձրանում է վեր և լցվում ջրախառնիչ խողովակը: Սառը ջուրը ջրախառնիչ խողովակն է լցվում աջ կափույրի միջոցով:

Ռուչեյկայի արտադրողականությունը ժամում 50 լիտր է, կարողությունը 800—1000 վատ: Բայց, որովհետև տաքացումը կարգավորում է ռելեն, ապա նույնիսկ ամբողջ 24 ժամ աշխատեցնելու դեպքում այդ ձևով ջուր տաքացնելու արժեքը չի գերազանցում կենտրոնացված ջրամատակարարման արժեքը:

## ԳԱԶԱԲԵՏՈՆ

Գերմանական դեմոկրատական ռեսպուբլիկայում առաջին անգամ կառուցվում է գազաբետոն արտադրող մի սարքավորում, որը շահագործման կհանձնվի տարվա վերջին: Գազաբետոնը տարբերվում է իր փոքր տեսակարար կշռով և հեշտ մշակելիությամբ: Այն կարելի է ծակել, սղոցել, վրան մեխ խփել և այլն: Գազաբետոնը լայնորեն կկիրառվի արագացված շինարարության մեջ, հատկապես գյուղատնտեսական օբյեկտներում: Գործարանի կառուցմանը մասնակցում են լեհական մասնագետներ:

## ԾԽԵԼՈՒ ՕԳՏԱԿԱՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Վեճ լինել չի կարող. նիկոտինը սարսափելի թույն է: Բայց ո՞վ է ասում, որ ծխելն անիմաստ է առանց նիկոտինի, որը գոյանում է ծխախոտի արմատներում և ապա անցնում տերևներին: Հենվելով դրա վրա, բուլղարական ծխախոտագործները որոշեցին վնասազերծել այն: Ջերմոցներում տնկեցին դուրմանի սերմ, որի արմատները պատվաստվեցին ծխախոտի ծիլեր: Որոշ ժամանակ անց այդ բույսի վրա պատվաստվեցին ծխախոտի ծիլեր: Քիմիական վերլուծությունը ցույց տվեց, որ հիբրիդի տերևները նիկոտինի փոխարեն պարունակում են 0,1% ատրոպին:

Այդպիսի «ատրոծխախոտ» ծխելը օգնում է ասթմայի, ստամոքսի խոցի, հիպերտոնիկ, սրտային և այլ հիվանդությունների բուժմանը:

ԳԻՆԸ 25 Կ. ИНДЕКС 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## *ՁՈՒԼՈՒՄԸ ԿԱՐԳԱՎՈՐՈՒՄ Է «ՈՒՐԱԼ—2»-Ը*

*Ժամանակակից դոմնային վառարաններում ձուլող վարպետին օգնում են տարբեր մեխանիզմներ, հուսալի չափիչ գործիքներ։ Բայց գլխավոր դերը, այնուամենայնիվ, պատկանում է մարդուն. ձուլվածքի հաջող լինելը որոշում են վերջինիս փորձն ու գիտելիքները։*

*Իսկ մի՞թե ժամանակակից հաշվիչ մեքենաները չեն կարող լուծել այդ խնդիրը։ Նման փորձեր կատարում են մի խումբ գիտահետազոտական ինստիտուտներ՝ Նիժնի-Տագիլի մետալուրգիական կոմբինատի ինժեներների հետ միասին։ Դոմնային հսկայական վառարանի կողքին բարձրացել է երկհարկանի մի շենք, ուր մոնտաժված է «Ուրալ—2» հաշվիչ մեքենան, վառարանի մեջ տեղակայվել են դոմնային պրոցեսի տարբեր պարամետրերի հաղորդակներ։ Այժմ վառարանի այդ զգայուն «նյարդային սիստեմը» միացված է էլեկտրոնային մեքենային։*

*Շուտով «Ուրալ—2» հաշվիչ մեքենաները կսկսեն «սովորել» հնոցապանի դժվար արհեստը։ Դա դոմնային վառարաններն ավտոմատիկ ղեկավարելու առաջին սիստեմն է աշխարհում։*

## *ԱԿՆՈՑԻ ՓՈԽԱՐԵՆ ՎԻՐԱԲՈՒՅԺԻ ԴԱՆԱԿ (ՍԿԱԼՊԵԼ)*

*Լյուբլինի աչքի կլինիկայի պրոֆեսոր Տադեուշ Կրվավիչը մշակել է վիրահատման միջոցով կարճատեսությունը բուժելու մեթոդ։ Սկզբում աչքի եղջրաթաղանթի մակերեսի վրա արվում է թեթև ճեղք, ապա կատարվում եղջրաթաղանթի շերտավորում, որից հետո նրա ներսի շերտը ուղղահայաց ձևով բաժանում են 0,1 մմ հաստության հատվածների, ապա եղջրաթաղանթի վերին շերտը, որը նախապես մետաքսյա թելով ձգված էր, ամուր դնում են իր տեղը։ Մակերեսի վրա առաջանում է հազիվ նշմարելի խորություն։ Դրանից հետո կարճատես աչքը նորմալ է տեսնում։ Պրոֆեսոր Կրվավիչն արդեն կատարել է մի քանի այդպիսի վիրահատում։ Վիրահատության ենթարկված բոլոր մարդիկ իրենց հիանալի են զգում։*

## *ԱՂՄՈՒԿԸ ԵՎ ԾՈՒԽԸ*

*Հունգարացի գյուտարարներ Գրեդուսը և Լիպովեցը գտել են քաղաքները ծխից ազատելու նոր եղանակ։ Նրանք պարզել են, որ վառելիքը զգալիորեն ավելի լավ է այրվում, եթե վառարաններում առաջացվի ուժեղ աղմուկ։ Փորձերի ժամանակ նրանք նավթե մեծ վառարանի մեջ դրել են ձայնային երկու գեներատոր, որոնց դերն ըստ էության կատարում են շոգեքարշի սովորական շչակները։ Ձայնային էներգիան կամ ուղղակի ասած, աղմուկը ապահովել է վառելիքի լրիվ այրումը։ Դուրս եկող գազի մեջ հնարավոր չի եղել հայտաբերել ծխի ոչ մի հետք։*

## *ՋԵՐՄԱՅԻՆ ԿՏՐՄԱՆ ԴԱԶԳԱՀ*

*Մետաղները ջերմային եղանակով կտրելու դազգահը, որ ստեղծվել է Ֆրանսիայում, իր կոնստրուկցիայով հիշեցնում է ժապավենային սղոց, բայց մշակման պրոցեսն ունի հետաքրքիր առանձնահատկություններ, սղոցի շարժման արագությունը մեկ րոպեում 1000-ից հասնում է մինչև 5000 մետրի (րոպեում մինչև 2 միլիոն ատամ), որի շնորհիվ մետաղը կտրման տեղում ինտենսիվ կերպով շիկանում և փափկում է։ Իսկ սղոցը իր երկարության շնորհիվ հասցնում է սառչել և պահպանել դիմացկունությունը։*

*Ջերմային կտրումը կարելի է կիրառել տարբեր պողպատների համար, ընդ որում նյութի կարծրությունը ոչ մի դեր չի խաղում, մասնավորապես կարելի է կտրել սառը ճոպանային և կոփված պողպատ։ Կտրվածքը ստացվում է մաքուր։ Այրված շերտի խորությունը 0,5 մմ-ից չի անցնում։*

*Աշխատանքը հեշտացնելու համար դազգահն ունի տարբեր հարմարանքներ։ Դազգահի վրա կարելի է մշակել 25 մմ հաստության նյութ։ Կտրման առավելագույն հաստությունը 40 մմ է, դազգահի շարժակի կարողությունը մոտ 12 կվտ։*